# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԺՈՂՈՎՈՅ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

ՀԱՆԴԵՐՁ ԿԱՆՈՆԱԳՐՈՒԹԵԱՄԲՔ

Ի ՊԷՏՍ ԺԱՌԱՆԳԱՒՈՐԱՑ.

ԳՐԱԴԱՐԱՆ
ԳՐԻԳՈՐ
Կարգաթիւ 1104

ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱՑ

ԱԲԷԼ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ

Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅ ԿԱԹՈՒՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

ՌՅԻԳ — 1874

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ԳԷՈՐԳԵԱՅ Դ.

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ.

GRAD
EREN
3056
02/28/98

THE UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

ՄԵԾԻ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻ

ԱԹՈՌԱԿԱԼԻ ՍՐԲՈՅՆ ԹԱԴԷՈՍԻ ՆԱԽԱԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

# Տ. Տ. ԳԷՈՐԳԵԱՅ Գ.

ԱՍՏՈՒԱԾԸՆՏԻՐ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ՀԱՅՐԱՊԵՏԻ

ԸՆԾԱՅԱԲԵՐՈՒԹԻՒՆ

ԹԱԲԷԼ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԷ .

## ՎԵՀԱՓԱՌ ՏԷՐ․

Ի շարս դասակարգութեան երջանիկ Հայրապետաց Հայաստանեայց Եկեղեցւոյ Ազգիս, Դուք Աստուածընտիր Վեհապետ, որ ի ներկայս զվերջին ունիք Գահ ի նոցին դահակալութեան ըստ կարգի, բաբէ՛, գործովք Ձեր աւադի՛կ ընդ առաջինսն ի նոցանէ անցելոց՝ ունիք տեղի ի Հայրապետական դասակարգին։

Զի թէ երջանիկն Խորենացւոյ քա՛ղցր էր զնահապետսն Ազգիս ըստ գործոցն թըւել և ո՛չ անուանց յազգային անդր Պատմութեան, ո՛չ ինչ գրել նմա յետևյառաջութիւն ըստ ժամանակաց կարգի, ի գործոցն տալով նոցին իւրաքանչիւր տեղի արժանաւոր ի նահապետական կարգին, օ՜ն անդր քաղցրագո՛յն ապա և ինձ զընդ գործովք փայլեցողացն Հայրապետաց սրբոց համադասել զՁեզ ի կարգի, Աթոռակալաց սուրբ Լուսաւորչին, որոց Երկք ի շինութիւն Ազգի, և Ձեր Երկոց նոցին արդիւնաւորութիւն՝ ի պահպանութիւն Ազգիս․ յորս և երկոքումբք թուիք պանծալի ի մեզ

ի հանրութեան Ազգիս, զքանքարս նոցին ծրարեալս ի վարշամակի ՚ի թերթս թերթս գրութեանց, հարիւրապատիկ շահելով ի լոյս արկանել ի սեղանաւորս, և յաճախելով դպրոցս դպրոցս ամենուրեք ի համազգիս ի դաստիարակութիւն մանկանց Եկեղեցւոյ և ի կրթութիւն ժողովրդոց՝ ի շաւիղս երանաշնորհ Ազգիս Թարգմանչաց։

Ընկալարո՛ւք ի հաճոյս, ողորմա՛ծ Տէր, զաշխատութիւն իմ վաստակեալս այս՝ ի պէտս Եղբարց ժառանգաւորաց Եկեղեցւոյ, որոց փափագանացն պէտս լցուցանելով թերեւըս սորին տպագրութեամբ, արժանի արասջիք և զաշխատաւորս զիս՝ Աստուածաձիրդ շնորհաց և օրհնութեան՝ յիմում այլ ևս ձեռնարկութեանցս աւարտման,

Նուաստ Ձեր որդի հոգևոր

ԱԲԷԼ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ.

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ․

*Ի յառաջաբանութիւն Պատմութեան ծողովոց Հայաստանեայց Եկեղեցւոյս մերոյ եւ եկեղեցական կանոնաց՝ կարգեմք զընդարձակ տեղեկութիւնս յաղագս ժամակարգութեանց եկեղեցական պաշտամանց թէ յորոց եւ յորում ժամանակի եւ որպիսի կարգաւորութիւնք աւանդեցան, որովք արդ լրացեալ անթերի կատարի ժամերգութիւն Աստուածպաշտութեանս մերոյ։*

*Ո՛չ ուրեք ի գիրս մերոցն գտանեմք զեկեղեցական կարգաւորութեանց պատմութիւնս՝ ո՛չ պատմագրաց ազգիս եւ ոչ Հարց Եկեղեցւոյ մերոյ՝ յայտնի նշանակելոյս ի նոցունց եւ յորում ժամանակի աւանդելոյս, եթէ յորոց ի սրբոց Հարց՝ որ կարգ պաշտամանց եւ ժամակարգութեանց կանոնաւորեցան յեկեղեցւոջ Հայաստանեայց, եւ թէ որպիսի կարգաւորութեամբ պաշտէր ժամերգութիւն յառաջնոց դարուց Քրիստոնէութեանս մերոյ յառաքելոց անտի Նախալուսաւորչացն մերոց սրբոցն Թադդէոսի եւ Բարդուղիմէոսի, յորոց ընկալաւ Հայաստանեայցս Եկեղեցի զքրիստոնէական հաւատս մինչեւ ցսուրբն Գրիգոր Լուսաւորիչն մեր, եւ անտի ցսուրբ Թարգմանիչսն կարգաւորիչս եկեղեցական կարգաց եւ պաշտամանց ժամերգութեանց ցհինգերորդ դար Քրիստոնէութեան։*

*Եկեղեցական պաշտամունք այսոցիկ ժամանակաց անյայտ են պատմաբանից եւ եկեղեցական Հարց մերոց․ այն զի եւ չունիմք իսկ ազգային մատենագիրս ժամանակակիցս այսոցիկ նախնի դարուց, այլ միայն՝ յիշատակ շինութեան Տաճարաց ինչ յառաքելոց անտի ի Հայաստան *),*

---

(*) Խորենացին յԵրկրորդ գիրս իւր գլ. Ղ. վկայէ շինել Թադդէոսի Առաքելոյ յԵդեսիա զեկեղեցի, որ այժմ նուիրեցաւ յանուն սուրբ Աստուածածնի. յաղագս Բարդուղիմէոսի նոյնպէս Խորենացին ի Թուղթն իւր առ Սահակ Արծրունի, շինել նորա յաշխարհին Անձաւացեաց ի տեղին Դարբնաց քար, զեկեղեցի յանուն Ս. Աստուածածնի, ուր և եդ զպատկեր նորա ի վերայ կիպարիս փայտի ձեւացուցելոյն յԱւետարանաչէն Յովհաննէ, որպէս և յաղագս ձեռնադրութեան Ադդէի և Զաքարիայ ի Թադդէոսէ։

ծեռնադրութիւն յաջորդաց նոցին յեպիսկոպոսութիւն, եւ կանոնաց ինչ ի Թադդէոսէ՝ որպէս յեկեղեցական կանոնագիրս մեր, զոր ունիմք կարգել յառաջին գլուխ մատենիս, առանց յայտնի նշանակութեանց եկեղեցական կարգաց ժամերգութեանց. որովք յայտ է թէ քրիստոնէական Աստուածպաշտութիւնք Ազգիս կատարէին առ Աստուած։

Բայց այս յայտնի ցուցանի ի գործոց թարգմանչացն, զի սուրբն Մեսրովբ՝ որ քարոզէր ի Գողթն, ընթեռնոյր հաւատացելոց զԱստուածաշունչ գիրս Յոյն եւ Ասորի լեզուաւ. եւ ո՛չ սակաւ աշխատութիւն կրէր ի մեկնել նոցա յաղագս չգոյութեան տակաւին Հայկական գրոց, որով հաւատալ մարթ է, եթէ այս կարգ էր յԱռաքելոց ժամանակաց՝ ցսուրբն Գրիգոր եւ ցսուրբ թարգմանիչսն մեր՝ եկեղեցական պաշտամանց ի Հայաստան։

Եթէ հրապիսի կարգաւորութիւն գոյր եկեղեցական պաշտամանց եւ յաւուրս սրբոյն Գրիգորի, ո՛չ գրեն նոյնպէս ժամանակակից մատենագիրք մեր. բայց ի կառավարութիւն վիճակի իւրոյ երեւի գրեալ նմին Գրիգորի կանոնս վասն զգուշութեան վիճակի իւրոյ. զի ըստ Խորենացւոյն բանի, որ յետ Ագաթանգեղեայ պատմաբանն է ազգիս, գրէ ի գիրս Բ. գլ. Գ. Արիստակեայ ընդ դառնալն ի ժողովոյն Նիկիոյ, յոր գնացեալն էր հրամանաւ Տրդատայ եւ սրբոյն Գրիգորի, եւ ընդ բերել նմա կանոնս քան ի ժողովոյն, «Սուղ ինչ գլուխս յինքենէ ի կանոնս ժողովոյն յաւելու, ասէ նա, վասն առաւել զգուշութեան իւրոյ վիճակի»։

Վրթանէս՝ որդի սրբոյն Գրիգորի՝ երկրորդ Եպիսկոպոսապետ Հայոց զլինի հօրն յամի 339 — 340, կարգաւորեաց յԵկեղեցիս Հայաստանեայց զպաշտամունս սրբոյ Պատարագին եւ զաւազանին խորհրդոյ մկրտութեան ըստ եկեղեցւոյն Երուսաղեմի. զորոյ զկարգս խնդրեաց ի Մակարիոս Եպիսկոպոսէ քաղաքին սրբոյ՝ ումն գլխովք կանոնաց՝ կոչեցեալ Օրհնութիւնաբեր ցուցակ՝ հանդերձ կանոնական թղթովք՝ հաւանութեամբ ժողովոյ Եպիսկոպոսաց նորին *)։

Յաւուրց սրբոյն Գրիգորի Պարթեւի եղեալ քն պաշտամունք Հայաստանեայց Եկեղեցւոյ լինէին Յոյն եւ Ասորի լեզուաւ, այն է ընթերցուածք Աս-

(*) Օրհնութիւնաբեր ցուցակն տուեալ Մակարիոս Եպիսկոպոսի, դնի ի կանոնագիրս Յովհաննու Իմաստասիրին մերոյ Հայրապետի. իսկ համառօտութիւնն նորա ի Պատմ. Հայոց Մ. Չամչեան, Ա. հտ. եր. 422 — 425։

տուածաշունչ Գրոց՝ որպէս ի վեր անդր ասացաք, որ ոչ միայն ի Մակարեան կանոնագրոցն է յայտնի, որ ի Ցունէ Թարգմանեցաւ ընդ ձեռն սրբոյն Սահակայ, այլ եւ յառաջ քան զայն եւս սուրբն Մեսրովբ յուսուցանելն իւր զԱստուածաշունչ դիրս ի Գողթան, ընթեռնոյր ժողովրդոց նովին լեզուօք. եւ Ղազար իսկ պատմաբանն վկայէ Փարպեցի Թէ՝ «Նաեւ պաշտօնք Եկեղեցւոյ եւ կարդացմունք դրոց Ասորի ուսմամբ վարէին ի վանորայս եւ յեկեղեցիս Հայաստան ժողովրդոցս, յորմէ ոչ ինչ էին կարող լսել եւ օգտիլ ժողովուրդքն այսպիսի մեծի աշխարհի յանկրութենէ լեզուին Ասորւոց. եւ յարքունիսն եւս չէր փոքր աշխատութիւն, զի նաեւ անդր օտար դրով վարէին մանաւանդ Պարսկականաւ» :

Ժամերգութիւնք եկեղեցական պաշտամանց հիմնաւորապէս ի կարգի եղան ի սրբոյն Սահակայ Պարթեւէ՝ յորժամ նա ըստ Կորեանն վկայելոյ (յամի 426) զեկեղեցական դիրս Թարգմանեաց ի Ցունաց ընդ սրբոյն Մեսրովբայ. յորում ժամանակի վասն ժամերգութեան որոշելով ասել ըզՍաղմոսն Դաւթի յամենայն աւուր, բաժանեաց ութն կանոնս, յորս յաւել եւ դտասն օրհնութիւնս ի մարգարէից, եւ զչորեսին քարոզս հանդերձ աղօթիւք՝ ի գիշերային ժամու ըստ Խմաստասիրին Ցովհաննու, զփոխս Հարցին յառաւօտեան ժամու, եւ զՄեծացուսցէսն ասել յաւուրս Կիւրակէից. յարմարեաց եւ տօնս Տէրունական աւուրց եւ տօնս սրբոց ինչ հանդերձ նոցին ընթեցուածովք եւ պաշտամամբք :

Սոցա երկոցունց կարգեալ եւ զութն եղանակաւոր ձայնս եւ զերկուս Սահեղիս, արարին եւ զհոգելից շարականս *), սուրբն Սահակ զՀարցսն Աւագ շաբաթուն եւ զՂազարու, սուրբն Մեսրովբ զԱղուհացիցն :

Առաջին պաշտամունք ժամերգութեանց Հայաստանեայց եկեղեցւոյ ըստ այսմ կարգի՝ մուծաւ յեկեղեցիս մեր հայկական դրով ընդ ձեռն նախաԹարգմանչացն մերոց. ուստի նախ քան զնոսա, զի չէին պաշտօնք եկեղեցւոյս մերոյ, եւ կարդացմունք դրոց ի Լուսաւորչէն հետէ զամս իբր ութսուն եւ ութն ըստ վկայութեան Ղազարու, երեւի Սաղմոսն լինել

---

(*) Հեղինակք Շարականաց եկեղեցական երգոց ըստ իւրաքանչիւր դարուց նոցին ժամանակաց գոլով ի սկիզբն ապագրեալ շարականաց մի առ մի նշանակեալ, մեք զանց առնեմք կրկնել զանուանս նոցին աստէն։ Բայց եթէ ի պատմութիւնս ժողովոյն դէպք լինիցին, յիշատակել ունիմք զհեղինակն և երգ։

*Դաւթի եւ պաշտամունք պատարագի յաւուրց սրբոյ Հայրապետին Վրդանիսի՝ Ցոյն եւ Ասորի լեզուաւ :*

*Այս եւ սուրբն Սահակ եւ Մեսրովբ յետ ըստ այսմ ի կարգի դնելոյ զժամակարգութիւն Եկեղեցւոյ Հայաստանեայց, եղեն նոքա առաջին հեղինակ եւ հնգեցունց եկեղեցական գրեանց մերոց՝ Ժամագրքին, Տօնացուցին, Պատարագամատուցին, Մաշտոցին եւ Շարակնոցին. յորս եթէ դնք ոմանք յաշակերտաց նոցին եւ ի յետագայ Հայրապետաց ազգիս՝ զինչ ինչ յաւելին եւ զորս յայլոց Թարգմանեցին, կարգագրեցուք ի հետագայդ :*

*Ի լրումն Մաշտոց գրոցն, որով եկեղեցական խորհուրդքն կատարին, երանաշնորհ Թարգմանիչքն մեր բերին՝ ըստ ձեռագիր պատմութեանց՝ որպէս դնի եւ ի Մայր Մաշտոցին,*

*Զկանոն Սերմնօրհնէքին, կալի եւ հնձանի՝ զարարեալն Գրիգորի Աստուածաբանին՝ եբեր ի Հայս՝ ի Նազիանզու՝ Մովսէս Թարգմանիչ գրիչ սրբոյն Սահակայ ի ԻԱ ամի կաթուղիկոսութեան նորա եւ յերրորդ ամի Թարգմանութեան սրբոյն Մեսրովբայ :*

*Զկանոն ջուր օրհնելոյն զասացեալն Բարսղի՝ եբեր յԵրուսաղեմայ՝ Խոսրով Թարգմանիչ :*

*Զկանոն ապաշխարող կարգելոյ եւ արձակելոյ յԱւագհինգշաբաթի աւուր, Կիւրղի Երուսաղեմացւոյ արարեալ ի դուռն սրբոյն Սիովնի՝ բերին Կորիւն եւ Ընձակ Թարգմանիչք :*

*Զկանոն կուսան օրհնելոյ՝ սրբոյն Կիպրիանոսի Կարքեդոնացւոյ, զԱգապից Հոգեհանգստի եւ զՔահանայաթաղին զարարեալ Եփրեմի Ասորւոյն յՆիկոմիդէս քաղաքի, եբեր Ղազրիկ Թարգմանիչ յերեքտասաներորդ ամի Թարգմանութեան սրբոյն Սահակայ :*

*ԶՏեառնական (զմատաղ օրհնել) եւ զԱղ օրհնելն՝ արարեալ է Ցուստոս Եպիսկոպոս, որ չորրորդ է յԱռաքելոցն :*

*ԶԱքեմարարէքն (կրօնաւորական հանդերձ) արար Թէոդորոս Եպիսկոպոս Գամփիւլեայ քաղաքի՝ հրամանաւ սրբոյն Անտօնի հօրն Թէբայեցւոց:*

*Սուրբ Լուսաւորիչն մեր Գրիգոր՝ որպէս դնի եւ ի Մայր Մաշտոցին ըստ ձեռագրաց, արարեալ է զկանոնս գրակարդացաց, կիսասարկաւագաց եւ նկարեալ Եկեղեցւոյ, դուռն դնել Եկեղեցւոյ եւ զնշխարս սրբոց ի հանգիստ փոխել :*

Ընդ այսոցիկ եւ սուրբն Սահակ արար գՓահանայօրհնէսն ի քսան եւ մի ամի Արքեպիսկոպոսութեան իւրոյ, եւ ի Փահանայաթաղն յաւել զեօթն Աւետարանս: Արար եւ զաշխարհաթաղն ի Քաղաքուղաշտի ( ի Վաղարշապատ ) ի վկայարանս սրբոյն Հռիփսիմեայ. `ղի ի սրբոյն Գրիգորէ մինչեւ ցսա ինքն Սահակ՝ հնումն վարէին, ասի, այս ինքն արարեալմն Եփրեմի Ասորւոյ՝ ցհարիւր տասն եւ մէկ ամ:

Ըստ այսմ եւ այսչափ ի կարգի եղեալ սրբոցն Սահակայ եւ Մեսրովբայ գզիրս Եկեղեցական օրհնութեանց՝ յանուն սրբոյն կոչեցին զայն՝ Մաշտոց, յոր կոչէր Ս. Մեսրովբ:

Յետ Թարգմանչացն այսպէս ի կարգի դնելոյ զեկեղեցական պաշտամունս մեր, Գիւտ կաթուղիկոս յետ Մովսիսի Առաջնոյ կալեալ զԱթոռն Հայրապետութեան յաշակերտութենէ սրբոցն Սահակայ եւ Մեսրովբայ ի հասակի եօթանասուն ամաց, ըստ վկայելոյ նորին ժամանակակցի Ղազարու Փարպեցւոյ, եմոյծ բազում կարգաւորութիւնս ի ժամերգութիւն եւ ի պաշտամունս մեր. ըստ որոյ եւ ի գլուխ Առեանի Ժամագրոց մերոց դնի յետ սրբոյն Սահակայ եւ Մեսրովբայ՝ կարգաւորեալ զայն եւ Գիւտայ եւ Մանդակունւոյն Յովհաննու. այլ թէ որ աղօթք իցեն նորա կամ մաղթանք եւ կամ քարոզք՝ չիք յանուանէ յիշատակեալ:

Իսկ սուրբն Յովհան Մանդակունի՝ որ ի կաթողիկոսութեան իւրում յաւել յինքենէ ի Ժամագիրս կարգաւորեալս ի սրբոյն Սահակայ, զորմէ ունիմք գրել ի ներքոյ, յաւել ի Մաշտոց գիրսն ըստ վկայութեան Յովհաննու Խմաստասիրի՝ զՀիմնարկէք Եկեղեցւոյ, զԵկեղեցի օրհնէք, ըզսրբել Տաճարի, Սկհւոյ եւ Մազզմայի, եւ հանդերձի, սպասու, Աւազան եւ Մկրտութիւն առնել, Խաչ օրհնել, եւ պսակ դնել, զորոց ամենեցուն քարոզս եւ աղօթանսն՝ Մանդակունին արար սուրբն Յովհան:

Ըստ վկայելոյ Իմաստասիրին՝ ի գիշերային պաշտամունս ժամերգութեան յառաջագոյն կարգաւորեալս ի սրբոյն Սահակայ, որոյ սկիզբն լինէր «Տէր գի բազում» ասացեալ չորիւք գլխովք Սաղմոսաց՝ երրորդաւն, ութ- սներորդ երրորդաւն եւ հարիւր քառասներորդ երկրորդաւն, զհետ սոցա կարգեաց Սա զսոցին քարոզն Զարթուցեալքս ամենեքեան, եւ զաղօթս Զքեզ գոհանամք կւ զնորին հանգիստն՝ Նայեաց Տէր բարերար:

Առաւօտեան ժամերգութիւնն որպէս տեսանի ի վերն, ի սրբոց Թարգմանչացն էր կարգաւորեալ, ուր զկնի Հարցին, Ողորմեային եւ Տէր երկ-

նիցին երգէին զՓառք ի բարձունս *), եւ ապա զկցորդ սաղմոսն ըստ իւրաքանչիւր աւուր՝ որպէս որոշեալն է. սակս որոց եւ եդ կանոն սուրբն Սահակ, զի կարգեալ սաղմոսերգութիւնքն անխափան կատարեսցին յեկեղեցւոջ. կանոն Դ. Ս. Սահակայ:

Մեծացուցէ ասել՝ յաւուրս կիւրակէից միայն կանոնեալ էր սրբոյն Սահակայ զկնի Հարցին, բայց նախ քան զիմաստասէրն երեւի հաստատեալ այս կանոն:

Իսկ զՍուրբ Աստուածն ասել յառաւօտու եւ յերեկոյեան պաշտամունս ժամերգութեանց՝ գտանեմք առ սովաւ յիշատակեալ. զոր զկնի ամենայն պաշտամանց երգէին ի դէմս Որդւոյ հանդերձ խաչեցարիւ. զի յիննեւ տասներորդ գլուխ կանոնաց իւրոց ասէ Իմաստասէր Հայրապետս, « Յերեկոյինս եւ յառաւօտինս զկնի ամենայն պաշտամանց արժան է նուագել զՍուրբ Աստուածն ». յորմէ զերկու ինչ իմանամք, մի՝ զի առ սորին ժամանակաւ գոյր հակառակութիւն յամենայն օր երգելոյ զՍուրբ Աստուածն, երկրորդ՝ մինչեւ ցաւուրս սորա առաւօտեան եւ երեկոյեան ժամերգութիւնք մինչեւ ցՍուրբ Աստուածն միայն էին. զի զկնի ամենայն պաշտամանց, ասէ, արժան է նուագել զՍուրբ Աստուածն:

Յետ Սուրբ Աստուածին յառաւօտեան ժամերգութեանն՝ ապա զԱրեւագալին Սաղմոսն « Եղիցի անուն Տեառն » ասել ըստ դասուց վերաձայնութեան, զոր կարգեալ է, ասէ Իմաստասէրն՝ Տէրն Եզրի Հայոց Կաթուղիկոսի եւ ի ժամանակաց նորին սկսեալ են ըստ նորին վկայութեան ի կանոնն ԻԴ:

Իսկ ի պաշտաման երեկոյեան ժամերգութեան Խոնարհեցո՛ ասել նախ քան զԱպրեցոն՝ յաւելեալ է ըստ նորին գրելոյ ի կանոնն ԻԳ, Ներսէսի Հայոց Կաթուղիկոսի, այլ ոչ յայտ թէ ո՛ր Ներսէս լիցէ, երկրորդն կոչեցեալ Աշտարակեցի, թէ Շինողն. ուր ըստ դասուց վերաձայնութեան ասել՝ իմանի եթէ այնորիկ սաղմոսք որպէս եւ գիշերապաշտաման եւ առաւօտինն՝ դաս առ դաս նուագէին ձայնիւ, որպէս արդ զՍաղմոսն յԱւագշաբաթու եւ յաւուրս Յինանց. բայց եւ ի ԻԱ. կանոնէ նորին Յովհան-

(*) Փառք ի բարձունս ասացեալ երգ ընկալեալ եղեւ ի ժողովն Նիկիոսի. Է. գլ. Գաւառ. ժողովոյս

նու յայտ է՝ Թէ ցեր զի թագուհ կոչեցեալ չորեքին սաղմոսք ասէին միաբանութեամբ ի Թիւ խոնարհ ձայնիւ :

Այսորքիկ ժամակարգութիւնք պաշտամանց Եկեղեցւոյս մերոյ՝ մինչեւ ցՅովհան Իմաստասէր, եւ այսքան մինչեւ ցութերորդ դար Քրիստոնէութեան. իսկ անտի մինչեւ ցՇնորհալին Ներսէս ցդարն երկոտասանեորորդ՝ ոչ ինչ աղօթք կամ մաղթանք եւ քարոզք յանուանէ գտանին հեղինակեալք ի ժամերգութիւնս մեր, բաց յերգոց Շարականաց, զորմէ ստորեւ:

Թագաւորքն կամ Ալէլուքն կարգաւորեալք ի ժամերգութեան առանց. անուան հեղինակի, այնորքիկ որպէս հաւաստի երեւի, ի նախնի դարուց անտի հեղինակեալք են, եւ սաղմոսքն ալէլուք սահմանեալք յեկեղեցւոջ՝ ի Թարգմանչացն կամ ի նոցին յետագայից, որպէս եւ Փառք ի բարձունս, եւ Աւետարանք ի գիշերային ժամու, յաւուրս Պատարագի եւ որ այլք եւս :

Իսկ զՇարականս երգել ի ժամերգութեան ի տօնս սրբոց եւ ի Տէրունականս, արարեալ ի սրբոց Թարգմանչաց եւ ի հոգելոյս Վարդապետաց Եկեղեցւոյ՝ հետզհետէ գտանեմք յիւրաքանչիւր դարս գրեթէ մուծեալ յեկեղեցի մինչեւ ցՇնորհալին Ներսէս եւ յետոյ եւս քան զնա, այնքան յաճախեալ առանց ժողովոյ ընտրութեան եւ Եկեղեցական կանոնաց հրամանի, եւ ըստ իւրաքանչիւր կամս երգեալ, մինչեւ ստիպեալ Ներսիսի Շինողն կոչեցեալ Հայրապետի ի հինգերորդ ժողովն Դվնայ՝ յանձն արար Ձոնն Բարսեղ Վարդապետի որոշումն առնել շարականաց, ընտրելով զպիտանիսն յանպիտանեաց, որպէս տեսցի ի յիշեալ ժողովին ի գլ. ԺԷ. եր. զորոց եւ հեղինակացն ասացաք արդ իվեր անդր, ի ծանօթութեան: Բայց զսրբոյ Հայրապետիս մերոյ Շնորհալւոյ երգս շարականաց եւ զայլ ասացուածսն նորա կարգեալս ի պաշտամունս եկեղեցւոյ մերոյ զոլով յանուանէ նշանակեալ յիւրաքանչիւր խորագիրս, եւ մերթ եւս սկզբնատառք երգոց ոմանց յօդեն զանուն նորա, զանց առնեմք աստէն մի առ մի նշանակել *) :

(*) Հայեցեալ ի գործս Շնորհալւոյն, տեսանեմք զի զամենայն յօրինեալսն իւր երգս և Շարականս մատնեալ է ի կարգս ժամերգութեան առանց իրիք ժողովոյ և կանոնական հրամանի, հարկաւ իբրև Հայրապետ և իբրև կանոնադիր կարգաց իւրումն Եկե-

Մնայ արդ քացորոշել եւ յաղագս կարգաւորուԹեան Պատարագամատուցին, որով պաշտի առ մեզ խորհուրդ սրբոյ Պատարագին. զի առ մատենագիրս մեր ոչ գտանեմք զոճով ասացեալս, Թէ յորոց՝ հրպեսի պղօԹք կարգեցան ի նմին, կամ ոյք կարգաւորեցին զայժմու պաշտամունս Պատարագի :

Սուրբն Վրդանէս, զորմէ գրեցաք ի կարգին, գտանեմք յիշատակեալ, եԹէ կարգաւորեաց զպաշտամունս սրբոյ Պատարագին ըստ եկեղեցւոյն Երուսաղեմի, զորոյ զկարգս խնդրեալ էր ի Մակարիոսէ ուԹն գլխովք կանոնաց. յայսոսիկ կանոնս յիշատակին նիւԹք խորհրդոյ Պատարագին, հաց ջերմ եւ բաժակ անապակ, որպէս եւ արդ իսկ առ մեզ, եւ պաշտօնեայ խորհրդոյն. իսկ զաղօԹսն Պատարագամատուցին ոչ յիշատակեալ յումմէ սահմանեալս, պարտիմք վերագրել նմին իսկ Վրդանեսի. որ յընդունել զկանոնսն ի Մակարիոսէ, ասի, Թէ յաւել եւ ինքն ի նոյն ինչ ինչ կարգս ուղղուԹեան ի կատարումն խորհրդոց Եկեղեցւոյ, եւ յղեաց պատուէր առ Եպիսկոպոսունս իւրոյ Թեմին յամենայն տեղիս միօրինակ կատարել զխորհուրդսն երկիւղածուԹեամբ. ի կանոնն ԺԱ *) :

Առ իմաստասիրին Յովհաննու Օձնեցւոյ՝ ի գիրս նորա յաղագս կարգաց Եկեղեցւոյ՝ ի գլուխն վասն մեծի աւուր ՄիաշաբաԹին՝ գտանեմք, զի առ նորին ժամանակօք պաշտամունք Պատարագին սկսանէր յերրորդ ժամու առաւօտուն՝ ի Մեսեդի ասացեալ Սաղմոսէն՝ «Տէր Թագաւորեաց, վայելչուԹիւն զգեցաւ»․ յետ որոյ երգելով զերեսին ՍրբասացուԹիւնսն, համբառնայր սուրբ Աւետարանն, եւ զՄարգարէական եւ զԱռաքելական գիրսն ընԹեռնլով, ընԹերցեալ լինէր ապա Աւետարան,

---

զեցւոյ, նախնեացն հետեւելով սրբոց։ Այսու իբրու մինչ Թերեւս և Սիմէոն ԿաԹուղիկոս ի Լցուցանել զԹերԹն և զեւրել զՑօնացոյցն, յաւելեալ է Յ.րդ հատոր այնորիկ։ Աղա ուրեմն անարժան է մինչեւ յայժ ընդունայն գրուԹիւն և պատրաստ առնլուԹեան Հեղինակին Վարուց Սրբոց, որ ի ժանօԹուԹեան ԺԱ.րդ հատորոյն ոչ կանոնական համարի յետ խմբագրուԹեան Այսմաւուրքին, յոլորդ Հայրապետաց Եկեղեցւոյ մերոյ յաւելուածս ի պաշտամունս Եկեղեցւոյ։

(*) Յովհան Մանդակունի, առ Հ. Զամչեան առնլով յԱսողկայ և ի Վարդանայ, «Վայելչացոյց զՊատարագամատոյցն ի բանից Ս. Յակոբայ և Բարսղի և Ոսկեբերանի»․ Յ. հատոր գլ. ԻԱ, եր. 159։

եւ ապա բարձր ձայնիւ խոստովանէին զՀանգանակն հաւատոյ՝ տուեալն Եկեղեցւոյ ի Նիկիական Ժողովոյն :

Աստի ուրեմն իմանամք, եթէ Ժամամուտն ասացեալ պաշտամունք յետոյ ուրեմն քան զԽմաստասէրն կարգեալք են յԵկեղեցւոջ մերում ի սկիզբն պաշտաման Պատարագի՝ նախ քան զՄեսեդին Սաղմոս :

Այսչափ ինչ ներածութիւնս իբր ի յառաջաբան Պատմութեան Ժողովոց Հայաստանեայց Եկեղեցւոյ՝ համարեցաք բաւական, կարեւորացն վասն ազգիս ընդհանուր եկեղեցականաց եւ ժողովրդոց. որոց ի հոգեւոր պէտս կատարման ընդառաջ լինին հարկաւորութիւնք եկեղեցական կանոնաց, եւ հարկ տեղեկութեան վասն որպիսի պատճառացն ոցին գրութեանցն կանոնաց :

Ի գլխակարգութեան Պատմութեանս հետեւեցաք Աղիւսակին համառօտելոյ ի Միքայէլ Արքեպիսկոպոսէ Սալլանթեան, զոր տպագրեալ է միով թերթիւ ի Մոսկուա յամի 1830. իսկ զկանոնսն, է զոր եդաք ըստ համառօտութեանցն ի Պատմութեան Հայոց Մ. Չամչեան, բաղդատութեամբ ընդ ձեռագիր կանոնագրոց զքատան Հայրապետական Աթոռոյս մերոյ սուրբ Էջմիածնի, եւ է որ լցուցանելով ի կանոնագրոց անտի զպակասորդսն եւ զոչ եղեալսն ի նմին Պատմութեան կամ առնախանձու, կամ ոչ ունելոյ ի ձեռին :



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԺՈՂՈՎՈՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

### ՀԱՆԴԵՐՁ ԿԱՆՈՆԱԳՐՈՒԹԵԱՄԲՔ.

---

## ԳԼՈՒԽ Ա.



**Թադդէոս Առաքեալ նախալուսաւորիչն Հայաստանի, առաջին հիմնադիր Եկեղեցւոյս Հայոց։**

(Ամ Տեառն 1.)—Թադդէոս առաքեալ յետ համբառնալոյ Փրկչին՝ ըստ Խորենացւոյն բանի՝ Գիրք Բ. գլ. ԼԳ. առաքեցաւ ի Հայս առ Աբգար թագաւոր մեր՝ բժշկել զնա և քարոզել զԱւետարանն ըստ բանին Տեառն։

Թողլով մեր Եկեղեցական մատենագրաց զանցս գալստեան և քարոզութեան Նախալուսաւորչին մերոյ սրբոյն Թադդէոսի ի Հայս, և զայլոց Առաքելոցն անդ, զորոց պարզ ի պարզոյ առաւել քան զայլ պատմագիրս գրէ Խորենացին մեր ի նշանակեալ Գիրս անդ, մեք աստ ի սկիզբն Պատմութեան Ժողովոց՝ ըստ յիշատակելոյ մերում ի Նախադրութեան՝ առաջին կարգեմք զլուխս զկանոնս սրբոյ Առաքելոյն լիակատար տեղեկութեամբն հանդերձ ի նմին գրելոյ ի ձեռն Զաքարեայ Նորին աշակերտի, որում և ինքն իսկ վկայէ Զաքարիա ի վերջէ յիշատակեալ կանոնացն, որ ունի վերնագիր այսպիսի։

«Սահմանք և կանոնք Թադդէոսի Առաքելոյ է գալն նորա յՈւռհայ քաղաք և լուսաւորել զնոսա մկրտութեամբ առաքելականն. որ ձեռնադրեաց Եպիսկոպոսս և Քահանայս և Սարկաւագունս. և հաստատեցան ձեռնադրեալք և օրհնեալք, և եղև պայծառութիւն եկեղեցւոյ Աստուծոյ և ուղղանոյ: Սահեցաւ գնալ անդ՝ զի քարոզեսցէ և այլոց քաղաքաց. և հասոյց փոխանակ իւր զԱդդէ կերպասագործ. ժողովեցան աշակերտեան հարցանել նմա զկարգս եկեղեցւոյ և զկրօն Քրիստոնէութեան. և նա պատմեաց նոցա կարգաւ զոր հրամանի Փրկչին. որ ասէ գրեալս . . .»:

*ա.— Հարցումն առաջին.— Որպէ՞ս արժան է Եպիսկոպոսի կալ ի տեսչութիւն Եկեղեցւոյ:*

*Պատասխանի.— Եպիսկոպոսն եղիցի անարատ, պարկեշտ, ուսուցող. մի՛ երկբան, մի՛ արծաթասէր, մի՛ կերող և արբեցող, մի՛ զօշաքաղ, մի՛ հարկանող, մի՛ կաշառառու, մի՛ բամբասող, մի՛ հակառակող: Այլ հեզ և հանդարտ, պահող, տքնող, ատեցող զհանգիստ քնոյ. լինել սիրող արտասուաց քան ծաղու. օրինակ լինել հօտին ամենայն կարգօք. առնել արժանաւոր ձեռնադրութիւն այնոցիկ որ հասու գիտակ են գրոց կարգաց և օրինաց Աստուծոյ. և զտգէտս խոտեալ մի՛ ձեռնադրեսցէ. քանզի անգիտութիւն՝ Աստուծոյ ատելի է, որպէս չարագործութիւն. յայսմանէ զգոյշ լիցի քան յամենայն իրաց. քանզի տգէտ քահանայ և սարկաւագունք կամ ով և իցէ յառաքելական աստիճանն՝ զԱստուած ի բարկութիւն շարժէ. զի թէ բերանովն ի միտ առնու և առնէ, և սրտիւն ոչ իմանայ, վնասակար լինի ամենայնի Եպիսկոպոսն: Արդ քանզի կորուստ է այս ամենայն հոգւոյն, փախիցէ յայսմանէ. զուսումնասէրն յառաջացուսցէ ամենայն պատուով. իսկ զտգէտն ամենեւին մի՛ կացուցանել առաջնորդ*

և վերակացու շնորհի ինչ եկեղեցւոյ. իսկ եթէ յանդըգնեալ Եպիսկոպոսին և արասցէ զայս կամ վասն կաշառոյ, կամ վասն մերձաւորութեան, կամ վասն բարեկամութեան, այնպիսի Եպիսկոպոսն նզովեալ եղիցի. և որ ինչ անտի վնասք ծնանին, ընկալցի վրէժս յաւուրն դատաստանի յանանց տանջանսն։

Է. — Ո՞րպէս արժան է Եպիսկոպոսին ունել զիւրսն կամ զօտարսն։

Պարտ է Եպիսկոպոսին զամենայն հաւատացեալս միապէս սիրել, և զիւր մերձաւորսն մի՛ աւելի սիրել քան զայլ հաւատացեալս, թէպէտ եղբայր է կամ քոյր։ Եւ կաշառ ամենևին մի՛ առցէ. զինքն մեռեալ համարել յաշխարհի. մի՛ երբէք զբօսնուլ, կամ հրապարակաւ զոք յանդիմանել առանց երկրորդ հարցմանց, նախ առանձին, և երկրորդ կամ երրորդ վկայիւք. հրեշտակական հանդերձիւք վարել. մի՛ պճնող. առանց ընկերաց հարցմանց մի՛ ինչ գործել, զի այն է հաճոյ Աստուծոյ. կացուցանել ընդ ձեռամբ իւրով տեսուչս դաւառաց, քաղաքաց վարդապետս. հովուել զհօտ Տեառն. և ժողովրդոցն հնազանդ լինել հովուացն կարգեցելոց յԵպիսկոպոսէն. կարգեսցէ ի շէնս երկու կամ երեք քահանայս, սարկաւագ մի. իսկ յագարակսն քահանայ մի, և սարկաւագ մի. զհաշմեալ ոք մի՛ ձեռնադրեսցէ. զի եթէ արատաւորն պատարագ չհրամայէ մատուցանել մովսէսէն, որչափ ևս առաւել զերկնաւոր պատարագն մատուցանել առանց արատոյ լինել. առանց վկայից և քննութեան մի՛ զոք ձեռնադրել և առանց հաւանութեան ժողովրդեանն, զի անտի մահաբեր վնասք ծնանին։

Ը. — Ո՞րպիսի չափով պարտ է ձեռնադրել քահանայս և սարկաւագունս, և որչափ կալ ի կարգին։

Արժան է Եպիսկոպոսին կարգել քահանայս երեսնամեայ, և Դ. ամ կալ ի կարգին. իսկ Ծ. ամենեցին կամ թէ աւելի՝ մի՛ ձեռնադրել քահանայ կամ սարկաւագ. և մի՛ ամուսնութիւն հրամայել. զի յայսմ վայրի և անձն աղճատին և միտքն, և ժամանակ (է) զինքն պատրաստել ի բուն ուղղորութեան. պայծառացուցանել զլապտերսն, զի մի՛ զայլս հոգալով, զինքն անհոգս տրացէ ի յաւիտենական կենացն:

Դ. — Ո՞րպիսի օրինակաւ պարտ է ընտրել զլաւսն յոռեացն, և ձեռնադրել:

Աւելի հրաժարեսցի Եպիսկոպոսն ի ձեռնադրութենէ ագիտաց և ախմարացն, ցոպամտաց և վատամտաց, յափշտակողաց և ի շնացողաց և յայլ վատթարագործաց. զայսպիսիսն ամենեսին մի՛ ձեռնադրել և մի՛ բարկացուցանել զԱստուած:

Ե. — Զի՞նչ օրինակաւ պարտ է ուղղել զսուրբ սեղանն և ո՞րպէս սպասաւորել:

Արժան է առնուլ ի քարանց օրինակ Խաչի. և զնա ծածկեսցեն սուրբ հանդերձիւք. և ընդ առաւօտս և ընդ երեկոյս և ի ժամ Պատարագին անխնայ լիցի խնկարկութիւն և լուցումն ի ժամու իւրեանց:

Զ. — Զհաց և զգինի ո՞րպէս պատշաճեսցուք առ սուրբ սեղանն:

Զհաց Պատարագին յորում աւուր զպատարագն մատուցանեն՝ ի նմին աւուր եփեսցեն խաչապէս դրոշմամբ. նոյնպէս և զգինի սուրբ բաժակին՝ ի սուրբ ամանս պահեսցեն և սուրբ ամանաւ հանցեն ի սեղանն. և մի՛ ոք յանդգնեսցի ջուր խառնել ի բաժակն, զի չէ այն Աստուծոյ հաճոյ, այլ անագորոյն մնաց . . . :

Է. — Ո՞րպէս պարտ է օրհնել զեկեղեցին և զսուրբ սեղանն։

Յորժամ զսեղանն հաստատեսցէ Եպիսկոպոսն, ժողով արասցէ Աթոռակցաց իւրոց, քահանայից և սարկաւագաց և ժողովրդոց, մատուցանել աղօթս տքնութեամբ, արտասուօք, սաղմոսիւք, մարգարէիւք և սուրբ Աւետարանաւն, և ապա մատուցանել պատարագ։

Ը. — Թէ ո՞րպէս պարտ է յաւուր շնորհի մխիթարութիւն առնել ժողովրդեան կերակրովք և ըմպելեօք։

Յորժամ հաստատէ Եպիսկոպոսն զսեղանն, արժան է զընծմունս առնել, զուարակս և արջառս և ոչխարս, որպէս Սողոմոն արար ի շինուածս տաճարին։

Թ. — Ո՞րպէս արժան է ժողովրդականացն կալ յաղօթս յեկեղեցւոջ։

Յորժամ ժողովին ժողովուրդք հաւատացեալք ի տուն Աստուծոյ՝ մի՛ քրթմնջեսցեն, և մի՛ ընդ միմեանս նայեսցին. զայլ ինչ մի՛ խօսեսցին, բայց միայն յաղօթս Աստուծոյ, կացցեն ընդ արևելս, ձեռս ի վեր ամբարձեալս, խնդրելով զարդարութիւն և Արքայութեանն արժանանալ, զոր պատրաստեաց Աստուած։

Ժ. — Եթէ ոք ագիտութեամբ ձեռնադրեցաւ քահանայ, և յետոյ յայտնեսցի, զի՞նչ արժան է առնել։

Եթէ ձեռնադրեսցի ոք եպիսկոպոս կամ քահանայ կամ սարկաւագ, և յանցանք լինի առնն շնութիւն կամ գողութիւն կամ այլ ինչ աղտեղութիւն, և ի ձեռնադրութեանն չգիտաց ոք, և վկայեաց ոչ ոք, և ապա յետոյ ինքն զղջացաւ, և կամ պատճառանօք ինչ իրքն յայտնեցան, ոչ կարէ նա այլ ևս սպասաւորութիւն առնել սեղանոյն, կամ պատարագ մատուցանել. այլ արտաքոյ եկեղեցւոյն ապաշխարեսցէ զյանցանս իւր Ժ. Ի.

ամ․ և ապա որ՝ ինչ պարտ է շնորհել նմա խնկրքոյ բեմին սպասաւորութիւն առնել՝ կալ ի պատուէն միաբանկեալ մինչև ցօր մահուան իւրոյ։

ժա. — Եթէ ձեռնադրեցաւ ոք և յետոյ գարշեցաւ, զի՞նչ արժան է առնել։

Եթէ ուղիղ էր մարդն և ապա յետոյ շնացաւ կամ գողացաւ կամ վաւթար գործեաց, այնպիսեացն ամենևին բարձցի քահանայութիւնն և շնորհն և ձեռն և նշանն, զի անհնարին է նմա այլ քահանայանալ. այլ արտաքոյ Եկեղեցւոյ ապաշխարեսցէ ԺԲ ամ, ապա եկեղեցւոյ արժանանայ և հաղորդութեան Սուրբ Խորհրդոյն. ընդ զինուորսն կացցէ յեկեղեցւոջն, զի անհնար է նմա ի բեմ ելանել, կամ կարդալ, կամ սաղմոսել մինչև յօր մահուան իւրոյ. քանզի պղծեաց զսուրբ ձեռնադրութիւնն և առ ոտն կոխեաց. մի՛ ոք համարձակեսցի նմա. զի չէ հնար նմա այլ քահանայանալ. իսկ եթէ յանդգնեսցի եպիսկոպոսն վասն կաշառոյ կամ վասն բարեխօսութեան և հրաման տացէ նմա քահանայութեան, կրեսցէ նա վրէժ յաւուրն դատաստանի յաններելի տանջանսն։

ժբ. — Ամուսնացեալ քահանայ որպէս պատրաստեսցի պատարագ մատուցանել։

Երիս աւուրս հրաժարեսցի ի կնոջէն և ապա պատարագ մատուսցէ. զի թէ զհաց Յառաջաւորութեանն չէր քահանայն առանց քննութեան և սուրբ գտանելոյ ի կանանց, որչափ ևս առաւել որ զերկնաւոր Պատարագն մատուցանէ՝ պարտ է սուրբ լինել և պատրաստ՝ որպէս Աստուծոյ իսկ կալ ի սպասու ահիւ և դողութեամբ, զի պսակաց արժանի լիցի և անմահ կենացն։

ժգ. — Անձամբ քահանայ որպէս արասցէ։

Եթէ կուսան քահանայ ոք լիցի, այնպիսին ողջնող լիցի՝ յորում աւուր զպատարագն մատուցանել կամիցի, պատրաստեսցի զգիշերն ամենայն սուրբ խորհրդով, կատարեալ մտօք առանց կեղծաւորութեան. քանզի ընդ Աստուծոյ ի խորհուրդ մտանէ։

ժդ. — Եթէ արժա՞ն է քահանային երդնուլ։

Նմա չէ արժան կալ ի քահանայութեանն, զի զբանն Աստուծոյ անարգեաց։

ժե. — Ո՞րպէս պա՛րտ է քահանային լինել։

Արժան է աղքատասէր լինել, քաղցրաբան, խորհրդական. զմեղուցեալսն ուղղել յապաշխարութիւն, պահօք և աղօթիւք զամենեսեան Արքայութեան արժանացուցանել. զի յերեկըն Քրիստոսի առնուցու զանթառամ փառաց պսակն։

ժզ. — Որ հաւատացեալ է և մկրտեալ, և անկանիցի ի մեղս, զի՞նչ արժան է առնել։

Մի՛ երբէք լիցի նոցա անկանել ընդ մեղօք, այլ աստուածահաճոյ վարել զկեանս իւրեանց. մի՛ շնալ, մի՛ գողանալ, մի՛ բամբասել և մի՛ երդնուլ, այլ որպէս Աստուծոյ իսկ ժողովուրդ՝ առանց աղտոյ լինել։

ժէ. — Որ շնայ, զի՞նչ պարտ է առնել։

Արտաքոյ եկեղեցւոյ ապաշխարեսցէ Գ. ամ պահօք և աղօթիւք, ողջնութեամբ, և լուծմամբ ի շաբաթ և ի կիւրակէի և ի Տէրունական տօնս մինչև ի կատարել երից ամացն. և յամին չորրորդի հաղորդութեան արժանի լիցի . . . ։

ժը. — Որ ի շնալն զորդեծնութիւնն հեղուցու, զի մի՛ մարդկան յայտնեսցի, և զԱստուծոյ երկիւղն առ ոչ ինչ համարեսցի։

Այնպիսին ընդ սպանողի ապաշխարեսցէ բազում հառաչանօք։

ժը. — Որ հեղու զինքն, զի՞նչ առնելի է։

Գիղծ է այնպիսին, ընդ շնացողս ապաշխարեսցէ. և եթէ յամէ, կրկին ապաշխարեսցէ, և ձեռնադրութեան արժանի մի՛ լիցի։

ի. — Որ ընդ արու պղծի, զի՞նչ արժան է առնել։

Զամենայն աւուրս կենաց իւրոց՝ ապաշխարեսցէ արտաքոյ Եկեղեցւոյն, և ի ժամանակ որոշման իւրոյ հաղորդեսցի։

իա. — Եթէ ամուսնացեալք շնան, զի՞նչ արասցուք։

Տասներկու ամ արտաքոյ Եկեղեցւոյն ապաշխարեսցէ արտասուօք. վեց ամ օրէնս մի՛ առցէ. և զտարւոյն երեք մասն պահեսցէ, և մի մասն կերիցէ. և զշաբաթ և զկիւրակէ և զՏէրունական տօնսն կերիցէ. և մտցէ յեկեղեցի և օրէնս առցէ։

իբ. — Որ զՔրիստոս ուրանայ և զղջացեալ դառնայ, զի՞նչ արասցուք։

Զամենայն աւուրս կենաց իւրոց ապաշխարեսցէ արտասուօք, պահօք և աղօթիւք և տրօք տնանկաց. ի վախճանին հաղորդեսցի։

իգ. — Որ կամօք մարդ սպանանէ, որո՞ւմ արժան է։

Տասն և հինգ ամ ընդ ունկնդիրս կացցէ, մի ամ ընդ ձեռամբ, և յելս անձին իւրոյ հաղորդեսցի։

իդ. — Որ մի մօր կաթամբ սնեալ են օտարք ի միմեանց, արժա՞ն է ամուսնանալ։

Չէ արժան, զի ծնող և սնուցող ի մի համարի են։

իե. — Եթէ ազգականք ամուսնանան, զի՞նչ արասցուք։

Բանկել արժան է ի միմեանց, և ծանր ապաշխարութիւն ի վերայ դնել. զի չէ ամուսնութիւն, և ընդ անիծիւք Արարչին է։

ԽԴ. — Որ զսահման ընկերին յափշտակէ, ո՞րպիսի ինչ։

Զոր գրեաց Մովսէս յօրէնսն, իջցէ անէծքն ի վերայ նորա և եղիցի նզովեալ ի կեանս և ի մահ։

ԽԵ. — Ո՞րպէս կատարեսցուք զԱստուածային տօնից զկարգս։

Նախ պահեսցեն շաբաթ մի ի պատիւ տօնին, և ապա կատարեսցեն։

ԽԶ. — Զչորեքշաբաթ և զՈւրբաթ արժա՞ն է պահել։

Արժան է պահել և աղօթել, զի աւուրք չարչարանաց Փրկչին մերոյ են. տրտում կալ. յիշել զնորա կամաւոր խոնարհութիւն, գոհանալով զնմանէ, որ եկն և փրկեաց զմեզ իւրով կամաւոր չարչարանօքն մինչև ցինն ժամն։

ԽԷ. — Զսուրբ Քառասունսն արժա՞ն է պահել։

Զսուրբ քառասներորդսն պահեսցեն ամենայն քրիստոնեայք սրբութեամբ որոշ ի Շաբաթէ և ի Կիւրակէէ. յորժամ Տեառն մերոյ չարչարանաց աւուրքն գան, ժպրհել մի՛ ոք իշխեսցէ յայն աւուրս, այլ տրտում ըստ Տեառն մերոյ՝ տքնութեամբ անդադար աղօթեսցեն, և ապա զկենարար պասեքն արասցեն, ցնծասցեն ընդ Տեառըն մերոյ յառնելն. աղօթիւք փառաւորեսցեն զնա՝ որ փրկեաց զմեզ յարութեամբն իւրով, և ետ մեզ երգակից լինել վերնոցն. զի նմա վայելէ փառք յաւիտեանս. ամէն։

"Իբրև կատարեաց զայս սուրբ Առաքեալըն Թադդէոս, ասէ ցժողովուրդն. Հարք և եղբարք որք Տեառն ետուք զանձինս, այս ձեզ լինիցին օրէնք, և այլ՝ որ յետ ձեր լինելոց են։ Արդ հաստատուն կացէք յամենայնի զոր

լուարուք յինէն. մի՛ անցանէք ըստ սահմանս ըստ այսմ, զի ձեզ՝ բարի լինիցի և երկայնակեացք լինիցիք. եղիցի ձեզ յիշատակ բանս այս, և մի՛ մոռանայք յաղօթս ձեր. և զայլ կարգաւորութիւնն ուսուցէ ձեզ Ադդէ, զամենայն զոր լուաւ յինէն ըստ կարգին զոր կարգեցին եղբարք և առաքեալք Տեառն. պահեսջիք խաղաղութեամբ ի փորձանաց չարին. խաղաղութիւն ընդ ձեզ ,,։

" Զայս Օրինադրութիւն ես Զաքարիա աշակերտ առաքելոյն Թադդէոսի գրեցի, որպէս լուայ ի նմանէ, ամենայն հաւատացելոց ի Քրիստոս ,,։

## ԳԼՈՒԽ Բ.

### Առաջին ժողով է Վաղարշապատ վասն ընդունելոյ զժողովն և զկանոնս Նիկիոյ։

(**Ամք Տեառն 325**). — Այն ինչ առաջին Ընդհանրական Ժողովն Նիկիոյ լինէր ի Բիւթանիա քաղաքի հրամանաւ ինքնակալին Կոստանդիանոսի՝ ընդ դէմ Արիոսի Աղեքսանդրացւոյ, որ ուսուցանէր " ոչ զՈրդի հաւասար Հօր, և ոչ ի բնութենէ և յէութենէ Հօր, և ոչ ծնեալ ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս, այլ օտար զոմն և արարած և կրտսեր և յետ ժամանակի ռաստացեալ ,,. և գայր հասանէր հրովարտակ ինքնակալին առ Տրդատ արքայ գնալ ի ժողովն հանդերձ Ս. Գրիգորիւ. սոցա ոչ կամելով գնալ, առաքեն Թղթով ի տեղի իւրեանց զսուրբն Արիստակէս։

Ապա յորժամ դարձաւ Արիստակէս հանդերձ քանոնիւք և դաւանութեամբ սրբոյ ժողովոյն, որ վասն բարեկարգութեան եկեղեցւոյ ըստ ուղղութեան այնր

ժամանակի, սուրբն Գրիգոր ժողով արարեալ ի Վաղարշապատ քաղաքի յԱթոռն Հայրապետական, ընկալաւ զկանոնս և զդաւանութիւն ժողովոյն, զՀանգանակն Հաւատոյ, կնքելով զայն բանիւս. "Իսկ մեք փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս, երկրպագանելով սրբոյ Երրորդութեանն և միոյ Աստուածութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ":

Ապա ըստ վկայութեան Խորենացւոյն Բ. Գիրք, Գ. "Սուղ ինչ գլուխս յինքենէ ի կանոնս ժողովոյն յաւելու, վասն առաւել զգուշութեան իւրոյ վիճակին"՝ Սուրբն Գրիգոր, զորս յառաջ բերեմք աստանօր:

Վերնագիր կանոնաց սրբոյն Գրիգորի երկրորդ Լուսաւորչին մերոյ եդեալ ի Կանոնագիրս մեր ըստ այսմ, "Կանոն սրբոյն Գրիգորի Պարթեւի՝ յաւելուած Նիկիականին". մեք առաւել հաւատարիմ համարիմք և զհետեւեալ զերեսուն գլուխք կանոնս նմա լինել, քան զկարծիս Միքայէլի Չամչեան *), զորս և յառաջ բերեմք ի Կանոնագրոց՝ ըստ այսմ:

---

(*) Զհայեցեալ մեր ի կարծիս Հ. Միքայէլի Չամչեան յառաջ բերեալս յԱ. հատ. գլ. Խ. որով զեղեալ կանոնս երեսուն գլխովք անուամբ սրբոյն Գրիգորի Պարթեւի՝ ոչ հայեցուցանէ ի հանգամանս ժամանակի սրբոյն, մեք հաւատարիմ համարելով զԿանոնագիրս մեր ի Նախնեաց առ մեզ հասեալս, և զվերնագիր կանոնացն, եդաք զայնս աստանօր ըստ կարգի պատմութեան Ժողովոց Հայաստանեայց Եկեղեցւոյ. և ոչ իսկ կամիմք մտանել ի տարապարտ քննութիւնս նորա վասն այսր կանոնաց ի նոյն Ա. հատ. եր. 647—649. մինչդեռ այս կանոնք սրբոյ Պարթեւին դիցուք թէ ըստ նորա ոչ հային այնքան ի հանգամանս ժամանակի նորա, որով կամի ասել, թէ նորոգ պայծառանային Եկեղեցիք Հայաստանեայց և վիճակ ժողովրդոց քրիստոնէութեամբ և աստուածպաշտութեամբ

ա. — Քահանայ որ ի մեղս գլուածեալ է, տասն ամ ապաշխարեսցէ ջերմեռանդն արտասուօք և տրտմօք սը-նանկաց. և ապա հաղորդեսցի օրինաց։

բ. — Քահանայ որ կին առնու, հինգ ամ արտաքոյ, և երկու ամ ի ներքս ապաշխարեսցէ, և երկու ամ անհաղորդ կացցէ, ապա հաղորդեսցի։

գ. — Քահանայ որ զարծաթ իւր ի վարձու տայ, մերժեսցի յեկեղեցւոյն։

դ. — Որք երթան ի տունս հեթանոսաց և ուտեն և ըմպեն անխտիր, երեք ամ ապաշխարեսցեն, և ապա հաղորդեսցին։

ե. — Որ մինն երկեակ է և միւսն կուսան, երկու ամ արտաքոյ, և մի ամ ընդ օրինօք։

զ. — Եթէ ոք թողու զերկրորդն և յառաջինն դարձցի ի թողեալն, եօթն ամ ընդ յանցանացն ապաշխարեսցէ, և երկու ընդ օրինօք։

է. — Որք ոք կերիցէ գաղտ, և արգելցէ զուտելն, և տացէ աղքատաց զնոյն չափ։

ը. — Եթէ ոք գաղտ պսակ դնէ, պսակադիրն լուծցի։

թ. — Եթէ ոք առևանգ արասցէ, պսակն այն յաւէր եղիցի, և պսակեալն ում կամի՝ լիցի։

ժ. — Որ ի ձիան յերասանէն, յագելապէս, երեք ամ արտաքոյ, և մի ամ ընդ օրինօք։

ժա. — Իգացելոցն երեք ամ արտաքոյ, և երկու ամ ընդ օրինօք։

---

ի բարեկարգութիւնս. բայց աւանիկ համաձայն գան այնոքիկ Նիկիականին տասցեալ առաջնոց կանոնացն գրեթէ ըստ իւրաքանչիւր գլխոց. զորս բաղդատել՝ թողումք քննաբանից։

ԽԲ. — Թովչացն հինգ ամ արտաքոյ, և մի ամ ընդ օրինօք մեծաւ ողորմութեամբ հաղորդի։

ԽԳ. — Որ կուսութիւն Աստուծոյ խոստացաւ և ապա պոռնկեցաւ, եօթն ամ ապաշխարեսցէ։

ԽԴ. — Մանուկ որ առանց կնքոյ մեռանի, եթէ ի ծնողացն ծուլութենէ իցէ, եօթն ամ արտաքոյ ապաշխարեսցեն, և մի ամ ընդ օրինօք. նոյնպէս և հոգաբարձուացըն և քահանային, որ ծուլացաւ։

ԽԵ. — Որ զգերեզմանս առանձուկ, երեք ամ արտաքոյ ապաշխարեսցեն, և մի ամ ընդ օրինօք։

ԽԶ. — Որ զդիսն կողոպտեն, տասնևհինգ ամ արտաքոյ ապաշխարեսցեն, և մի ամ ընդ օրինօք։

ԽԷ. — Որ կոծ դնեն և զհերսն խզեն, և զճակատս հարկանեն, նզովեալ լիցին ի կեանս և ի մահ։

ԽԸ. — Չէ պարտ՝ ուր նշխարք մարտիրոսաց դնին, պատարագ մատուցանել ի վերայ։

ԽԹ. — Չէ պարտ քրիստոնէից նկատել զխառնակութիւն անասնոց, և առաւել ևս կանանց պատուիրեն օրէնք, և որ գտցի՝ նզովեալ եղիցի։

Ծ. — Ոչ հրամայեն կանոնք Անապատականաց մկրտութիւն առնել, կամ օրէնս տալ ժողովրդոց, կամ պսակ դնել, զի այս Առաջնորդաց է։

ԾԱ. — Եթէ ոք ելոյծ զհրամանս մեռելոցն և արհամարհեաց՝ նզովեալ եղիցի։

ԾԲ. — Եթէ ոք ի քահանայից զծածուկ խոստովանութիւն ուրուք յայտնեսցէ, անկցի յաստիճանէն, և ի կարգէ պաշտօնէից մերժեսցի, և մեղք չխոստովանողացն եկեսցէ ի վերայ նորա։

ԾԳ. — Որ վասն պոռնկութեան արձակէ զկին իւր՝ արձակեալ լիցի. բայց մի ամ սրբեսցի։

ԽԴ. — Այր որ զկին խուրթողու ի պատճառս Աստուածպաշտութեան՝ նզովեալ եղիցի։

ԽԵ. — Եթէ ոք արբեցաւ ի քահանայից, կամ ի սարկաւագաց կամ ի դպրաց, մի՛ իշխեսցէ ի պատարագն կամ ի պաշտօնն մերձենալ, մինչև բազում արտասուօք և գթով տնանկաց ապաշխարեսցէ. զի արբեցողքն ընդ սպանողս են։

ԽԶ. — Եթէ ոք ի քահանայից կամ յաշխարհականաց տացէ կաշառս, եկեսցեն անէծքն Սիմոնի կախարդի ի վերայ նորա, և կցորդ եղիցի Յուդայի մատնչի կաշառոյն, և Գէեզի բորոտի. այրեսցին ոգիք կաշառառուացն։

ԽԷ. — Զեռնածուացն մի ամ արտաքոյ օրինացն, և մի ընդ օրինօք ապաշխարեսցեն. արտասուօք և ողորմութեամբ քաւեսցին։

ԽԸ. — Պարտ է քրիստոնէից պատուել զՍիւրակէն և հանգչիլ ի նմա. ապա եթէ ոք պահեսցէ հրէաբար, նզովեալ եղիցի։

ԽԹ. — Քահանայ որ վայրաբար նզովէ՝ նզովեալ լիցի։

Ծ. — Այս որ նուիրեսցէ զինքն Տեառն Աստուծոյ, նոյնպէս և մոնոզոն՝ մի՛ իշխեսցէ ամուսնանալ. ապա եթէ գտցին անկեալք, մերժեսցին ի հաղորդութենէն. և Եպիսկոպոսն տեսցէ զվարսն, և որպէս կամի՝ մարդասիրեսցէ։

Այս կանոնք սրբոյն Գրիգորի Պարթևի ունի վերջաբանութիւն այսպիսի ի Կանոնագիրս մեր, յորմէ առաք զվերոյ գրեալ կանոնսն ։

''Եւ արդ զայս ամենայն գրեցաք առ ի փորձելոյ 'զիւրաքանչիւր չափ ապաշխարութեան. զի մի՛ զոք կորուսցուք յայնպիսեաց անտի," այլ զարհուրեալք ի ծանր դատաստանէն, և յահազին և ի մեծ հատուցման աւուրն Տեառն

*մերոյ ընկալցուք զայնպիսիսն և օգտեսցուք զնոսա հանդերձ աղօթիւք և պատարագօք, և յափշտակեսցուք զնոսա յորոգայթից սատանայի, որպէս զի և զանձինս մեր կարասցուք զերծուցանել յահագին տանջանացն Քրիստոսիւ Յիսուսիւ Տերամբ մերով. փառք յաւիտեանս. ամէն,,։*

*Զհետ վերոյեղեալ կանոնացն դնին դարձեալ ի նմին Կանոնագրի և հետագայ կանոնքդ մետասան գլխովք՝ անուամբ Սրբոյն Գրիգորի Պարթևի՝ այսպիսի վերնագրով։*

«ԿԱՆՈՆՔ ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՊԱՐԹԵՒԻ»։

Գուշեալ հարցումն և պատասխանիք նոցա։

*ա. — Քահանայ որ ընդ կնոջ ի քուն է, ի վաղիւն պատարագ մի՛ իշխեսցէ մատուցանել։ Եւ աշխարհական որ ընդ կնոջ ի քուն է, ի վաղիւն օրհնաց մի՛ լիցի հաղորդ։*

*բ. Հարց. — Ո՞վ է հայր մահու։*

*Պատասխանի. — Նախանձ։*

*— Ուստի՞ յայտ է։*

*Յայտնանէ. Նախանձու բանսարկուին եմուտ մահ յաշխարհ։*

*գ. Հարց. — Եւ ո՞վ մայր մեղաց։*

*Պատասխանի. — Ագահութիւն, որպէս ասեն՝ Արմատ ամենայն չարեաց արծաթսիրութիւնն է։*

*դ. Հ. — Ո՞վ է որ տանի ի կեանսն յաւիտենից։*

*Պատասխանի. — Հեզութիւն . . .*

*ե. Հ. — Եւ ո՞վ առիթ դժոխոցն։*

*Պատասխանի. — Լրբութիւն . . .*

*զ. Հ. — Եթէ կարիցե՞ն կախարդք զընութիւն արարածոց փոխել։*

Պատասխանի. — Եթէ հաստատել կարեն, ապա և փոխել կարեն . . . .

Է. Հ. — Կայեն առանց Աստուծոյ սպան զԱբէլ, և սպանօղն Կայենի՛ առանց Աստուծո՞յ սպան զնա եղն . . .

Պտս. — Ո՛չ թէ լինի մարդ առանց Աստուծոյ և մեռանի, ո՛չ պոռնկորդին Աստուծոյ հրամանաւն լինի, և ոչ մեղաւորն Աստուծոյ հրամանաւն մեռուցանէ զարդարն, այլ սատանայ է պատճառ չարեաց . . .

Ը. Հ. — Եթէ կարիցե՞ն կախարդք որդիս տալ ամլոց...

Պտս. — Ամլութեան բազում պատճառք են. այն զոր Աստուած արգիլեալ է, չէ՛ ոք որ նմա ձեռնհաս կարէ լինել, ոչ կախարդք և ոչ բժիշկ . . .

Թ. Հ. — Գիւահարութեան պատճառ ի՞նչ է մարդկան ։

Պտս. — Վասն հպարտութեան մարդկան լինի . . .

Ժ. Հ. — Ծննունդք ե՞ն դիւաց, և մահ աճի՞ն և պակասե՞ն ։

Պտս. — . . .

ԺԱ. Հ. — Բաջք անիրեւոյթ արարածք են Աստուծոյ, զպատերազմունս նոցա՞ հարկանեն, զորս էրէոց նոցա՞ հարկանեն . .

Պտս. — Այսպիսի յիմարութեամբ լցեալ է երկիր . . .

Բայց յերկուց աստի կանոնացս եղելոց ի Կանոնագիրս մեր, որպէս ասացաք, անուամբ Սրբոյն Գրիգորի երկրորդ լուսաւորչին մերոյ գտաք դարձեալ ի նմին և զերկուս ճառօրէն կանոնս նորին Գրիգորի, առաջինն՝ վասն կարգի ուխտի և որոշումն վանաց, և երկրորդն՝ յաղագս նուիրանաց քահանայից և վանօրէից՝ կոչեցեալն Եզապ, թարգմանեալ յաւուրս սրբոյն և մեծին Սահակայ՝ ընդ ձեռն Եզնակայ, որպէս է տեսանել ի վերնագրին, յորոց

երեւի առեալ սրբոյն Սահակայ, և ընդարձակեալ զկանոնս արարեալս նորա յամին 426, ի Զորրորդ Ժողովն Վաղարշապատայ։ Այսոքիկ կանոնք զնոյն համարիմք մեք եղեալս ի սրբոյ Գրիգորէ Պարթևէ՝ զորմէ Ագաթանգեղոս և Խորենացին գրեն, սուղ ինչ գլուխս յինքենէ ի կանոնս ժողովոյն յաւելու սուրբն Գրիգոր՝ վասն առաւել զգուշութեան իւրոյ վիճակին, զոր երեւի չունել ի ձեռին և Հայր Միքայէլ Չամչեան յիւրում ժամանակի, ապա թէ ոչ՝ ոչ յընդունայն անկանէր ի տարապարտ քննութիւնս՝ որպէս ասացաք ի ծանօթութեանն՝ յաղագս կանոնաց սրբոյն Գրիգորի Պարթևի։

‘‘Սահմանադրութիւն կարգաց՝ ընկալեալ ի Նահապետէն Տեառնէ Գրիգորէ՝ Թարգմանեցաւ ընդ յետ Ներսիսի՝ հրամանաւ Երանելւոյն Սահակայ Եպիսկոպոսապետին Հայոց, և նորին Աթոռակցաց, Ըստ որպէս սահմանեցաւ կարգ ուխտի և ո-րոշման կանոնաց,,։

‘‘Քանզի ոմանք կարծեցին տգիտութեամբ այլ զոմն Եկեղեցի ասել Կոչարան, և այլ զոմն՝ Վանս, և տխմար բանիւք իւրեանց կամեցան կռիւս, հերձուածս մուծանել ի միաբանութիւն հաւատոյ, և մոռացան զբանն պատուիրանին որ ասէ. Մի է Տէր. մի հաւատ, մի մկրտութիւն. զի որ այլ և այլ կամի ասել, զհաւատոյ ցուցանէ զբաժանումն. քանզի Եկեղեցի ոչ ծանուցանէ զայդ պատուիրանն Աստուծոյ, որ ի քարանց և ի փայտից շինեալ է, այլ զհաւատոյն շինեալ զազգս մարդկան ի վերայ վիմին հաստատութեան. ապա ուրեմն ճշմարիտ հաւատն է Եկեղեցի. որ գումարէ և շինէ զմեզ ի մի միաբանութիւն գիտութեան Որդւոյն Աստուծոյ. քանզի նոյն ինքն Կենարարն ուսուցանէ ասելով ցՊետրոս. Դու ես վէմ. և ի

վերայ այդր վիմի շինեցից զԵկեղեցի իմ. և դրունք դժոխոց զնա մի՛ յաղթահարեսցեն,, ։

Արդ զի՞նչ իմանայցեմք ասելն զՊետրոս Վէմ. միթէ որպէս զմի ոք ի քարա՛նց. քա՛ւ լիցի. այլ մարդ բանաւոր և գլուխ առաքելական դասուն. և զի անդրդուելի հաւատով խոստովանեաց զՔրիստոս՝ Որդի Աստուծոյ, երանութիւն ընկալաւ և Վէմ անուանեցաւ. ապա ուրեմն և շինուածքն ի վերայ նորա ոչ են քարինք անշունչք, այլ մարդիկ նորին հաւատոյ հաղորդակիցք. քանզի ոչ զանդաղեն զիրք սովին անուամբ ձայնել զՏէր մեր և Փրկիչ ուրեք ըստ պիտոյից. յիշատակէ ահա և երանելին Պաւղոս զանուն Եկեղեցւոյ ասելով. Զոր եդն Աստուած յեկեղեցւոջն՝ այս են, նախ զառաքեալս, երկրորդ զմարգարէս, երրորդ զվարդապետս, և որ ինչ ի կարգին է։ Տեսանեմս զյարմարումն և զպանծալի բարձրութիւն Եկեղեցւոյ, զսուրբ և զամբիծ հաւատոյ ասեմ, որոյ առաքեալք և մարգարէք և վարդապետք են նաւավարք, ունելով նաւապետ՝ զմարմնացեալ և զմարդացեալ բանն Աստուած և զհաւատոն. զնա իսկապէս խոստովանիմք ասել Մայր Եկեղեցւոյ ի Քրիստոս հաւատացելոց. քանզի զօրէն նաւի զամենեսին յինքն ամփոփելով ցամաքաթև յամենայն աշխարհական ծփանաց, կարող լինի ապրեցուցանել, բայց միայն աներկևան պահեսցուք զհաւատս, որով շինեցաք, բանաւոր և մտաւոր Եկեղեցւոյ՝ ի վերայ հիման առաքելոց և մարգարէից։ Այսմ Եկեղեցւոյ ուսուցանէ Տիմոթեայ՝ խնամ ունել երանելին Առաքեալն, սիւն և հաստատութիւն և ճշմարտութիւն անուանելով. յայտնի է, ասէ, ի նմա խորհուրդ Աստուածպաշտութեան, այլ միայն բանաւոր եկեղեցիս. վասն այսորիկ և Սողոմոն բարձրագոյնս գոչէ իսկ, թէ Օրհնութիւն նորա

յԵկեղեցին սրբոց է։ Ահա և Սամուէլ մարգարէ՝ որ Հաւատարիմ կոչեցաւ, զայն ուսուցանէր ի պատուիրելն իւրում առ Սաւուղայ. Իբրև գնայցես յինէն, ասէ, հանդիպեսցիս Եկեղեցւոյն մարգարէից՝ մարգարէացելոցն. և դարձեալ եթէ Եկեղեցացս զժողովուրդն ի Դանայ մինչև ցԲերսաբէէ, իբրև զայր մի, և Եկեղեցի մարգարէացելոց մարգարէից, և Սամուէլ կայր ի վերայ նոցա։

Նա օրհնեաց Սողոմոն զԵկեղեցին Իսրայէլի։ Նա լուեալ բանս այս յականջս եկեղեցւոյն։ Նա եկեղեցիքն հաստատէին ի հաւատս։ Նա լուաւ զպատգամս զայս ի միջոյ հրոյն յաւուրն Եկեղեցւոյ։ Քանզի Եկեղեցի արար զգլուխ ամենայն մարգարէիցն Մովսէս զցեղն Իսրայէլի հրամանաւն Աստուծոյ։ Եկեղեցացս, ասէ, զժողովուրդն ի դուռն խորանին վկայութեան. տեսանես, զի ոչ եթէ զխորանն կոչէ Եկեղեցի, յորում կայր արկղն կտակարանաց, և միւս խորանն, որ կոչէր Սրբութիւն սրբութեանց, այլ զհաւատացեալ ժողովուրդն աւետարանէ, վասն այսորիկ ևս առաւել բարձրագոյնս և առաքեալն Պօղոս նորագոյնս իմն և յաւէտ հրաշալիս. . . . քանզի ցուցանէ եկեղեցիս անդրանկաց գրելոց ոչ յերկրի՝ այլ յերկինս, որոց անուանքն գրեալ են ի դպրութիւն կենաց. վասն որոյ Փրկիչն Տէր ասաց խնդալ զառաքեալսն. թէ խնդացէք, զի անուանք ձեր գրեալ են ի դպրութիւն կենաց։

Տեսե՞ս զճշմարիտ հիմն Եկեղեցւոյ, զի ընդ ամենայն տիեզերս հաւատացեալք ի Քրիստոս՝ Առաքելական յորջորջին եկեղեցի, վասն Տէրունական հրամանին որ առ նոսա, թէ՝ Գնացէ՛ք ընդ ամենայն երկիր. աշակերտեցէք զամենայն հեթանոսս. մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. ուսուցէք նոցա պահել զամենայն զոր ինչ պատուիրեցի ձեզ։

Արդ թէպէտ և փոքր ի շատէ ասացաք յօրինակաց՝ որ բազմապատիկ կան ի գիրս սուրբս, վասն Եկեղեցւոյ սըրբոյ բաւական եղիցի, քանզի յայտնի եղև անքակ միութիւն, և ոչ երկպառակել, որպէս ոմանք կամեցան պատառումն առնել և կռիւս աղաղակի տխմարութեամբ իւրեանց. զի ի ճշմարիտ հօտէն Քրիստոսի, որ է Եկեղեցի Աստուծոյ, նա միայն է պատառեալ և անջատեալ, որ ի հերձուածս կործանի, և մեղաց լիցի պաշտօնեայ. զի մեղքն բաժանեն և օտարացուցանեն. բայց զայս ասելով մեր, զանբաժանելի միաւորութիւն եկեղեցւոյ յայտ արարաք, և թէ զի՞նչ է Եկեղեցի։ Այլ ոչ եթէ արհամարհել ուսուցանեմք զշինուածովք պատուեալ տեղիսն, որ անուանի Ժողովրդանոց. քանզի և ի նոսա ժողովին քահանայք և մանկունք ուխտի պաշտօնեայք կատարել զաղօթս և զխնդրուածս. վասն որոյ Աղօթարանք կոչին և սրբարանք. զի հաստատեալ կայ ի նոսա տէրունական սեղանն, յորոյ վերայ զհացն և զգինին պատարագեմք յօրինակ կենդանարար մարմնոյ և արեանն Քրիստոսի, որ միշտ անծախապէս բաշխի մեզ ի քաւութիւն մեղաց, և ի նոսա կայ ուղղեալ աւազանն մկրտութեան, որով լուսաւորեալք վերստին ծնանիմք Հոգւովն սրբով, և դրոշմիմք ի յոյսն կենաց յաւիտենականաց, և հանապազ անդր գումարելով լսեմք զսաղմոսերգութիւնս և զպատգամս պատուիրանացն Աստուծոյ. և վասն զի միշտ անդր ժողովիմք, և ապաւէն ապաստանի է մեզ զամենայն ասացեալսդ ի նմա կատարել, սովորութիւն եղև Եկեղեցի անուանել յարանուանաբար, այլ ոչ բնաւորաբար. և քանզի բազում այսպէս կան վկայարանք ուրուք յանուն, և սակայն ճանաչեմք թէ հոմանուն նոցա են շինեալքն, այլ ոչ թէ ինքեանք իսկ, յորոց անուն շինեցանն, և մի

պատիւ է ամենեցուն, վասն զի մի խորհուրդ կատարի. քանզի սեղանն ամենայն ուրեք Տէրունական ասի և պատարագն. բայց միայն տօնիւքն զանազանին. զի յիւրաքանչիւր տեղւոջ սովորութիւն է կատարել զկարգ տօնիցն:

Արդ արժանաւոր է և զառաջին ճառ բանին յիշատակել, թէ ո՞րպէս և կամ յի՞նչ պատճառ շինեցան վանք. քանզի յայսմ ոչ եթէ Հայոց միայն ազգ կալաւ փոյթ յանձին, այլ և Յոյնք, և Հոռոմք, և Ասորիք, և այլ ամենայն ազգք ի Քրիստոս հաւատացելոց:

Զոր և երիցս երանեալ քաջ նահատակն Քրիստոսի Գրիգորիոս *) կատարեաց շնորհեալ նմա ի Հոգւոյն սրբոյ զօգուտ մատակարարութեանն. քանզի բազում օգտից է առիթ և սէրն և ճշմարտութիւնն ուխտի մանկանց. զի փայփայէ և թեւակոխէ ի հրահանգս հոգեւորս, և զոր ամենեցուն քահանայից և ժողովրդականաց պարտ է յարգել և մեծարել զվարդապետս և միանգամայն իսկ զամենայն պաշտօնեայս ուխտի առանց տարակուսանաց, (որք**) անկեալ մտանեն յընդունելութիւն կամաւորական. վասն այնորիկ և դիպողագոյն եղաւ անուանքն, զի անտրտում, որոց պիտոյ իցեն՝ տացեն. և ոչ միայն առ օտարս է նոցա յաճախել, այլ և, առաւել գեղջն, յորում շինեցաւ, զի օրէն է նոցա սփոփել զհիւանդս և մխիթարել զսգաւորս. և զի՝ որ ամուսնութեանն են պարապեալ քահանայք՝ բազում անգամ պատաղին ի մը-

---

(*) Աստի երևի, թէ զայս սահմանադրութիւն սրբոյն Գրիգորի ընդարձակեալ է սուրբն Սահակ, այլ զվերնագիրն թողեալ անուամբ նորա:

(**) Փակագծով եղեալ բառքն պակասին ի բնագրին:

շակութիւն, և կանանց իւրեանց հնարեն լինել հաճոյ, որպէս Նաւաքէլական իսկ ճշմարտէ բանին : Իսկ ի վանեարն բնակեալք՝ կուսութեամբ են պարկեշտացեալք, միշտ մարտնչելով ընդ հուր ախտին, զոր բնութիւնն վառեալ բորբոքէ, և անյապաղ զպաշտամանն կատարեն կարգս, զխաղաղութիւն խնդրելով աշխարհի, և զգեղջն շինութիւն, և առողջութիւն ի տուընջեան և ի գիշերի բազում արթնութեամբ. վասն այնորիկ աղօտ յամենայն հարկապահանջ իշխանաց՝ սահման ընկալեալ և անդս, և զիւրեացգոյն պատիւ ժառանգեաց յուխտի սրբում եկեղեցւոյ :

Արդ ամենեցեան որք յանդգնեցան յիմարութեամբ և անզգամութեամբ իւրեանց այլ զոմն եկեղեցի առնել, և այլ զոմն վանս. քանզի յայտնի եղև ի (մի) միաւորութիւն անդամոց եկեղեցւոյ ի Քրիստոս հաւատացելոց, զի անդամք եմք միմեանց ի շինութիւն հաւատոյն սիրով. նոյնպէս և ժողովրդանոցք և մատրունք, զոր սովորութիւն եղև ի վաղնջուց կոչել եկեղեցի. Թէպէտ և բազումք են ըստ գիւղի՝ գիւղի՝ և քաղաքաց քաղաքաց, սակայն ոչ են բազումքն ի բազումս բաժանեալք, այլ ըստ աստիճանի իշխանութեան. և այսպէս յարմարեալ անյապաղ և բազում փութով պարտ է ի նմին մշտնջենաւորել : Քանզի ոչ եթէ ի մարդկային կարծեաց է ճառեցեալ սահմանադրութիւնս, այլ յԱստուածաշունչ գրոց երկրորդեցաւ ի մեզ բացորոշաբար, և որ հակառակ կայ, ոչ մարդկան՝ այլ Աստուծոյ հրամանին կայ հակառակ. և որք կամին կալ հակառակ, անձանց դատաստանս ընդունին :

Արդ պարտ և պատշաճ է մեզ զհաստուցմունս շնորհիցն սահմանադրելով (ակնարկէ ի հասս քահանայից, որ ի

սրբոյն Գրիգորէ կարգեալ Եզայն կոչի), հաստատել յայտարարութեամբ, թէ որպէս պարտ է հատուցանել ի վանս, և կամ ամուսնացելոց քահանայից,, :

ԳԼ. Բ.

«ԿԱՆՈՆՔ Ս. ԳՐԻԳՈՐԻ ՊԱՐԹԵՒԻ»:

‘‘ Եզն, որ մասնական է պատարագ, կէս կաշւոյն երթիցէ ի վանս և երկու մասունք ծրագուքն, իսկ ի քահանայիցն՝ բովանդակն. և ոչխարի մորթն և գմակն անդամովն, և ծրագուն և խախացոցն: Իսկ պանդուխտք որք ի տունս քահանայիցն են՝ և նոցին եղբարց նոյնպէս տացեն, և զամենայն պատարագս հասարակաց կերիցեն պաշտօնեայք և աղքատք բազում մեծարանօք և եղբարք հաւատացեալք. և զհաց տօնի նորեացն առ հասարակ կերիցեն ամենայն պաշտօնեայքն. նոյնպէս և զհաց ապաշխարողացն, զոր յաւուրս Պառաւանորդացն առնեն հանգիստ ի շաբաթու և ի կիւրակէի: Բայց պատարագք որ ի վանս կատարին երախայրիքն, եթէ անապատ իցէ գեղջն՝ անդր տայցեն. ապա թէ ոչ՝ ամուսնացելոց քահանայիցն տացեն. քանզի ոչ է օրէն ումեք զհաց տեառն ի յարկս իւրում թողուլ:

Իսկ ամուսնացելոց քահանայիցն եղիցին տօնք շաբաթն զատկի և զատիկն սուրբ և երկրորդ զատիկն. և յերրորդ զատկէն և ի վեր՝ կիւրակէ, այն ամենայն յիսներեկին և տօն սրբոյ Պենտակոստէին, յորում Հոգին սուրբ Առաքելոցն շնորհեաց լեզուս, և տօն սրբոյ Աստուածածնին և միշտ կուսին, և Վարդավառն, բայց ի մատաղինեացն, որ է կատարումն քառասնորդաց առաքելական տօնի, հաւատացելոց զատկի և պատուղ յամենայն արմտեաց քոռ քոռ.

և պատարագք որ մասնական են, կէս կաշւոյն և ծրագուին զերկուս մասունսն ի վանսն թողլով, լուցմանն և պաշտամանն, զմինն տարցեն զլուցման մասն. և որ ոչխար է, զմակն անդամովքն, և ծրագուն-և խախացոյն և մորթն, և զգեստտան տեկնաց միայն վախճանելոց: Նու տօն Բարեկենդանին և Սզոգոմեանն մեծ, որ թարգմանի բարեբանեալ օր, և թէ այլ տօն ոք կատարիցէ յանուն առաքելոց և մարգարէից, հասարակ եղիցի. զի այնպէս աներկեան և առանց հակառակութեան պաշտօնէիցն կացցեն դասք, գիտելով՝ որո՞ւմ շնորհի արժանաւորք եղեն. զի պարկեշտութեամբ և ուսումնասիրութեամբ վարժեսցին, և մի՛ եղիցին բանակռիւք, այլ սիրունք և արթունք և զուարթունք յամենայնի, զի բաւական լիցին խրատել զստահակս և զծուլացեալսն ի կարգս հաւատոց. քանզի այդ է գործ Վարդապետի և հոգևոր հովուի,,:

‘‘Այս Սահմանադրութիւն կարգաց գրեցաւ հրամանաւ երանելոյն Խաչակայ մեծ Հայրապետի Հայաստան աշխարհի, ընկալեալ ի քաջ նահատակէն ի Տեառնէ Գրիգորէ, թարգմանեցաւ միայն ի Յունէ ի Հայ: Արդ եթէ ոք անհնազանդեալ կանոնիս նորաձևել յանդգնեսցի զկարգեալ Սահմանադրութիւնս, մի՛ ընկալցի մասն և վիճակ ժառանգութեան յարքայութեանն Քրիստոսի Աստուծոյ. և որ ոք միաբանեալ կատարեսցէ, ընկալցի զօրհնութիւն ի Տեառնէ Աստուծոյ, հաղորդելով պարգևացն և անվախճան հանգստեանն և երջանկին Գրիգորի և Հօր մերոյ Խաչակայ և նոցին հետևեցելոցն ճշմարիտ ուղղափառութեան. որք ի մեծն և յերևելումն աւուրն են պսակելոց յամենաքաւական Աջոյ, անթարգմանելի պայծառութեամբ մշտնջենաւորեալք ի յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից,,:

## ԳԼ. Գ.

### Առաջին ժողով յԱշտիշատ (Թօփրագղալա) վասն բարեկարգելոյ զեկեղեցականս և զաշխարհականս :

(Ամք Տեառն 365)։ Սրբոյ և մեծին Ներսիսի ձեռնադրեալ ի Կեսարիա Քահանայապետ Հայոց ըստ խնդրանաց Արշակայ արքայի և նախարարացն, եկեալ ի Հայաստան՝ ընկալեալ եղև իբրև հրեշտակ Աստուծոյ. և ըստ հարցն իւրոց օրինակի պայծառացուցեալ զաշխարհս մեր ամենայն բարեվայելուչ կարգօք և ուղղութեամբ առ ի նոցանէ մնացելովքն, նորոգեաց յամենայնի և զուգեղ սահմանադրութիւնս նոցին. որոյ և ջանացեալ բառնալ ի միջոյ զպէս պէս անկարգութիւնս, որք յայնմ ժամանակի մտեալ էին յաշխարհս մեր, խորհրդով Արքային առնէ ժողով Եպիսկոպոսաց և աւագ իշխանաց յԱշտիշատ քաղաքի :

Այս հրամանաւ Թագաւորին արգել Ժողովոյն նզովիւք զիւրաքանչիւր անկարգութիւնս և ըստ այնց սահմանեաց :

Նախ՝ արգել որդւոց նախարարաց առնուլ ի կնութիւն զմերձաւոր ազգականս, որոց սովորութիւն էր յայնժամ վասն պահելոյ զսեպհական ազատութիւն ցեղի իւրեանց :

Երկրորդ՝ եբարձ զկոծ զոր առնէին սաստիկ ի վերայ մեռելոց պէս պէս ոճիրս և անկարգ գործս ըստ հեթանոսաց :

Երրորդ՝ յաղագս ուրկաց և բորոտից հրամայեաց շինել բնակութիւն ըստ իւրաքանչիւր գաւառաց ի բարեխառն վայրի. որոց ախտիցն փոխադրական գոլով, հալածէին ի քաղաքաց և գիւղից, և բնակելով յանմարդաբնակ տեղիս, սովամահ կորնչէին. նոյնպէս և վասն հի-

ւանդաց հիւանդանոցս. և վասն կաղաց և կուրաց՝ անկե-
լանոցս և զայլս այսպիսիս. և յաղագս ամենեցուն սոցա
կարգեաց հասս և տուրս ի գիւղից և ի քաղաքաց, կար-
գելով ի վերայ նոցա խնամատարս և սպասաւորս, յանձ-
նելով զամենեցուն զհոգսն ի Սարկաւագ իւր ի Խադ։

Չորրորդ՝ յաղագս որբ և այրի աղքատաց հրամայեաց
շինել որբանոցս և այրիանոցս, և կարգեաց նոցա առան-
ձին հասս, զի անխնամ մնալով նոցին՝ ոմանք ի գողու-
թիւն, և այլք յայլ և այլ անկարգութիւնս մտաբե-
րէին։

Հինգերորդ՝ յաղագս հիւրոց և օտարաց հրամայեաց
շինել հիւրանոցս յիւրաքանչիւր քաղաքի և ի գիւղ. և
կարգեաց ռոճիկս ի գիւղից և ի քաղաքաց. զի ոչ գտանե-
լով նոցին հիւրոցն և օտարաց ասպնջականութիւն յու-
մեքէ, մնային բացօթեայք և գործէին չարիս։

Վեցերորդ՝ հրամայեաց շինել զերկս դասս բնակու-
թեան յաղագս կրօնաւորաց, որք ի նմին ժամանակի առ
սրբոյն Ներսիսիւ դատարկաշրջիկ լինէին, և ոմանք նըս-
տէին ի տունս աշխարհականաց ի քաղաքի, և այլք բա-
զումք հանապազ բնակէին ի գիւղս իբրև ի վանս. որոց ա-
ղագաւ կառոյց եղբայրանոցս յանապատ տեղիս. իսկ վասն
առանձին ճգնողաց՝ միայնանոցս, և առանձնակեցաց՝
խրճիթս բազումս, կարգեալ յամենեսին ի սոսա կանո-
նըս։

Զայս ամենայն կանոնադրեալ սրբոյն Ներսիսի ժողո-
վով և հրովարտակաւ Արքային՝ կարգեաց ի վերայ կրօ-
նաստանաց տեսուչ և հայր՝ զՇաղիտա աշակերտ սրբոյն
Դանիէլի ծերոյն՝ և զԵփրեմ և զԵպիփան և զԳինդ
Աղկունի. և ըստ նոցին ընտրութեանց եդ Առաջնորդ յա-
մենայն վանօրայս։

Զ՚որոց ամենայնէ լիօրէն գրէ Խորենացին Մովսէս ի քսաներորդ գլուխ երկրորդ գրոց պատմագրութեան իւրոյ. զորոյ զբանսն ոչ կարեւոր համարիմք որպէս և զայլոց պատմագրաց ազգիս յետ նորա՝ յառաջ բերել յիւրաքանչիւրոցն Հայրապետաց ի գործս Ժողովոցն արարելոց ի նոցանէ, զի մի՛ ստուարասցի աշխատութիւն մեր այս՝ Պատմութիւն Ժողովոց Հայաստանեայց Եկեղեցւոյ, բայց եթէ ուրեք ուրեք առ հարկի սակաւիցիմք դնել զայնս, յորոց վերայ իցէ հիմնեալ գլուխ բանից մերոց։

Գ.Լ. Դ.

Երկրորդ Ժողովն է Վաղարշապատ կամ անկախութեան Կաթողիկոսաց մերոց՝ յԱթոռոյն Կեսարիոյ։

(Ամք Տեառն 366)։ Տեսեալ Արշակայ և նախարարացն և համօրէն Աւագանւոյն զբարեկարգութիւնսն Ներսիսի մեծի յեկեղեցիս Հայաստանեայց, և խնդացեալ ընդ այն, կամեցեալ ըստ օրինակի Աթոռոյն Երուսաղեմի և այլոց տեղեաց՝ պատուել և զԱթոռ սրբոյն Գրիգորի Պատրիարգական կոչմամբ, Ժողով մեծ գումարեցին Եպիսկոպոսաց աշխարհին Հայոց ի Վաղարշապատ, և կարգեցին զսուրբն Ներսէս Կաթողիկոս՝ և Պատրիարգ յԱթոռ սրբոյն Գրիգորի. յորմէ հետէ և Հայրապետք Հայոց ոչ ևս յաւելին առնուլ ձեռնադրութիւն Կաթողիկոսութեան ի Կեսարիոյ, այլ յԵպիսկոպոսաց Ազգիս մերոյ, ըստ վկայութեան Յովհաննու Կաթողիկոսի պատմաբանի ի տասներորդ դպրու, զորմէ ոչ ինչ յիշատակութիւն առնէ Խորենացին, որ զառ ի Ներսիսէ զբարեկարգութեանցն լիօրէն գրէ։ Այլ պատմաբանն Յովհաննէս Կաթողիկոս յիշելով զվեց պատրիարգական Աթոռս ցայն վայր ի վերայ աշխարհի, ասէ։

«Ըստ սմին սակի և մերն Թագաւոր Արշակ և Նախարարք Հայոց համարձակութիւն առեալ, կացուցին ի պատրիարգութիւն Տանս Թորգոմայ զմեծն Ներսէս, փաստս իրաւախոհս ըստ արժանին ի մէջ առեալ զսուրբ Առաքեալսն մեր զԲարդուղիմէոս և զԹադդէոս, որք Աստուածազեանս ազգին վիճակեցան ի Տեառնէ քարոզք և Լուսաւորիչք»:

Յայսմ ժողովի սահմանեցին, զի յայնմ հետէ Կաթողիկոսք Հայոց յիւրեանց Եպիսկոպոսաց առնուցուն ըզձեռնադրութիւն, որպէս և արարին ընդ յաջորդաւ մեծին Ներսիսի՝ Շահակաւ. զորմէ նոյն պատմաբանն վըկայէ Յովհաննէս, թէ «Ոչ ևս ըստ սովորութեանն առաջնոյ առաքեալ զնա ի Կեսարիա, այլ լքեալ ի բաց զօրէնն՝ առաջին ըստ օրինի Պատրիարգաց կալան կարգ ժողովով Եպիսկոպոսաց ձեռնադրել»:

Ըստ որոյ երևի զի թէև Լուսաւորիչն մեր ընկալեալ էր զձեռնադրութիւն ի Ղևոնդեայ, այլ դիպող ժամու. Միայն լքանել զպայման ուխտին եդելոյ ի նոյն Ղևոնդեայ առ Տրդատաւ՝ ընդ որդւոյ Լուսաւորչին. զոր գրէ Ագաթանգեղոս ըստ այսմ. «Հաստատեալ կայցէ, ասէ, վկայութիւն ի մէջ երկոցունց կողմանցս, զի պարգևաբաշխութիւն նորոգեալ Քահանայապետութեանդ ձերոյ նահանգի՝ առ ի մէնջ կայցէ անշարժ յիկեղեցուոջս Կեսարու. ուստի և հանգերձեցաւ ձեզ պատրաստութիւն շինութեան՝ ձեռնադրութեանդ»: Թող զի ինքն իսկ սուրբ Լուսաւորիչն Գրիգոր՝ որ զձեռնադրութիւնն իւր ընկալեալ էր ի Կեսարիա, անդ զառաջինն Փոխանորդ եդ ձեռնադրեաց զորդի իւր զսուրբն Արիստակէս ի Կաթողիկոսութիւն ամենայն Հայոց ըստ Ագաթանգեղեայ վկայութեանն. «Ձեռնադրեաց, ասէ, (զԱրիստակէս)

յԵպիսկոպոսութիւն փոխանակ իւր . . . և յետ նորա կալաւ զաթոռ հայրենեացն, և անդէն նստաւ յԱթոռ Կաթողիկոսութեան Հայոց Մեծաց ,,։

Ուստի ի սմին Ժողովի հաստատեցին, զի և Կաթողիկոսն Հայաստանեայց Աթոռոյ անկախ յԵկեղեցւոյն Կեսարիոյ ըստ այլ Պատրիարգական աթոռոց՝ ունիցի իրաւունս ձեռնադրել ի ձեռն իւրոց Եպիսկոպոսաց հանդիսացուցեալ անուամբ և պատուով զիշխանութիւն Եպիսկոպոսապետութեան և պատրիարգութեան, որպէս առաջին յետ նորա ընդ Շահակ և ընդ ամենայն յաջորդս Կաթողիկոսս ։

## ԳԼ. Ե.

### Երրորդ ժողով ի Վաղարշապատ յաղագս գիւտի Հայկական գրոյ ։

(Ամք Տեառն 402)։ Ժողովն յաղագս գիւտի Հայկական գրոյ լինի ի Վաղարշապատ՝ հրամանաւ Վռամշապհոյ արքայի յամի Տեառն 402, ի խնդրոյ սրբոյն Սահակայ և Մեսրովբայ. զի Մեսրովբ որ էր ի Գողթն գաւառի, եկեալ առ սուրբն Սահակ յԱթոռն Հայրապետական ի Վաղարշապատ, և վերստին խորհուրդ արարեալ ընդ նմա յաղագս հնարելոյ զգիր Հայկական լեզուի, յորդորեաց զնա գումարել Ժողով առ այս, իբր զի հարկաւորութիւն մեծ էր առ նոսա տեսանել յայնմ ժամանակի. զի սուրբն Մեսրովբ ի քարոզութեան իւրում ի հինգերորդում ամի Վռամշապհոյ՝ հրամանաւ սրբոյ Կաթուղիկոսին ի տեղիս տեղիս, ի գեօղս և ի քաղաքս՝ հանապազ ընթեռնոյր ժողովրդոց զԱստուածաշունչ գիրս

ի հարազատ կանոնաց սրբոյ Լուսաւորչին. զորմէ գրեցաք յԱռաջին Ժողովն Վաղարշապատայ ։

Ի ձեռագիր կանոնագիրս մեր գրեալս ընդ զանազան ժամանակս՝ ուրեք ուրեք գլխակարգութեամբ դնին կանոնքն յանուն սրբոյն Սահակայ Պարթևի, մանաւանդ յընդարձակս, յորոց որպէս երևի, համառօտեալ է և Հայր Միքայէլ Չամչեան յիւրում պատմագրութեանն, գլխակարգեալ ի կանոնական թղթոց նորին Սահակայ. այլ ի մերում կանոնագրի ճառօրէն եդեալ գոլով Ընդհանրական Թուղթ ասացեալն նորին գրելոյ համաձայնութեամբ Ժողովոյն, նոյն և մեք յառաջ բերեմք աստէն. զի և կարևորն մեզ՝ այն է ։

“Տեառն Սահակայ Կաթողիկոսի սահման Վարդապետութեան՝ թէ որպէս պարտ է Եպիսկոպոսին խնամել զընտանիս տանն Եկեղեցւոյ” ։

“Այցելու հասարակաց հայր վիճակին այս (է) Եպիսկոպոսն. վասն այնորիկ իսկ առանց ակնառութեան պարտ է խնամել զհաւատացեալ նմա յԱստուծոյ զհօտն, և անաչառութեամբ յանձանձել զուխտս սրբոյ Եկեղեցւոյ, տեսուչս և առաջնորդս գաւառաց և գիւղից կացուցանելով, որք անուանին Քորեպիսկոպոսք. զի սրբոց Նախանձաւորաց օրինաց և հմուտ եղելոց Վարդապետաց՝ արժանաւոր է տալ զայնպիսի պատիւս, որք զժողովուրդն բաւական լինին խրատել, շահելով զմեղանչականութեամբն մոլորեալս, և պայծառացուցանելով զճշմարիտսն ճառագայթաւէտ պատուիրանացն պատմութեամբք, զի և Քահանայք առանց տարակուսանաց ուսանիցին մեծարել զԱստուածընկալ սեղանն, յորոյ վերայ կատարի կենդանա-

բար Խորհուրդն ապրեցուցչին մերոյ Տեառն և փրկական, աւազանն մկրտութեան, որոյ ծննդեամբ վերստին նորոգիմք ի յոյս կոչմանն Աստուծոյ,,։

“Արդ մի՛ ոք զայսպիսի տեսչութիւնս՝ զինուորաց կամ ազխտաց հաւատասցէ. և մի՛ մերձաւորաց իւրոց՝ շնորհուկս ինչ նոցա պռնելով սիրով գեղձմամբ. յորմէ կանխաւ հրաժարեցոյց Փրկիչն մեր և Տէր “Ո՞վ է իմ, ասէ, մայր կամ եղբայր, եթէ ոչ՝ սիրողն պատուիրանացն Աստուծոյ.,, զոր և արդեամբք իսկ կատարեաց մեզ օրինադրելով. քանզի Յակոբոս և Յուդաս և Յովսէս եղբարք յորջորջէին. և Պետրոս և Յովհաննէս և այլ բազմութիւն աշակերտացն յոլով ժամանակս կատարեցին սպասահարկութիւնս, և վիշտս և նեղութիւնս կրեցին զուն գործելով ոգւով չափ. և անօթ ընտրութեան ոչ զոք ի նոցանէ անուանեաց. իսկ Պօղոս որ հալածիչ և թշնամանող զինքն խոստովանէր, անօթ ընտրութեան է ինձ նա՝ կրել զանուն իմ առաջի հեթանոսաց և թագաւորացն Իսրայէլի,,։

“Տեսանե՞ս, զի ոչ է ակնառութիւն առաջի Աստուծոյ. եթէ աչառիցէք, ասէ, մեղս գործիցէք. արդ եթէ ոչ վարիցի այսպիսի առաքինութեամբ Եպիսկոպոսն, ոչ կարէ աշակերտ լինել Տեառն. այլ յոյժ հեռի և օտար է, որպէս զմի ոք ի ստուգանողացն։ Փրկիչն զպատուիրանացն սիրողս և կատարողս սահմանեաց իւր եղբայրս. և թէ՝ Որ սիրէ զհայր կամ զմայր, զուստերս և զդստերս առաւել քան զիս՝ չէ ինձ արժանի. և դուք ընդ բարձրանալ հրամանացն՝ վեր ի վայր կործանեալք ընդ երկիր, փարիք զտոհմայինն ազգականօք, պէս պէս հնարելով հրնարս, զի զիրգ և փափուկ առնիցէք, և աւելաստացուածութեամբքն զեղուցուք զտունսն, մոռանալով զպատ-

զանս ինքնասած Աւետարանի. թէ «Ամենայն տունկ զոր ոչ տնկեաց Հայրն իմ երկնաւոր՝ խլեսցի»։

«Տեսանէ՞ք, զի զոր յոլով ժամանակօքն տաժանիք և ջանայք արմատացուցանել, զկիրս աւուրցն կազմէք որոգայթ սատակման. ըստ այնմ եթէ, «Որ ամբարէ զմեծութիւն առանց իրաւանց, ի կէս աւուրց իւրոց լքցէ զնա»։

«Զայս ոչ եթէ յաղագս յամօթ ինչ առնելոյ զոք ասեմք, ի խոր խոցելով յանդիմանութեամբ, այլ զի ամենեքին մի երևեսցի յԵկեղեցւոջ այսպիսի անօրէն սովորութիւն. քանզի արմատ է ընդհանուր չարեաց և պէս պէս ազգապիղծ անառակութեանց, վասն որոյ գայ բարկութիւնն Աստուծոյ. այլ որպէս վերագոյնն ասացաք, եթէ հասարակաց հայր է եպիսկոպոսն, և ըստ լաւութեան և ըստ յաջողութեան պայրոյի փայփայել, և յառաջեցուցանել զնմանիսն, և յանձն առնել զգործ Եկեղեցւոյն կանոնիս կարգաց, ուստի այլանդակ անառակութիւնքն և հերձուածք խափանիցին, և վարք աստուածահաճոյ կենաց հանդերձ բարեպաշտութեամբ պտղալից զարգարին. բայց գիտեմք, զի ոմանք ըմբոստացեալ ծուռմաքանեն, մանաւանդ ազգասէրք ծնկոտք՝ զմարգարէին ի կիր առնլով ըզբան. գրեալ է, ասեն, թէ՝ յընտանեաց զաւակի քո զակն մի՛ արկանիցես, և զայն ո՛չ իմանան՝ եթէ զընտանիս ըզմիաբանութիւն հաւատոցն կոչէ. վասն որոյ բարձրաբարբառ փողն Եկեղեցւոյ ճշդիւ մեկնելով կոչէ. և զի՞նչ ասիցէ. Եթէ հնար է, ասէ, ընդ ամենայն մարդկան զխաղաղութիւն կալջիք, մանաւանդ առ ընտանիսն հաւատոյ. այս է պատճառ ընտանեացն խնամածութեան. բայց թէ և գետնաքարշ ոք և մոմոշ իցէ, և ի պատճառս բարեպաշտութեան կեղծաւորեսցի սիրել և հաստատացուցանել զազգայինսն իւր, լուիցէ միւս ևս բանիցն, որ մեղմով

խրատէ. թէ՝ Մի՛ գիտասցէ ձախ քո, զի՛նչ գործեաց աջ քո։ Նա մի՛ որ իշխեսցէ անամօթ համարձակութեամբ զշարդ զայդ տանել պատճառաւ բարեգործութեան. զի չար է կամակոր լրբութիւն քան զմեղանչելն. քանզի եղբայրասպանս կոչէին. և Գէեզի որ զատն ագահութեամբն էր զբաղեալ, քան ընդ մեղացն՝ Եւս առաւել վասն անամօթ լրբութեանն կրեաց պատիժս պատուհասից,,։

“Արդ զգուշութեամբ պահեսցի ի միջի մերում սահմանս այս կանոնական. և մի՛ որ խոտորեսցի յաստուածահաստ հրամանացս այսոցիկ, որովք պայծառանան Եկեղեցիք, բերկրին Քահանայք, զուարթութիւն համբուրեն իշխանք և գեղջուկք, երանութիւն և բան զլուսատեաց ընդունիցիմք. քանզի պարտ է մեզ ըստ գրեցելոյն՝ վկայութիւն բարի և յարտաքնոցն ընդունել, զի մի՛ անունն Աստուծոյ և վարդապետութիւնն հայհոյեսցի, որպէս երբեմն բողոքէր մարգարէն պարտաւորելով զԻսրայէլացիսն, թէ անունն Աստուծոյ վասն ձեր հայհոյի ի մէջ հեթանոսաց. իսկ վասն բարւոք կարգաց և գործոց մերոց փառաւորեսցեն զՀայր մեր որ յերկինս է, ասելով, թէ՝ Ահա են զաւակք օրհնեալք յԱստուծոյ, և ուրախութեամբ ուրախասցին ի Տէր. հրեշտակականաւն վարուց և զուարթնական կենացն նմանութիւն *). ո՛չ կաշառք և ոչ ընչից մեծարանք, այլ պարկեշտութիւն և պատուիրանապահութիւն մերձեցուցանէ լինել քաղաքակից սրբոց և ընտանի Աստուծոյ, և զուք յընչասիրութեան և ի կաշառս կործանիք, և ըզգարշելիսն և զպատուիրանազանցս, և զզինուորս և ըզ-

(*) Յօրինակին այսպէս պակասէր բայն՝ գուցէ՛ բերել։

տգէտս հաւատարիմս համարիք ի գործ սպասաւորութեան Եկեղեցւոյ, և ջոլիրս ևս յաճախեալ տողէք զկնի ձեր զմերձաւորացն անուանելոցն. զի հովուութեամբ ձերով այդուիկ զմիս ընտրոց ուտիցէք և զոտս նոցա փշրեցէք, Կերիցուք արբցուք, ասելով, քանզի վաղիւն մեռանիմք,,։

‘‘Երդ եթէ յԵպիսկոպոսս կամ յԱռաջնորդս Եկեղեցւոյ գտցի որ յայսպիսի պատուիրանազանցութիւն, . . . ի բաց ընկեսցի ի պատուէն իւրմէ, և բաժին նորա ընդ կեղծաւորս եղիցի. զի Մարդ ի պատուի էր, և ո՛չ իմացաւ. զի և այլքն երկիցեն. և պաշտօն հարկիս այսորիկ մի՛ եղիցի դատապարտութեամբ, այլ փառօք. ապա եթէ ոք յիշխանակցաց կամ յաթոռակցաց իւրոց աչառիցի այնպիսեաց, դատեսցին առաջի Աստուծոյ ընդ այնոցիկ, որք աչառեցան շնորհուկս առնելով՝ Աննա և Կայիափայ քահանայապետից աստուածամարտ ուրացողաց և պարտականաց Տէրունական արեանն, որք տալոց-են պատիժս յանսպառ յաւիտեանսն,,։

‘‘Այլ մեզ եղիցի անբիծ սահմանաւ պատուիրանացս վարել զկեանս մեր պանդխտութեանս, զի յամենայնի հաճոյ լինելով Աստուծոյ, խոստացելոց բարութեանցն արժանի լիցուք շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ տացուք գոհութիւն և փառս յաւիտեանս յաւիտենից, ամէն,,։

———

Նորին Թէ ո՞րպէս պարտ է Եպիսկոպոսաց զգուշութեամբ պահել զգանձս սրբոյ Եկեղեցւոյ, և կամ որո՞ց և ո՞րպէս մատակարարել:

‘‘Նաւահանգիստ է ամենեցուն տաճարն աղօթից և տեղի խնդրուածոց մերոց, զոր յարանուանաբար Եկեղեցի սովոր եմք կոչել, ունելով յինքեան նաւապետ կարապետութեան զտեսուչ Եպիսկոպոսն, զի խնամոտ և արդիւնարար կամօք անշարժ ունիցի զսահման իւրոյ կարգին. վասն այնորիկ առհասարակ ի Քրիստոս հաւատացեալք ապաւէն ապաստանի ունին զսուրբ Եկեղեցի. զի արդարոց և մեղաւորաց է նաւահանգիստ և տեղի յուսոյ փրկութեան մերոյ. և իւրաքանչիւր ոք փութայ սրտիւ յօժարութեամբ զուխտս և զպատարագս և զընծայս իւր մատուցանել. իշխանք զգեօղս և զդաստակերտս և զգանձս ոսկւոյ և արծաթոյ. այլք յանդաստանաց և ի պաճարաց և ի հանդերձից պատուականաց. ոմանք վասն անձանց փրկութեան. կէսք յաղագս սիրելեաց և ծնողաց. և զվախճանելոյն հատուցանել մասունս, զարդ և պայծառութիւն կազմելով ոգւոց և մարմնոց. քանզի անսայթաք յորդորմամբ *). քանզի Տէրունական բանն զգուշացուցանէ ծառայից և պատուիրանապահաց իւրոց թէ՝ ‘‘Գանձեցէք ձեզ գանձս յերկինս, ուր ո՛չ ցեց և ո՛չ ուտիչ ապականեն և ո՛չ գողք ական հատանեն և գողանան ,, : Եւ թէ՝ ‘‘Դատարկաձեռն ամենևիմբ մի՛ երևեսցիս առաջի իմ ,, : ‘‘Չեն այդրէն, ասէ, յերկրի նուիրական տուրքդ ձեր, այլ ի կառս բարձրութեան երկնից, յանսխալ և անվրէպ գանձարանին ,, :

(*) Քանզի անսայթաք յորդորմամբ՝ Թերութիւն գոյ ի սմին, ուստի և միջանկեալ:

«Տեսանեմ զի Աստուծոյ են ինչքն, քանզի իւր համարի զաւուրսն մեր և ոչ մարդոյ ուրուք. բայց միայն զի պահապան և վերակացու է, տեսուչ է Եպիսկոպոսն. բազում ապա զգուշութեան պէտք են Եպիսկոպոսին և երկիւղի. զի եթէ որք զմարդկան աւանդութիւն կամ պարտս հոգան և աշխատութիւն կրեն ըղձալով թէ՝ երբ վճարիցեն, և եթէ դէպ լինիցի փոքր մի ինչ ծախել, գիր առնեն և վկայս անցուցանեն և երդնուն, զի մի՛ երևեսցին թերիք և դաւողք ի գործն իւրեանց. իսկ Աստուած որ քննիչ է խորհրդոց մերոց և չի՛ք ինչ արարած նմա աներևոյթ, այլ ամենայն մերկապարանոց կայ առաջի աչաց նորա, . . . զի՞նչ պատճառս կամ հնարս հնարի Եպիսկոպոսն, յորժամ զաւանդն արքունի զգուշութեամբ ոչ պահիցէ, և ծախիցէ այնոցիկ՝ որոց ոչ իցէ օրէն: Այսպիսի ինչ յորժամ աւելի զգեստիւք զինքն պճնիցէ, և փնրևեթիցի սնգութեան և փափկութեան պարապելով, և ազգականացն զեղուցու տայցէ, և զկատակսն պարարիցէ, և զօրէն իշխանաց բարեկամս աննմանս յաճախիցէ, և շնորհուկս առնելով ճոխաց և մեծատանց տացէ, այս է չարաչարն վատնել զարքունիսն, և պատժոց լինել արժանի: Առաքելական պատուոյ եղեր ժառանգորդ, պարտիս և վարուց նոցա նմանել, որպէս գիրք գործոց նոցա վկայեն. բաշխէին ամենեցուն, ում զիարդ պիտոյ ինչ լինէր. զի զանձն աստուածային, որում տեսուչ և մատակարարդ կարգեցար, նեղելոց և որբոց և այրեաց տուաւ յապաւինութիւն, և եթէ միանգամայն ինչ աշխարհի վըտանգ հասանիցէ: Բայց յայլ ինչ ամենևին չէ իշխանութիւն ծախել, զի յաղագս հոգւոյ փրկութեան տուան զանձքն. արդ եթէ ոք յայլ ինչ ծախեսցէ, ընդ սեղանակապուտսն տացէ դատ յաւուրն դատաստանի, և պա-

տիւն բարձցի ի նմանէ. զի թէ ժամանակաւոր թագաւո-
րի գործակալք յանիրաւ իւրս ծախելով զարքունիսն, պա-
տիժս կրեսցեն և ի պատուոյն ի բաց անկանին, ո՞րչափ ևս
առաւել որ զԱստուածայինսն վատնիցեն յանուղղայս,
կրեսցեն պատիժս աստ և ի հանդերձելումն. և թէ ոք
աշխատիցի այնպիսեացն թողուլ տալով, կցորդ եղիցի չարեաց
գործոց նոցա ,,:

‘‘Նայեաց և դու, ով մտացի հաւատացեալդ, որ յաղագս ի
մեղաց քոց փրկութեան և ախտից զտուրս քո տաս, զի ի
բաց ընկեսցես զծանրութիւն մեղաց քոց և զայլոց բազ-
մացն այնպէս զիտես, ընդէ՞ր աճապարես զընկեցեալդ տա-
ղտկալի բեռինն այդրէն առնուլ. վասն որոյ մարգարէն
ասէ յայտ թէ՝ Որպէս բեռն ծանր ծանրացաւ ի վերայ իմ.
և երանի եթէ զքոյն իսկ զբեռն առնուիր, և ոչ զայլոցն.
զի որչափ զառնուլն յաճախես քան զտալն, զմեղացն քոց
սաստկացուցանես զբեռինն. զի և զայլոցն ևս որ ընկե-
ցեալն է ի վերայ քո, մթերես յօրէնսն և զընկերին զգը-
րաստ անկեալ ընդ բեռամբք՝ չհրամայէ առնել անտես. Յա-
րուցանելով յարուսցես, ասէ, և դու զա՞նձն գլորես
անկանգնելի խորտակմամբ: Եւ եթէ զայլ ոք տեսանէիր
անկեալ և բեկեալ, թերևս ողորմէիր, և զքեզ անտե՞ս
առնես. յափշտակես, զլանաս զորբոցն և զայրեացն վար-
ձըս, կողոպտես զսեղանն, և զարշի՞լ պատճառես ի մե-
հենացն ,,:

‘‘Արդ քեզէն տուր զիրաւդ. ո՞չ ապաքէն մինչ տաս ըզ-
տուրսն ի տունն Աստուծոյ, զծանրութիւն մեղացն ընդ
նմին հաւատաս ի բաց ընկենուլ, և յուսաս յաւիտենա-
կան պարգևացն լինել արժանի. ապա ուրեմն և առնուլն
հակառակ՝ զնոյին զմեղացն զբեռինն այդրէն ի քեզ
կուտէ, և մշտնջենաւոր տանջանացն լինի առիթ. զի՞նչ

օգտիցէ այնպիսի շնորհ՝ որ զանձն տուժէ և կորուսանէ, և ոչ գտանէ փրկանս անձին իւրոյ ,, ։

‘‘Լո՛ւր աստուածային գրոցն և ուսի՛ր բարեմտութեամբ, որոց վայելէ հրամայէ այնու ընչիւք. Սեղանոյն պաշտօնեայքն, ասէ, ի սեղանոյ անտի կերակրին. և զի՞նչ է կերակուրն, յայտ առնէ։ Զմեղս ժողովրդեան իմոյ, ասէ, կերիցեն. վասն այնորիկ իսկ ազդէ պատրաստ կալ, թէ՝ Արի՛ք մինչ չև էք ննջեցեալք, ոյք ուտէք զհաց ցաւոց։ Տեսանե՞ս զզօրութիւն կերակրոցն. քանզի և այլուր յայտնագոյն զգուշացուցանէ քեզ զպատուեր հրամանն տալով, թէ՝ Հպատակ կացէք նոցա, զի նոքա տքնին վասն ոգւոց ձերոց, որպէս թէ համարս տալոց են ընդ ձեր ,, ։

‘‘Արդ ընդէ՞ր զայնպիսի ծանրութիւն ձգես ի քեզ և զտոյժս անհնարինս, որ զկէս գիշերն թերևս արբեցութեան պարապիցես. թողում ասել զայլն, եւս և յոր-սայս անկեալ պարպատիցեն ընդերքդ՝ թաւալովք և թառանչելովք, և ի պղտորութենէ որովայնին յորձանաց և սաստիկ գոլորշեացն, որ և զձայնն անգամ լսել պաշտաման դժուարանայցես, թող թէ հսկել և տքնութեան պարապել ,, ։

‘‘Արդ որպէս հեռի ես ի վաստակոցն աշխատութենէ, հեռանալ պարտիս և ի վարձուցն յափշտակութենէ, և քոյովք շատանալ. դու աւադիկ զանց արարեր զճառեցելովքդ որբոցն և այրեաց և տնանկաց, և որ ոք այլ կամիս տալ զկնի քո. քանզի և յաղագս նոցա ապաւինութեան է զանձն աստուածային, որպէս վերագոյնն ասացաք. զի և նոքա մասնաւորք են, զորբս և զայրիս ընդունի Տէր։ Նու թէ՝ Աչք նորա ի տնանկս հային։ Կարդացին, ասէ, առ իս, և ես լուայց նոցա ,, ։

‘‘Երդ ընդէ՞ր զնոսա կացուցանես քեզ ոսոխս և չամաչես. զմու րոյ հացին թէ ունէր առաջի քո, գարշէիր թերևս և անարգանս համարէիր զառնուլն, և զինչսն անխղճաբար կորզել, և ոչ կասկածես, եթէ հաւասար է այնմ մուրոյ. նոքա կողկողին զառաւապանսն և զնեղութիւնս և զվիշտս իւրեանց պատմելով, մինչև ցամաքին լեզուքն ի բերանս և փտանգին. զվէրս և զխեղութիւն մարմնոցն մերկացեալ ցուցանեն, երիթացեալք, բրդգզեալք, դողան, սառսռին՝ զի գէթ հուն այնպէս ինչ գտանել կարասցեն ծածկոյթ առնել առականացն իւրեանց։ Եւ դու անիրաւ և դլուագեալ բանիւք զնոցայն շոպելով, ի մոռացօնսն կամիս դարձուցանել. զի փութաս այրի առնել զկին քո և որբ՝ զորդիսն, մուրող և թափառական, զի կողկողին առ դրունս վատթարաց. և ապա յիշեցէք զբանն Տեառն Յիսուսի թէ՝ երանելի է տալն մանաւանդ քան զառնուլն,,։

‘‘Վ՛ասն որոյ աղաչեմ և վկայութիւն դնեմ ձեզ առաջի Աստուծոյ և Յիսուսի Քրիստոսի, որ դատելոցն է զկենդանիս և զմեռեալս ի յայտնութեան իւրում և յարքայութեան, զի մի՛ ումեք եղիցի թերի գտանիլ ի մասինս յայսմիկ, զոր պատուէր տալով ուսուցաք զօգուտըն և զպայծառութիւն հոգւոց և մարմնոց. և զի՞նչ օգուտ մեծագոյն քան զայն կայցէ, կամ զուարճացուցանող խնդութիւն, յորժամ Եպիսկոպոսն ըստ Աստուծոյ հաճոյից խնամ տանի Եկեղեցւոյն, և դասք պաշտօնէից զովութեամբ յորդորեալ զՍաղմոսն գեղգեղելով հընչեցուցանիցեն, և այլքն առ հասարակ գումարեալք՝ փառըս տացեն ամենայաղթ Տէրութեանն. որբք և այրիք յանձանձեալք՝ այնպիսի կարգաւ բաւական լինին բանալ զողորմութեան դրունսն. երկինք ամբարական լինելով

ցողոյ, երկիր ցորենւոյ, գինւոյ և իւղոյ, պտղաբերանոց դա-լարազարդութեամբ և բոլորովիմբ իսկ ըղձալի կենաց իշ-խանաց և Թագաւորաց ։ ,,

Արտաքոյ այսոցիկ երկուց կանոնական ընդհանրական ասացեալ Թղթոց սրբոյն Սահակայ գտանին յընդարձակ Կանոնագիրս և այլ կանոնք գլխակարգութեամբ յանուն նորա, զորոց զհամառօտն յառաջ բերէ Չամչեան օրի-նակ զայս ։

Վասն Եպիսկոպոսաց և Քորեպիսկոպոսաց։

ա. Իմաստունք և եթ ձեռնադրեսցին Քորեպիսկոպոսք ։

բ. Քորեպիսկոպոսք ուշ դիցեն, զի սուրբ սեղանն խորհրդոյ զարդարեալ պահեսցի. և անպակաս լիցի ա-ռաջի նորա լոյս ճրագի ։

գ. Մերձ սեղանոյն կամ յաւանդատան լիցի մկրտա-տուն, յորում լիցէ աւազան մկրտութեան ։

դ. Կարգեալ սաղմոսերգութիւնք անխափան կատա-րեսցին յԵկեղեցւոջ ։

ե. Յամենայն ժամ հսկեսցեն ի վերայ պաշտամանց Եկեղեցւոյ, և յամենայն տարւոջ շրջեսցին ի թեմս իւրեանց տեսանել, թէ որպէս կատարին ժամերգութիւնք յեկեղեցիս, և ուղղեսցեն ։

զ. Եթէ տեսցեն զոք յերիցանց կամ ի կղերիկոսաց յու-լացեալ ի պաշտամունս Եկեղեցւոյ, պատուհասեսցեն ։

է. Եթէ գտցեն յեկեղեցականս զարբեցող ոք, կամ անառակ և կամ պղերգ, որոշեսցեն ի կարգէ պաշտօնէից ։

ը. Զգուշասցին զի պոռնկորդիք և երկկինք մի՛ եղիցին յաստիճան կղերիկոսութեան ։

թ. Մի՛ իշխեսցեն կեղեքել զժողովուրդս ։

Ժ. Համեստ գնացիւք վարս ուղիղս յանձին ունիցին յօրինակ այնոցիկ՝ որ ընդ ձեռամբ նոցա իցեն ։

## Վասն Քահանայից։

ա. Քահանայք մի՛ լիցին ագէտք կամ ցոփք ։

բ. Քահանայք փոյթ տարցեն տալ ուսուցանել զմանկունս իւրեանց ։

գ. Գլխաւոր քահանայն միշտ կացցէ յեկեղեցւոջ, իսկ այլք շաբաթ առ շաբաթ փոխանակաւ ։

դ. Ի մկրտել քահանային՝ մի՛ սպասաւորեսցէ քահանային կին ոք ։

ե. Ի լինել քահանայի՝ սարկաւագունք մի՛ մկրտեսցեն։

զ. Պատարագիչ քահանայն կացցէ յեկեղեցւոջ ի տան գլխաւոր քահանային։

է. Գլխաւոր քահանայն կրկին առցէ յեկեղեցական հասից ։

ը. Յամենայն ամի յետ զատկին առցեն քահանայք զիւղ Մեռոնի ի Մեծ Հայրապետէն (այս ինքն յԸնդհանրական Կաթուղիկոսէն)։

թ. Զվարագոյր սեղանոյն մի՛ յանդգնեսցեն տալ քահանայք յառագաստ հարսանեաց, և մի՛ զսկիհս յանօթ ըմպելոյ. և որ զայս արասցէ, լուծցի յամենայն կարգէ ։

Ժ. Քահանայք մի՛ իշխեսցեն գործակալութիւնս առնել ի տունս աշխարհականաց ։

ԺԱ. Գերեզմանք քահանայից լիցին առ հանգստարանի ժողովրդականաց. և մի՛ վասն պատուոյ ի մէջ եկեղեցւոյ ի տեղիս սրբութեան ։

ԺԲ. Քահանայք մի՛ տարցեն զսրբութիւնն ի տունս աշխարհականաց, և անդ տացեն նոցա, բայց եթէ վասն հիւանդաց։

ժգ. Ուսուսցեն զժողովրդականս զգուշանալ ի չարէ. և զանուղղայն պատուհասեսցեն :

ժդ. Զտղայս մի՛ պսակեսցեն :

ժե. Սոյնպէս և զչափահասս, եթէ չիցեն հաւանեալ ընդ միմեանս :

ժզ. Քննեսցեն զգուշութեամբ՝ զի մի՛ խարդախութիւն ինչ լիցի, կամ բռնութիւն ծնողաց ի պսակիլ որդւոց նոցա:

ժէ. Միաբան կատարեսցեն զպաշտօնն:

ժը. Եթէ գիտասցեն, թէ ոք կերեալ ինչ իցէ ի տան և կամեսցի հաղորդիլ՝ մի՛ հաղորդեսցեն զնա :

ժթ. Զտուրս նուիրաց ընծայեալս քահանայից յԵկեղեցւոջ՝ աշխարհականք մի՛ իշխեսցեն բաժանել յիւրեանս :

ի. Զհասս Եկեղեցւոյ՝ զորս ըստ սահմանադրութեան նախնեաց սովոր են աշխարհականք տալ քահանայից, մի՛ ծախեսցեն ընդվայր :

իա. Մի՛ թոյլ տացեն քահանայք գինեըբուս առնել ի սուգս մեռելոց, և կամ կոծ դնել և աշխար առնել :

իբ. Քահանայք զյանցուցեալսն ի ժողովրդենէ իւրեանց մի՛ առանց քննութեան մերժեսցեն ի բաց, և մի՛ պատուհասեսցեն զժողովուրդս այլոյ քահանայի :

իգ. Կրօնաւորք և վանականք մի՛ խառնեսցին յիրս աշխարհականաց, այլ յամենայնի հրաժարական կեանս ունիցին :



ԳԼ. Է.

Երկրորդ ժողով յԱշտիշատ յաղագս մեծին Սահակայ և որդւոյն Մեսրոպեայ վասն ընդունելոյ զժողովն Եփեսոսի և հերքելոյ զգիրս Թէոդորոսի Մամուեստացւոյ՝ վարդապետին Նեստորի։

(Ամք Տեառն 435)։ Զժողովն երկրորդ յԱշտիշատ վասն ընդունելոյ Հայաստանեայց զժողովն Եփեսոսի՝ մի անգամ գտանեմք արարեալ սրբոյն Սահակայ առ ժամանակակից պատմագիրս մեր՝ և ոչ երկիցս, որպէս դնէ Միք. վարդապետ Չամչեան յամս Տեառն 432 և 445. որ թէև մկայ կոչէ այսմ յայտնի վրիպանաց իւրոց զանուանս յիշեալ ազգային մերոց պատմագրաց այն է Մովսիսի Խորենացւոյն և Կորեան նորին ազգակցի, բայց զբանս նոցին ոչ յառաջ բերէ ըստ սովորութեան իւրում ի հաստատութիւն բանից իւրոց, զի մի՛ յայտնեսցին սխալանք իւր, և անհաւաստի անդէկութիւնքն յառաջ բերեալք նորա ի բանից սինհոդոսաց Լատինացւոց՝ որպէս ինքն ասէ, և երևեսցի ստութիւն երկիցս նամակագրելոյ սրբոց հարց ժողովոյն առ այն առ մերս սուրբ Սահակ. զորմէ ստորև։

Յերկուց անտի պատմագրաց մերոց ժամանակակցաց սրբոյն Սահակայ Խորենացին Մովսէս ըստ իւրում համառօտագրութեանն զայնչափ ինչ գրէ յաղագս ժողովոյն Եփեսոսի, առանց յիշատակելոյ և զժողովն առնել սրբոյն Սահակայ և Մեսրովբայ առ այս յԱշտիշատ, թէ՝ „Վասն՝ զի ոչ հանդիպեցան յայնմ ժողովի (յԵփեսոս) մեծն Սահակ և Մեսրոպ, գրեն առ նոսա Կիւրեղ Աղէքսանդրացի և Պրոկղ Կոստանդնուպօլսի և Ակակ Մելիտինոյ Եպիսկոպոսք, զգուշացուցանելով զնոսա.

քանզի լուան եթէ ոմանք ի չարափառացն աշակերտաց առեալ զգիրսն Թէոդորոսի Մամուեստացւոյ զվարդապետութիւն Նեստորի և զաշակերտին Թէոդորի՝ գնացին յաշխարհն Հայոց։ Արդ եկեալ թարգմանիչքն մեր . . . գտին զմեծն Սահակ և զՄեսրովբ յԱշտիշատ Տարօնոյ, և մատուցին զթուղթսն և զկանոնս ժողովոյն Եփեսոսի՝ վեց սահմանեալ կանոնաւ գլխով, և զստոյգ օրինակս գրոց,, (այս ինքն Աստուածաշնչին)։ Գիրք. Գ. ԿԱ։

Իսկ Կորիւն՝ որ մի ի յիշեալ թարգմանչացն էր բերողաց զթուղթս ժողովական հարց ի Կոստանդնուպօլսոյ առ սուրբն Սահակ, պարզաբար իսկ գրէ զերկրորդ ժողովոյն Աշտիշատայ, ուր սուրբ հարքն մեր որպէս ընկալան զսուրբ ժողովն Եփեսոսի ընդ դէմ Նեստորի մարդապաշտին, նոյնպէս և հերքեցին զգրուածս Թէոդորոսի Մամուեստացւոյ, յասելն։

‘‘Յայնմ ժամանակի բերեալ երևեցան ի Հայաստան աշխարհին գիրք սուտապատում ընդունայնախօս աւանդութիւնք առն ուրումն Հոռոմի, որում Թէոդորոս անուն. վասն որոյ Սիւնհոդոսական Հայրապետացն Եկեղեցեաց սրբոց նշանակեալ ազդ առնէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ և Մաշտոցի. և նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ բարձեալ աշխարհահալած արտաքոյ իւրեանց մերժեցին, զի մի՛ ի լուսաւոր վարդապետութիւնն ծուխ սատանայականն յարիցէ,,։

Զայս հաստատէ և Յովհան Իմաստասէրն կոչեցեալ Հայրապետ ի պատմութիւն ազգային ժողովոց գրեալս յինքենէ ի սրբոյ Լուսաւորչէ անտի մերմէ մինչև ցինքն. որ արար զժողովն ի Մանազկերտ, այսպէս ասելովն։

‘‘Երկրորդ ժողով արար սուրբն Սահակ և երանելին Մեսրովբ յԱշտիշատ, յորժամ հասին թուղթքն ի

Կիւրղէ և ի Պրոկղէ, որք յԷփեսոս երկու հարիւրքն ժողովեալք, յորժամ զփառքն ի բարձունս կարգեցին, յաճախելով ի բանս հովուացն պարսպելով ընդ դէմ "Նեստորի անիծելոյ,,*):

Յայսցանէ ահա յայտնի երևի՝ զի սուրբն Սահակ ոչ եթէ ի Մաքսիմիանոս պատրիարգէն ընկալեալ էր ըղթուղթ և զկանոնս սուրբ ժողովոյն Եփեսոսի, այլ ի Կիւրղէ և ի Պրոկղէ ընկալեալ զգիրս և զկանոնս. ընդ որ և ինքն հանդերձ Մեսրովբաւ երանելեաւ երկրորդ անգամ ժողով արարեալ՝ յԱշտիշատ Տարօնոյ, ընկալաւ զկանոնս սրբոյ ժողովոյն և խոստովանեցին ըստ Խորենացւոյն բանի՝ Մի որդի Աստուծոյ՝ զՏէր մեր Յիսուս Քրիստոս, և Աստուածածին՝ զամենասուրբ կոյսն Մարիամ, և մերժեցին զՆեստոր և զաղանդ նորա. մերժեցին նոյնպէս և արտահալած արարին ի Հայաստան աշխարհէ ըստ գրելոյն Կորնոյ՝ զգիրս Թէոդորոսի Մամուեստացւոյ. և զփառս ի բարձունսն ընկալան և կարգեցին ի ժամակարգութիւնս Հայաստանեայց Եկեղեցւոյ:

Ուստի երևի ի վերոգրելոցս հաւաստեաւ, եթէ Միքայէլ Չամչեան յանստոյգ աղբերաց լիցէ առեալ զնուա տեղեկութիւնսն և խանգարեալ այսպէս զստոյգ պատմութիւն ժողովոց Հայաստանեայց Եկեղեցւոյ, որ ընդ դէմ ժամանակակից պատմագրաց ազգիս երկիցս դնէ

(*) Այսօրինակ վկայի դարձեալ և ի պատմութիւնս ժողովոց, որ գրեցաւն յետ մահուան Մովսէս Կաթուղիկոսի, ի ժողովն Դվնայ՝ յորում էին Թէոդորոս Մարդպետական Եպիսկոպոս և այլք, զոր ունիմք յառաջ բերել ի տեղւոջ իւրում. (ի ձեռագիրս): Վկայէ այսմ և Մխիթար Գօշ ի թուղթն իւր առ Զաքարէ սպասալար յաղագս ժողովոց Հայաստանեայց Եկեղեցւոյ. (ի ձեռագիր օրինակին):

արարեալ ժողով սրբոյն Սահակայ յԱշտիշատ բաց յա-ռաջնոյն, վասն ժողովոյն Նիկիոսի. և թէ գրեալ իցեն թուղթս նախ Մաքսիմիանոս և ապա Պրոկղ Եպիսկո-պոսք Կոստանդնուպօլսոյ առ մեծն Սահակ Հայրապետ: Սրում և անընտրողաբար հետևող երևի Միքայէլ Սալ-լանթեան, դնելով յաղեւսակի պատմութեան ժողովոց երկրորդ և երրորդ ժողով յԱշտիշատ յանուն սրբոյն Սահակայ (ի տպագրեալ աղիւսակն):

### ԳԼ. Ը.

### Առաջին ժողով է Շահապիվան, ուր եդան կանոնք պատժա-նաց վասն օրինազանցից:

(Ամք Տեառն 447): Ի միջոցի եօթն ամաց մահուան սրբոյն Սահակայ և Մեսրովբայ ի սկզբան վրդովման սա-սանութեան համօրէն Հայաստանեայց յերեսաց Յազ-կերտի արքային Պարսից, յորում ժամանակի և բարձեալ էր ի նորոյ թագաւորութիւն Արշակունեաց, մտեալ էին արդէն յոմանս յեկեղեցականս Հայոց և յաշխարհականս մեծամեծ անկարգութիւնք ի տեղիս տեղիս. սակս որոյ և վարդապետք ժամանակին և նախարարք ազգիս հա-եալք առ Յովսէփ Կաթուղիկոս, որ յաշակերտութենէ սրբոց թարգմանչացն էր, խնդրեցին ի նմանէ առնել ժո-ղով ի դարման չարեացն յեօթներորդում ամի Հայրա-պետութեան նորա:

Ուստի նա խորհրդով Աւագանւոյն զնորընծիւղ չա-րեացն կամեցեալ ի բաց խլել զօրումն ի բազմաց սրտից, արար ժողով ի Շահապիվան մերձ յաւան Բագուան որ ի Բագրեւանդ գաւառի ի սահմանակցութեան Ծաղ-կոտն գաւառի խարեմտի Հայոց յամենայն Նաւասարդի

յաւուր տօնի սրբոյ Կիւրապետին. յորում էին քառասուն Եպիսկոպոսք, ըստ գրելոյ Իմաստասիրին Յովհաննու ի պատմութեան ժողովոց, և երիցունք և վանականք և սարկաւագք ուխտ Եկեղեցւոյ. որոյ զպատմութիւն և զկանոնս եդեալս ի նոցանէ ի նոյն լրութիւն առաքելական և Նիկիական կանոնաց հաստատութեան, որպէս գրի ի սկիզբն նախադրութեան յիշեալ կանոնացն, ամբողջութեամբ յառաջ բերեմք ատանօր ի ձեռագիր կանոնագրաց, առանց երկրորդելոյ մեր զայն ։

«Առաջնորդ և կանոն զոր եդին Վարդապետք Հայոց ի ընթերցումն Առաքելական և Նիկիական կանոնաց հաստատութեան»։

Նախադրութիւն.

«Պարտ և պատշաճ է նաւավարին հոգալ զիրս նաւին և զշաւիղս ծովուն նկատել, և ըստ հողմոյն յաջողութեան գնալով ի վերայ ալեանց ծովուն. նոյնպէս և զօրավարին յամենայն ժամ զզօրսն տեսանելով և ի հանդիսի անցանել զայրընտիր, զձիընտիր, զզէն զանձամբ և ապա սպառազէն զերիվարաւն, ակն ունել ճակատուն յաղթող գտանիլ, և առնուլ զպսակն ի թագաւորէն. ապա առաւելապէս արժան է վարդապետաց Եկեղեցւոյ, հովուաց և Առաջնորդաց արդարութեամբ և ստոյգ պատուիրանին Աստուծոյ կենդանւոյ յամենայն ժամ յօրէնսն Տեառն խորհել ի տուէ և ի գիշերի, և զմանկունս Եկեղեցւոյ նորափետուր զարդարել ի Տէր»։

«Յետ փոխելոյն յերկրէս վարդապետաց հարցն արդարոց և ճշմարիտ օրէնսդիր առաջնորդացն, մանաւանդ սրբոյ քահանային Սահակայ Հայոց Կաթուղիկոսի և

հոգելից հոգեկիր ճշմարիտ վարդապետին Մեսրովբայ՝ որ լուսաւորեաց զերկիր Հայոց, ի փոխիլ նոցա յերկրէս, լինէր եղծումն և քայքայումն կարգաց և օրինաց սրբոյ Եկեղեցւոյ, որպէս տեսանէր յառաջագոյն ի տեսլեան Քահանայապետն Սահակ, և կամ ևս յառաջ՝ մեծն Գրիգորիոս. և բազմանային, որք յաճախէին ի գործս պղծութեան և յետս ընդդէմ գնացին. ի ցամաքել սիրոյն բազմանայր անօրէնութիւնն, և ոչ ոք էր որ քաղէր զորոմն և կտրէր զգաղձն փշաստակար. քանզի արմատացեալ էր սէզն և տարածէր օր աւուր և լինէր յաճախումն մծղնէից, կնահանից, պոռնկաց, անձնականաց, գողոց և ամենայն չարագործաց յաշխարհին Հայոց ի մէջ տանն Թորգոմայ, և լինէր սուգ և տրտմութիւն որ էին ի ժամանակին Վարդապետք, Եպիսկոպոսք և երիցունք և ոյք ունէին զուխտ սուրբ՝ պաշտօնեայք Քրիստոսի և մանկունք Եկեղեցւոյ սրբոյ,, ։

‘‘Այլ և յուխտէ քահանայիցն ոչ գնային ըստ սրբութեան ճանապարհին, և մանաւանդ զի ոչ էր ի ժամանակին յայնմիկ իշխանութիւն ի ձեռս նախանձայոյզ ազգին Մամիկոնէից, զի հնազանդեալ էին համարձակելոց Պարսկային Թագաւորութեան. զի Թէպէտ և հեծէին և մռնչէին ի նմանութիւն կորեանց առիւծոյ Վարդանն Մամիկոնեան ազգաւ իւրով հանդերձ եղբարբք, այլ կային իբրև ի գառագղի արգելեալք, և ակն ունէին վերին օգնականութեանն, և տային զիշխանութիւնն ի ձեռս նոցա,, ։

‘‘Ապա օր աւուր բղխէ զբան և գիշեր գիշերի ցուցանէ զգործսն արդարութեան, բան առ բան հասանէր, և մարդ ի մարդոյ հնչիւն լինէր յիւրաքանչիւր լսելիս. և զային, ժողովէին ի հրամանէ միաբանութեան յեղեալ

նկեան ի Ճահապիվանի՝ բանակետղ Թագաւորացն Հա-
յոց ի ժամս Ներսեսի Տօնին,,։

''Նոյն լինէր այս ի Ի.Զ. ամի Թագաւորութեանն Յազ-
կերտի Պարսից արքայի և Վասակայ Սիւնեաց մարզպա-
նին Հայոց և Վահանայ Ամատունեաց հազարապետի և
Վրուայ Խռախոռունեաց Մաղխազի. և գային ժողովեցին
Եպիսկոպոսք քսան և երիցունք բազումք, սարկաւագք
և նախանձայոյզ պաշտօնեայք Քրիստոսի և համօրէն
ուխտք Եկեղեցւոյ՝ իշխանք, գաւառապետք, գաւառա-
կալք, պետք, ռամկաւորք, զօրագլուխք, հարիւրաւորք,
ազատք, կուսակալք կողմանց կողմանց մեծ աշխարհին
Հայոց, նախարարք ամենայն առաջի Վասակայ մարզ-
պանի և Վահանայ հազարապետի և Վրուայ Մաղխազի,
և առաջի գլխաւոր եպիսկոպոսաց՝ Գազայ, Տաճատայ,
Արտակայ, Գիւտայ, Եփրեմի և այլոց բազմաց երիցանց
գլխաւորաց՝ Յովսեփայ, Յովհաննայ, Մեղտեայ, Երբե-
միոյի, Ասպարուկայ, Դանիէլի, Ղեւոնդի սրբոյ, Եղիշէի
դպրան երիցու և այլոց սրբասէր քահանայից, որք էին նա-
խանձախնդիր օրինացն՝ առաջի աւագ նախարարացն
քաջին և կորովւոյն Վարդանայ Մամիկոնենից և Ար-
շաւրայ Կամսարականի և Մանաճիհրի Ռշտունեաց սպա-
րապետին Հայոց և Զ.կայ Գիմաքսենի և այլոց նախա-
րարաց, որք միաբանեալք էին և հաւանեալք արդար
օրինաց և Քրիստոսական պաշտաման, և միաբան բար-
բառէին այսպէս, եթէ՝

''Զ.եղեալ զկարգն սրբոյն Գրիգորի և զՆերսեսի և
զՍահակայ և զՄաշտոցի դուք այդրէն հաստատեցէք,
և այլ ևս լաւ, որպէս ձեր կամք են, և մեք անտրժելով
յանձին ունիմք. զի կարգք Եկեղեցւոյ թուլացան, և
մարդիկ յանօրէնութիւն դարձան. արդ որ օրէնք Ա-

տուծոյ — հաճոյ են և Եկեղեցւոյ, դուք զայն կարգեցէք, և մեք հնազանդիմք. և եթէ ոք հաստատուն ոչ պահէ զկարգս օրինացն Եպիսկոպոս կամ երէց, կամ ազատ, կամ շինական՝ պատուհասեսցի և տուգանս տացէ,,:

„Եւ զայս ասացեալ քահանայապետիցն, եթէ Առաքելականն և Նիկիականն հաստատեալ կացցէ՝ որպէս և էն իսկ, և մեք հնազանդ եմք. բայց որ ինչ պիտոյ է ի լրութիւնս ի նոյն կանոնս, և մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ՝ հաստատեսցի: Ապա կարգեցին և եդին այսպէս,,:

Սահմանք և կանոնք զոր եդին Վաղարշապատու Ժողոյ՝ ի նոյն լրութիւն Առաքելական և Նիկիական կանոնաց հաստատութեան:

ա. Եթէ Եպիսկոպոս՝ ոք գտցի ի պղծութեան և կամ ի պոռնկութեան և կամ զի՞նչ և իցէ վատթարութեան, և զառաքելական պատուէն անարգեաց և զսուրբ Աթոռն, այնպիսումն ասէ գիր, Ընդ գողս ընթանայիր, ընդ շունս դնէիր զվիճակ քո, և վկայութեամբ ի յայտ եկեսցէ, յաթոռոյն ի բաց մերժեսցի և զքահանայութիւնն մի՛ պաշտեսցէ, ՌՄ դրամ ի սուրբ Աթոռն տուգանեսցի, և անձին իւրում լեցի մեղադիր. քանզի Մարդ ի պատուի էր և ոչ իմացաւ. և զտուգանն կարօտելոց բաշխեսցեն. զի պարտ էր նմա յամենայն ժամ յօրէնս Տեառն խորհել և մի՛ զարտուղի անկանել, և մի՛ աշակերտեալքն զնոյն մատուսցեն:

բ. Երէց որ գտցի ի պղծութեան կամ ի պոռնկութեան, կամ յայլ վատթարութեան, և վկայութեամբ իրքն ի մէջ եկին, զերիցութիւնն մի՛ պաշտեսցէ, երեք հարիւր դրամ տուգանեսցի յաղքատս, և նա ի դպրաց

կարգի կացցէ. ապա եթէ ի դպրութեան ի նոյն պղծութիւն գտցի, ի կարգէն ելցէ և ի դպրութենէն կենաց, մինչև ի կարգ ուղղութեան եկեսցէ ապաշխարութեամբ։ Եւ տեսեալ Եպիսկոպոսին զճանապարհն նորա, ի դպրաց կարգ մտցէ։ Երիցու և սարկաւագի կանոն՝ այդ կացցէ. զի եկեղեցի և սուրբ սեղանն, մանաւանդ Տէրունական խորհուրդն զանարատս ընդունի, զի մի՛ բարկութիւնն Աստուծոյ զարթիցէ ի վերայ երկրի ի ձեռն Առաջնորդի։

Եթէ կնաւ երէց գտցի ի պղծութեան և կամ յայլ գործս և ստուգեցաւ վկայիւք, քահանայութիւնն լուծցի, և յեկեղեցւոյ բաժնէ հեռասցի. երեք հարիւր դրամ տուգանս տացէ ի կարօտեալս. թէ երէց թէ սարկաւագ՝ կանոն այդ լիցի. և նոքա ի զինուորաց կարգի կացցեն ի բաժնի և ի հարկ արքունի. և ընդ պաշտօնեայս մի՛ խառնեսցին։ Ապա եթէ կին երիցուն կամ սարկաւագին ի շնութեան գտցին, ընտրոյ տեարք նոյն լիցին. կամ զեկեղեցին ընտրեսցեն և զքահանայութիւնն, կամ զկինն. եթէ զքահանայութիւնն, զկինն ի բաց թողցէ, ապաշխարութիւն խիստ ի վերայ դիցեն։

Ապա թէ դուստր քահանայի գտցի ի պոռնկութեան, եկեղեցւոյ բաժնի մի՛ իշխեսցէ. և խիստ ապաշխարութիւն դիցեն և պատուհաս. և որդւոց երիցու նոյն լիցի. եթէ երէցն մեռցի, կինն առն չիշխէ լինել, նոյնպէս և երէցն։ Եւ աղախին պոռնիկ ի քահանային տան մի՛ լիցի, զի սրբութիւն Տեառն է։

Գ. Եթէ ոք կին ունիցի և պոռնկիցի, և զկարգ ամուսնութեանն սրբութեամբ ոչ պահիցէ . . . զայնպիսին կշտամբեսցեն գլխաւորք գանիւք և բանիւք օգտակարօք և յեկեղեցւոյն հանցեն . . ։ Եթէ ազատ է և գան չըմարթի հարկանել, ի տուգանն և յապաշխարութիւնն

յաւել երկու հարիւր դրամ յեկեղեցի, երկու հարիւր դրամ կարօտելոց, երկու ամ ապաշխարութեամբ, ապա մտեալ յեկեղեցի՝ ընդ ընկերս խառնեսցի։ Եթէ շինական, զան յոլով արբցէ, հարիւր դրամ տուգանս տացէ յեկեղեցի և յաղքատս, և մի ամ ապաշխարեսցէ . . . մտցէ յեկեղեցի. եթէ այր, եթէ կին՝ . կանոն այդ լիցի . . . Այս կանոն լիցի նոյ և կուսի և երիտասարդի. ևլն։

Դ. Եթէ թողցէ ոք զկին իւր առանց բանի պոռնկութեան, կամ վասն արատոյ ինչ ի մարմնի, զորդիսն և զկեանսն և զհող և զջուր բաժանեսցեն, և զկէսն կնոջն տացեն. և եթէ կամք են այլում լինել, համարձակ զբաժինն կալցեն և զպլքունի հարկ ողջ արասցեն. և այրն որ եթող, եւթն ամ ապաշխարեսցէ, և յեկեղեցի տուգանս տացէ. եթէ ազատ է, երեք հարիւր դրամ. եթէ շինական, զան արբցէ և հարիւր դրամ յեկեղեցի՝ փոխանակ զօրհնութեան պսակն խոտելոյ։

Ե. Եթէ կին արար ոք, և կինն ամուլ պատահեաց, և այրն հանցէ վասն ամլութեանն, որ ինչ կնոջն բերեալ էր ի տունն . . . առնուլ իշխեսցէ և գնալ. եթէ քան զամլութիւնն այլ արատ չկայ, տուգան ևս տացէ կնոջն վասն անարգանացն, եթէ ազատ է, հազար երկու հարիւր դրամ, եթէ շինական՝ հազար դրամ . . . Ապա եթէ առնն յառաջագոյն խորհուրդ էր զիւր կինն թողուլ և զայլ առնուլ, և կամ պոռնկեալ էր ընդ նմա, հարիւր դրամ այրն տացէ յեկեղեցի. և ապաշխարութիւն առնն երեք ամ ընդ ունկնդիրս, մի ամ ընդ ձեռամբ. մտցէ յեկեղեցի . . . ։

Զ. Ըստ զգամ կանանց որ յառնէ ելանիցեն, զկինն կալցեն և ցայրն տացեն . . . Ապա եթէ այրն շնաբարոյ է կամ պոռնիկ . . . գանիւ և խրատու կշտամբեա-

ցեն զայրն և հնազանդեցուսցեն. եթէ ազատ է, տուգանօք զայրն ի կարգ արկցեն. եթէ դիւրաւ փոխիցի այրն, կինն պաշտեսցէ զնա։

Է. Որ բռնութեամբ և անիրաւութեամբ առևանգեն, կալցեն զկինն և տացեն ցհայր և ցմայր, և տուգան տացեն փոխանակ անարգանացն. թէ ազատ է, և թէ շինական՝ հազար դրամ . . ։ Ապա եթէ սուտ փեսայն ընդ աղջկանն պոռնկիցաւ առանց պսակի, տուգան կալցեն յեկեղեցի, և երեք ամ ապաշխարեսցէ։ Ապա եթէ երէց ոք զաղտ պսակ եդ առանց հօր և մօր աղջկանն, երէցն զքահանայութիւն մի՛ իշխեսցէ վարել և հարիւր դրամ տուգանեսցէ կարօտելոց, և պսակն անվաւեր եղիցի։ Ապա եթէ յետ խառնվութեան և տուգանաց դարձեալ ի հաւանութիւն գան . . և յառաջ պոռնկեալ իցեն, պսակ մի՛ օրհնեսցեն, այլ երկրորդի ուռ օրհնեսցին. ապա եթէ կուսանք կացեալ իցեն, պսակ օրհնեսցի։ Թէ ազատ, թէ շինական կանոն այդ կացցէ։

Ը. Եթէ ոք ի կախարդութեան գտցի կամ յուրացութեան և կամ յայլ ի չար գործս, և ի զղջումն և յապաշխարութիւն ոչ եկեսցեն, ըստ գրոց հրամանի քարկոծ լիցին. ապա եթէ խոստովանեսցի, մինչև ցմահ իւր ապաշխարեսցէ, տասներկու ամ ընդ ունկնդիրս. և մտեալ յեկեղեցի, եղցէ ընդ ապաշխարողսն, մի՛ լոկ ի Քառասներորդսն, այլ յամենայն ժամ. և քննեալ հետաքըն ի ձեռն ողորմութեան բազում ինչ ծախել ի կարօտեալս վասն փրկութեան անձին իւրոյ, ջերմ արտասուօք զյետին թոշակն առցէ։

Թ. Որք ի հարցուկս և ի դիւթս երթան, տուգան կալցեն. եթէ ազատ է՝ երկու հարիւր դրամ. եթէ շինական՝ զան արբցէ տասն և հինգ կրկին. հարիւր դրամ

տուգան կալցեն, և կարօտելոց տացեն. երեք ամ ապաշխարեալ՝ հաղորդեսցին։ Ապա եթէ եպիսկոպոս կամ երէց երթեալ իցէ ի հարցուկս, և ստուգեսցին իրքն երկու կամ երեք վկայիւք, . . . եպիսկոպոսն յեպիսկոպոսութենէն անկցի, և երէցն յերիցութենէն. հազար դրամ եպիսկոպոսն տուգանեսցի, և հինգ հարիւր երէցն . . . ։ Ապա եթէ ի կարգէ պաշտօնէիցն և յուխտէ Աբեղայից երթեալ իցեն ի հարցուկս, կամ որդի երիցու, զպատուհաս, և զտուգան և զապաշխարութիւն աշխարհականացն կրեսցին, և ի կարգէ պաշտօնէիցն ի բաց ելցեն։ Եթէ այր, եթէ կին՝ կանոն այդ լիցի։

ժ. Որ ի դիւթութեան գտցին, ՃԻ կրկին զան արբցեն, խանձեսցեն, մրեսցեն, ոսկերս արկցեն, և յուրկանոց տարցեն, և երկու ամս աղասցէ գողեացն . . ։ Եթէ ազատ է և ի գողենոց չերթայ, երեսուն դրամ ի գողսն տացէ, և ինքն երկու ամ յիւր եկեղեցւոջն ապաշխարեսցէ և հաղորդեսցի, և այլ մի՛ մեղիցէ։ ❀

ժա. Որ կոծ դնեն մեռելոց և անյուսութեամբ լան, թողեալ զյուսով և զօրհնութեամբ հրաժեշտն . . ։ Եթէ յազատաց կամ ի շինականաց առաքելական կանոնիս ընդդիմացաւ և կոծ եդ, նզովեսցին դնեալքն և կոծողքն. և մի ամ յեկեղեցի մի՛ մտցեն. և տուգան կալցին զազատին հարիւր դրամ, և շինականին յիսուն . . . ։

ժբ. Որ զկին հօր որդի ունիցի . . . ոչ ընդունի զնա կանոնս, և ի սուրբ եկեղեցի մի՛ մտցէ. և յամենայն ժողովոյն նզովեսցին մինչև ապաշխարեսցեն. Է ամ ընդ ունկնդիրս, Գ ամ ընդ ձեռամբ, Ծ դրամ աղքատաց, Ծ դրամ յեկեղեցի. քննեալ զվարսն՝ հաղորդեսցի։ Եթէ հայր զորդւոյ կին ունիցի, զդոյն պատուհաս և նզովք. եթէ եղբայր զեղբօր՝ նոյն պատուհաս։ Եւ եթէ

զՋ՛րմ հարազատի, և զազգականի՛ մի՛ ոք իշխեսցէ առնուլ. եթէ կնոջն կամք լիցին, զպատուհաս և զտուգանս և զնզովս զնոյն կրեսցէ. բայց յապաշխարութիւն կալցեն զկինն և յուրկանոց տացեն, և ժ. ամ ապասցէ զողեացըն. ապա եթէ ազատ է, Ճ դրամ տուգան տացէ:

ծգ. Որ զազգականն կին առնու . . . զքոյր, կամ զքեռորդի, կամ զեղբօրորդի, կամ զհօրքոյր, կամ զայլ ոք յազգականին իւրում մինչև ի չորրորդ ծնունդն՝ կին առնել մի՛ իշխեսցէ, զի մի՛ պատառումն եղիցի սուրբ հաւատոյն. քանզի բարկութիւն անձին իւրում գործէ այնպիսին. Թերակատար եղիցի, և զաւակ անօրէն անկողնոյ մի՛ բողբոջեսցի . . . : Արդ եթէ ոք ընդդիմասցի օրինացս և հաստատեալ կանոնիս, և ի հեթանոսութիւն և ի հրէութիւն կործանեսցի, ընդ նոսին լիցի բաժին նոցա, և յեկեղեցւոյ հեռացեալ լիցի . . . : Եւ եթէ այնպիսեացըն պսակ ոք օրհնեսցէ, կամ ի հարսանիս երթիցէ, կըցորդ եղիցի գործոց նոցա և ի կարգէ պաշտօնէիցն հեռասցի . . . : Եւ որ խոտորեցաւն յօրինաց և յեկեղեցւոյ, եթէ դարձցի ի զեղծ ամուսնութենէն, ի ձեռն մեծամեծ տրոց մինչև զկէս ընչից և զկէս իրաց և զկենաց հոգւոց իւրեանց տացէ ի կարօտեալս և ի վշտագնեալս. յեկեղեցի զաւուրս կենաց իւրեանց ապաշխարեալ՝ ի վախճանի իւրում լիցի արժանի հաղորդելոյ: Եւ գլխաւորք եկեղեցւոյն որ ի խորհրդին էին և որ զպսակն օրհնեաց, Ռ. դրամ եպիսկոպոսն, Մ՝ երէցն տուգանեսցեն, և ապա մատիցեն յերիցութիւն . . . :

ծդ. Եպիսկոպոս ոք, կամ երէց կամ սարկաւագ կամ մի ի պաշտօնէից՝ տան տիկին անուն մի՛ իշխեսցէ առնել որպէս սովորութիւն է մծղնէից. ապա եթէ ունիցի ոք և վկայութեամբ ի յայտ եկեսցէ, ի կարգէն յորում է, անկցի

ի բաց, և համարեսցի որպէս զամպարիշտն և զմաքսաւորն. զի սուրբ Եկեղեցի և խորհուրդն Տէրունական զանարգան ընդունի, զի սպասաւորք ի ձեռն նորա փրկեսցին ։

ծե. Օ ի եթէ ոք ի պաշտօնէից և յուխտէ մանկանց ի հաւատս կայցէ, կամ մեռակերաց կամ զի՞նչ և է, զորբութիւն կամ զկուսութիւն պահել, և կենացն յաւիտենից հասանել, ընդ ընկերս կայցէ ընդ ճշմարիտս և ի միմեանց չընկեցին սիրոյն Քրիստոսի . . ։ Որ միայնակեաց կամի լինել և կուսան, և զհարեզայութիւն յանձն առնուլ, զկանոնդ զայդ կալցէ, ամենայն որ ի հաւատս կացցէ։

ծզ. Առանց կամաց գլխաւոր Եպիսկոպոսի աշխարհին՝ Եպիսկոպոսք մի՛ լիցին. և վասն երեց կամ անապատաւոր առանց գաւառի Եպիսկոպոսին չիշխէ լինել. Եպիսկոպոս ոք, կամ երէց, կամ ազատ, կամ շինական վասն առաջնորդս կարգելոյ և հօտիւս պատրաստելոյ Եկեղեցւոյ և օրինադիրս . . . Թէ կարի յանարգաց ոք է և յարհամարհելոց, և միայն նախանձաւոր սրբութեանն և օրինացն է, յառաջ կալցեն . . . ։

ծէ. Եթէ ոք նշխարս Մարտիրոսաց կամիցի դնել, առանց Եպիսկոպոսի աշխարհին մի՛ դիցէ . . ։ Եթէ ոք ի սուրբ տեղեացն Մարտիրոս բերէ, առ Եպիսկոպոսն բերցէ վկայութեամբ և թղթով եպիսկոպոսացն ուստի բերին, և իւրեանց Եպիսկոպոսի հրամանաւ դիցեն՝ ուր արժան է։ Եւ եթէ ոք սեղան կամի կանգնել, Տէրունական խորհրդին, առանց Եպիսկոպոսին մի՛ իշխեսցէ . . . ։

ծը. Եթէ վարդապետի ուրուք կամ զաշակերտ կամ զժողովրդական կամ զքահանայ նզովեալ իցէ կամ բա-

նալըրեալ, այլոց տեղեաց վարդապետ կամ Եպիսկոպոս կամ քահանայ մի՛ իշխեսցէ զանիծեալն օրհնել և զբանդեկապեալն լուծանել, բայց թէ հաւատով և ի սէրն հոգեւոր յուղղութիւն եկեսցէ . . . :

ԺԲ. Եթէ ոք ի մծղնէութեան գտցի կամ երէց՝ կամ սարկաւագ կամ ի հաբեղայից՝ քահանայութիւնն լուծցի, աղուէսադրոշմ ի ճակատն դիցէ, և ի տեղի մի ճըգնաւորաց յապաշխարութիւն տացեն. ապա թէ դարձեալ ի նոյն գտցի, զջիղսն կտրեսցեն զերկոսեան և ի գոգինոցն տացեն . . . :

ԺԷ. Որ յուրուք ժողովրդենէ մծղնէ գտցի, և երէցքն գիտեն և ո՛չ յայտնեն եպիսկոպոսին, եթէ յայտնի լիցին թէ գիտէր երէցն զգործս նոցա, և ո՛չ բողոքեաց եպիսկոպոսին, զպատուհասն զոր եդին կանոնքս՝ կրեսցեն . . . : Ապա եթէ երէցն ասիցէ ցԵպիսկոպոսն և յայտ առնէ, և Եպիսկոպոսն կարասի առնու և ծածկէ կամ աչառի . . . այնպիսին նզովեալ եղիցի և յԵկեղեցւոյ հեռասցի: Եթէ իշխան ոք ծածկեաց և թագոյց զմծըղնեայսն կամ վասն կաշառոյ, կամ վասն ազնուութեան . . նոյնպէս նզովեալ եղիցի . . . : Կամ իշխան ոք կամ ընտանիք նորին գտցին ի մծղնէութեան, նոյնպէս նզովեալ եղիցին, և ի հրապարակ մի՛ իշխեսցեն գալ . . . *):

Եւ եղեալ միաբան քահանայապետից և քահանայից և ամենայն հաւատացելոց զկարգս զայս և զկանոնս, և ընթերցեալ առաջի ամենայն զօրացն և զօրագլխաց, և

(*) Այս ամենայն քսանեքին կանոնք եղեալք յառաջին Ժողովն Շահապիվանու, կոչեցեալք Կանոնք տուգանաց վասն օրինազանցից՝ գրեալք են օրինակօք և ընդարձակ վկայութեամբք սուրբ գրոց ի կանոնագիրս մեր, զորս ըստ այսմ համառօտեցաք.

համաձայն հաւանութեամբ ամենայն աշխարհն Հայոց, ասելով միաբան զօրացն և զօրագլխաց, իշխանացն և նախարարաց, ազատաց և շինականաց թէ՝ «այո՛ այո՛ կարգ և օրէն այդ կացցէ ինչ որ վասն մեր օգուտ է և փրկութիւն ոգւոց մերոց. իշխանութիւն Եկեղեցւոյ Աստուծոյ և մեզ առաջնորդ և առիթ ի կեանս յաւիտենից. ամէն»։

## ԳԼ. Թ.

Երկրորդ ժողով յԱրտաշատ, և է Շահապիվանն երկրորդ, կամ պաշտպանութեան սուրբ հաւատոյ ընդդէմ հալածանաց Պարսից։

(450)։ Յազկերտ արքայ Պարսից յերկոտասաներորդում ամի թագաւորութեան իւրոյ, որ առ ժամանակ մի ի բաց եղեալ էր զհալածումն քրիստոնէից, առեալ զթուղթ ի Վեհ-Դենշապհոյ եղելոյ ի վերակացութեան աշխարհիս Հայոց՝ յաղագս անդրդուելի մնալոյ Հայաստանեայց ի հաւատս, խորհրդով նախարարաց իւրոց և մեծամեծաց, հրամայէ հազարապետին իւրում Միհրներսեհի գրել տալ մոգպետին ի դիմաց իւրոց զաղանդ մոգութեան առ Հայս, զի կամ դարձցին, և կամ անպատասխանի այնմ մնացեալ, պարտաւորեսցին. ընդ որում և ինքն գրէ հրովարտակ առ ամենայն Հայս, թողեալ զօրէնս քրիստոնէութեան՝ ընդունել զդէնս Պարսից. զորոց օրինակս յառաջ բերէ Փարպեցին, և զմոգուց թղթոցն և զաղանդոցն՝ պատմագիրն մեր Եղիշէ ի գլ. Բ։

Ստացեալ զայսպիսի թուղթ ատենից Պարսից սպառնագին հրովարտակաւ Յազկերտի՝ եկեղեցականաց Հայոց և իշխանաց, Յովսէփ Կաթուղիկոս գրէ փութանակի առ համօրէն Եպիսկոպոսունս աշխարհիս գալ գումարել

յԱյրարատ յԱրտաշատ քաղաք արքունական, ի պատասխանագրութիւն հրովարտակին և ընդդէմ աղանդոյ մոգուցն ։

Յայսմիկ ժողովի գումարին Եպիսկոպոսք տասն և եօթըն, բազում Քորեպիսկոպոսք և Երիցունք, Ղևոնդ երէց ի Վանանդայ, Խորէն ի Մրենոյ և Գաւիթ Մամիկոնեան, եւ և վանականք բազումք և վանահարք և նախարարք ամենայն, որք վասն պահպանութեան աշխարհին՝ չէին գնացեալ ի պատերազմ Պարսից, զորոց անուանս մի առ մի յիշատակէ Եղիշէ ի պատմութեան ընդ սորոց Եպիսկոպոսաց, երիցանց և վանականաց եղելոց յայնմիկ ժողովի. ուր ընթերցեալ միայն զհրովարտակ Յազկերտի, պատասխանի արար ժողովն հրամանաւ նախարարաց ի բերանոյ ամենեցուն առ Թագաւորն համարձակ բանիւք երկուցն եւ նամակաց, ո՛չ արժանի մաքուր լսելեաց համարեալ և զթուղթ մոգպետին որ յաղագս փոփոխելոյ զօրէնս քրիստոնէութեան ։ Իսկ զգիր Միհրներսեհի հազարապետին գրեալ ի մոգպետէն՝ ընթերցեալ Յովսէփ Կաթուղիկոս ընդ եպիսկոպոսաց ժողովոյն, գրեն և այնմ պատասխանի բազմապատիկ վկայութեամբ զճշմարտութենէ քրիստոնէական հաւատոյ, հերքելով և արհամարհելով զանօտի պաշտամունս արեգական, զոր նոքա պաշտէին. որպէս տեսանի յԲ. գիրս Եղիշէի, եր. 26, ի տըպագրեալն ։

Այլ իբրև ընդունի Յազկերտ զայս պատասխանի ի վերադարձին Միհրներսեհի հանդերձ մոգպետաւն, և տեղեկանայ յամենայնի ի նոսին զհաստատուն մտացն Հայոց ի քրիստոնէական հաւատս, և լսէ զարհամարհանս կրօնի իւրեանց համարձակ և անվեհեր բանիւք, դառնացեալ ի միտս առաւել ի հրայուրանաց չարալեզու մոգ-

պետին, գրէ հրովարտակ լի ցասմամբ առ բովանդակ նախարարս Հայոց յականէ անուանէ պահանջելով զնոսին, ոչ իբրև ըստ նախնի սովորութեան թագաւորացն Պարսից, այլ զայրագին բանիւք։

Ըստ որոյ և նախարարքն գիտացեալ զպատճառ կոչելոյ նորա ոչ հրաւիրանօք խաղաղութեան, այլ խռովութեան վասն կորստեան ոգւոց, ապաւինեալք ամենեքին յօգնականութիւն Աստուծոյ և եթ, գումարեալք ի մի վայր, ուխտ դնեն անսասան ի հաւատսն Տեառն ի ձեռն սրբոյն Յովսեփայ, և ապա հաստատեալք ի միտս, գնացին առ թագաւորն յաղագս գտանելոյ զխաղաղութիւն աշխարհին և ազատելոյ զնախարարսն բանտարկեալս անդէն յաշխարհին Պարսից։

Այս լինի երկրորդ ժողով ի Շահապիվան ի բանակետղ զօրաց սպարապետացն Հայոց յամին 450։

## ԳԼ. Ժ.

Առաջին ժողով է Դվինի վասն ընտրութեան Կաթողիկոսի, և փոխադրելոյ զԱթոռն Կաթողիկոսական յԷջմիածնէ ի Դվին։

(452)։ Յետ նահատակութեան սրբոց Վարդանանց և կոտորածի զօրացն Պարսից ի նմին պատերազմի, Ատրորմիզդ պարսիկ եկեալ ի մարզպանութիւն աշխարհին Հայոց և կալեալ զԿաթուղիկոսն Յովսէփ, զՂևոնդ երէց, զՍահակ եպիսկոպոս Ռշտունեաց և զերևելի քահանայս յԱյրարատեան աշխարհէ՝ առաւել զայնոսիկ, որք կործանեալ էին զատրուշանս Պարսից կրակապաշտացն պաշտօնէից, առաքէ առ Յազկերտ ի տուգել զպատճառս մեծի պատերազմին. և ապա ժողովեալ զամենայն նախա-

րօրս և բնակիչս յիւրաքանչիւր տեղեաց, ցուցանէ նոցա զարքունի հրամանն յաղագս վարելոյ կեանս ըստ առաջին կարգին և համարձակ պաշտելոյ յամենայն Եկեղեցիս զ-քրիստոնէութիւն :

Ժողովեալ նախարարացն առաքեն առ մարզպանն զ-պատգամաւոր, զի նախ առցէ ի Թագաւորէն զդաշն խա-ղաղութեան ուխտի ընդ իւրեանս, և հաշտութեան, և ապա գնասցեն ինքեանք ի դուռն արքունի. առ որ և ե-կեալ իսկ էր Ատրորմիզդ, առաքել զնախարարսն առ Յազ-կերտ, զի ցուցցեն ընդ սրբոց եպիսկոպոսացն զպատճառ պատերազմին :

Այսպէս յետ յայտնելոյ նախարարացն զկամս իւրեանց Պարսից մարզպանին, չև ընկալեալ զպայմանն արքունի, զան ի Դուին քաղաք և կոչեալ զեպիսկոպոսունս, ընտ-րեն ի Հայրապետութիւն փոխանակ Յովսէփայ՝ Կաթու-ղիկոս Հայոց զմեծ եպիսկոպոսն Մանազկերտոյ՝ զՏէր Մելիտէ յամի 452, և զԱթոռ Կաթուղիկոսութեան փոխադրեալ ի Դուին, անդր հաստատեն զայն, յետ գնա-լոյ սրբոյն Յովսէփայ ի Պարս, զի ոչ կարէին թողուլ զաշխարհն առանց Կաթուղիկոսի :

## ԳԼ. ԺԱ.

### Յովհան Մանդակունի Կաթողիկոս Հայոց և կանոնադրու-թիւնք նորա.

Յովհան Մանդակունի՝ որ էր յաշակերտութենէ սր-բոյն Սահակայ և Մեսրովբայ և աշակերտակից Գիւտա Կաթուղիկոսի, յետ Քրիստափորի կալաւ զԱթոռ Կա-թուղիկոսութեան ազգիս յամին 480. և եկաց ի Կաթու-

ղեկոսութեան զամս վեց ի Դվին յաւուրս մարզպանութեան Մամիկոնեան Վահանայ ։

Պատմագիրք ազգիս ոչ յիշատակեն եթէ արարեալ իցէ նորա Ժողով ի կառավարութիւն եկեղեցւոյ և ժողովրդոց կարգեալ կանոնս վասն բարեկարգութեան, այլ ամենեքին նոքա միահամուռ գրեն զփոյթն սրբոյ Հայրապետին ի կարգաւորել զժամերգութիւնս աղօթից և քարոզից, ի ճոխացուցանել զՄաշտոց գիրս եկեղեցական ծիսից, և ի գրել զզանազան ճառս հոգելիցս ։ Այլ գրեթէ ի բովանդակ կանոնագիրս մեր կան սորա կանոնագրութիւնք երիւք առանձին գլխովք արտաքոյ ի տպագրելոցն կանոնաց ընդ ճառս նորին յամին 1836, ի Վենետիկ, զորս անշուշտ երևի գրեալ նորա ի միասին ընդ կարգաւորութեան եկեղեցական ժամերգութեանց՝ վերաբերեալս ի վիճակ եկեղեցականաց և ժողովրդոց իւրումն դարու. և չիք երկբայութիւն՝ եթէ ոչ եղեն ժողովով յիշեալ կանոնագրութիւնքն. զի Եկեղեցին Հայաստանեայց ի Թարգմանչաց անտի մերոց սկսեալ պայծառանալ եկեղեցական երգովք և մաղթանօք, ի սորա աւուրս տակաւին բազում պէտս ունէր հարկաւորացն. ըստ որոյ և սուրբն Յովհան Մանդակունի որքան աղօթս և քարոզս գրեաց ժամերգութեանց, և յաւելուածս արար ի Մաշտոց և ի Պատարագամատոյցն ըստ Եսողկայ և Վարդանայ, այն ամենայն եղեն կարգ և կանոնք Եկեղեցւոյ և եկեղեցական պաշտամանց. վասն այսորիկ և Ժամագիրք անուանեալ եկեղեցական մատեանն ժամերգութեանց ընծայի ոչ միայն սրբոցն Սահակայ և Մեսրովբայ, այլ և Գիւտի և Մանդակունւոյ սուրբ Հայրապետաց Եկեղեցւոյս մերոյ. ուստի և ի նմին ժամանակի ի կարգաւորութեան անդ եկեղեցական պաշտամանցն առ ի նմանէ, եղեալ են և կա-

նոյնքն յիշատակեալ անուամբ նորա ի բարեկարգութիւն եկեղեցականաց ։

Մեք աստանօր ըստ կարգի և ըստ ժամանակի կենաց նորա յառաջ բերեմք ի կանոնագրոց մերոց՝ զառաջին գլուխ կանոնաց նորին Մանդակունւոյ ըստ այսմ վերնագրի ։

Յովհաննու Մանդակունւոյ Հայոց Կաթողիկոսի և Թարգմանչի, աշակերտ եղելոյ սրբոյն Սահակայ Մեծի Հայրապետին Հայոց Կաթողիկոսի՝ բան կանոնական ։

«Զմեծ և զանբաւ, զմարդասէր և զբարերար Տեառնէ պարտիմք զոհանալ հանապազ, որ արար զմեզ բանաւոր, մտաւոր և հոգևոր. և ետ մեզ ճանաչել զանուն իւր սուրբ. և ասէ, Ես ընդ ձեզ եմ յաւիտեանս ժամանակաց ։

Վասն սրբոյ պատուէքին պահոց ի կանոնս՝ ի շաբաթու ոչ հրամայի պահել. և յայտ անտի է, զի շաբաթ աւուր իրիկունն ապաշխարողաց ոչ քարոզի ի մի դէմսն. ըստ Մովսեսի օրինադրին հրամանի պարտիմք պատուել. և ի միւս՝ զի կարապետ է մեծի Թագաւորին՝ յառաջընթաց ընդ առաջ ելանէ ճրագօք և մոմեղինօք՝ կիւրակէին ։

Այլ վասն կիւրակէի պահելոյ՝ ոչ կանոնք հրամայեն պահել, և ոչ վարդապետք. այլ նզովս և անէծս ի վերայ դնեն. զնոյն և ՅԺԲ Հայրապետքն ի Նիկիա՝ ի սուրբ ժողովին նզովեցին ։

Ապա յաւուր կիւրակէի և ի Զատկէն մինչև ցՊենտէկոստէն՝ ծունր կրկնելով չհրամայեցին յաղօթս կալ ։

Ապա եթէ ասիցէ ոք՝ եթէ գինի որթոյ բեր է, և ձէթ ծառոց և ձուկն ջրոյ. ո՞վ անհեգեդ զգայարանք, այն իսկ

է ՙՆեստորի անիծելոյ աղանդն. զի Բարսեղ Կեսարացի զձուկն ղազան ասէ, և Առաքեալն վկայէ ասելովն. Այլ մարմին ձկանց է, և այլ անասնոց և այլ թռչնոց:

Արդ՝ Առաքեալն մարմին ասէ, և հերձուածողն ջուր. և զիա՞րդ իցէ ջուր, զի կենդանի է, յօդք, ոսկերք, ջիղ, արիւն, աչք: Աղէ՞ քննեա՛ խորհրդիւ ի ձկունս և ի գազանս, որ ի ցամաքի են՝ առիւծ, ինձ, վիշապ, որ է օձ, և գիրք ասեն սիկղ և հիդրայ. սիկղ շուն ասի երեքգլխեան, և հիդրայն ևս չար քան զնա. բայց զիւրեանց որդիսն ոչ ուտեն. իսկ ձուկն զիւր մերձաւորն ուտէ, և մարդ ևս ուտէ. ապա զիա՞րդ է ջուր. այլ կան և հաւք ջրայինք և անասունք. և ո՞վ է որ առանց ջրոյ սնանի:

Արդ գիրք զձուկն կենդանի ասեն, պատարագ ևս առնեն. ե՛կ և առ ձէթ. գիրք զիւղ և զձէթ միապէս ասեն. Եսայի ասէ, Փայտ իւղոյ. և Դաւիթ ասէ, Ծերութիւն իմ ի ձէթ պարարտութեան: Ե՛րթ և առ Աւետարանագիրն, որ ասէ վասն կուսանացն՝ թէ Ձէթ ոչ առին. և դարձեալ՝ թէ Տո՛ւք մեզ յիւղոյդ ձերմէ. ահա յայտ է թէ իւղ և ձէթ միապէս են. և դարձեալ, Ադամ ոչ եթէ պանիր եկեր, այլ պտուղ ծառոյ, և ել ի դրախտէն: Իսկ վասն գինւոյ գիրք ասեն, զարբեցութիւնս չար քան զդիւահարս. զոր Առաքեալն ասէ, Մի՛ արբենայք. և ոչ ասէ թէ մի՛ ըմպէք. զի թէպէտ և ՙՆոյի հրամայեաց ըմպել վասն տրտմութեանն, նոյնպէս և մեզ ի վայելչութիւն, ոչ թէ արբենալ և զեղխել. և յորժամ կերակուր ուտեմք և ըմպեմք, և ի նմին կամք, իսկ յորժամ գինւով ըմպեմք, զայլ խորհուրդ ածեմք զմտաւ և ոչ զԱստուածոյն. վա՜յ այնոցիկ, Եսայի ասէ, որք յառնեն ընդ առաւօտն և զհետ լինին ցքւոյն. զի զգինին իսկ անդրէն զնոսին այրէ. դարձեալ ասէ, Քահանայն և մարգարէն յիմարե-

ցան յարբեցութենէ ցքւոյն: Յառաջ ուխտաւորքն Սա-մուէլ և Սամսոն և որդիքն Յովնադաբայ միս ուտէին, բայց գինի և ցքի ոչ ըմպէին. զի գինի և հացօղի և մեղ-րօղի և ամբրաւօղի մի են, զոր գիրք վկայեն:

Արդ պանիր, ձէթ, ձուկն, ձու ամեն մի են. թէպէտ ոք ձու յօր քան կենդանի լինի, և կենդանեաց իսկ անասնոց յօր քան թէ դարման չլինի, մեռանի. բայց զոր ձկին և Նոր Կտակարանաց ասացեալ է և Վարդապետաց՝ որ են այս, Աթանասիոս, Կիւրեղ, Յովհաննէս, Սահակ Երու-սաղէմցի, Ակակ Մելիտենի, Գրիգոր Աստուածաբան Նա-զիանզու, Գրիգոր Նիւսեայ, Գրիգոր Կեսարացի, Բար-սեղ Կեսարացի, Իրինիոս, Որոգինէս, Յովսէպպոս, Կղէ-մէնտոս, Տիմոթէոս, Յովհան Կոստանդնուպօլսի, Զե-նոբ, Սեւերիանոս: Արդ զոր նոցա արգելեալ է մարգարէից և առաքելոց վկայութեամբ, չէ պարտ ումեք զանց առ-նել. ի Զատկէն մինչև ցՊենտէկոստն ամենայն երբեք մի կիւրակէ է, ծունր ոչ հրամայի դնել, այլ յոտն կալով և երկրպագութեամբ մատուցանել զաղօթսն. ի Պենտէ-կոստէից մինչև ցՎարդավառն մին շաբաթն ուտի, եր-կուն պահի. Վարդավառն տօն առաքելոցն է, և մա-րունք ըստ հնումն, ի նորումն՝ նաւակատիք սուրբ Եկե-ղեցւոյ և մարտիրոսաց յիշատակ: Եւ ի Պենտէկոստէն յառաջ ի ծոմոցն պահս ցուրբաթ օրն պահել՝ և յուր-բաթիւն ուտել՝ անկարգ է. պահել պարտ է մինչև յերե-կոյ. և որք զուրբաթ որպէս զկիւրակէ պահեն և ի գործոց դատարկացուցանեն՝ մեղք են. և կոչեն զնա ծեր. և այլ տեսեալ է զծերութիւն նորա, զի հինգ օրն առաջեն քան զնա. և որք ի չորեքշաբաթու և յուրբաթու մարտիրո-սաց յիշատակ առնեն՝ մեղք են. զի եթէ ի կարգի էր, ա-պա ի զատկին ուրբաթ օրն պարտ էր առնել մատաղ. զի

Քրիստոս Աստուած Արարիչն երկնի և երկրի յուրբաթուն խաչեցաւ, և ընթերցուածք և Սաղմոս և Աւետարան յայն օր շատ են. և յայն օր ամենայն մարդիկ ազատեցան ի ծառայութենէ մեղաց. և դրախտն յայն օր բացաւ ի ձեռն աւազակին. և զմարդիկ ի ծառայութենէ յայն օր զերծոյց Քրիստոս. բայց կարգք Եկեղեցւոյ զայն ուրբաթ պահել հրամայեն, և փոխանակ նորա ուտել զայլ ուրբաթսն մինչև ցՊենտէկոստէն։ Եւ որ զԾնունդըն առնեն յառաջ քան զՅայտնութիւնն՝ չէ արժան. զի Ծնունդն և Յայտնութիւնն մի են. և յայտ յընթերցուածոյն է, որ ասէ, ‘‘Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր այսպէս,,։

ԳԼ. ԺԲ.

Հինգերորդ ժողով ի Վաղարշապատ, ուր հերձեցան Բարծումայ և այլ Նեստորականք, և ընկեցան հրովարտակն Զենոնի կայսեր և ժողովն Քաղկեդոնի։

(491)։ Համբաւ հասեալ շփոթութեանց ի Հայս հակառակորդաց ժողովոյն Քաղկեդոնի, որոց էր գլուխ Դէոսկորոս Եպիսկոպոս Աղէքսանդրիոյ, ի ձեռն ջատագովաց և աշակերտաց նորին, իբր թէ Յոյնք նովին ժողովով ընկալեալ իցեն զգիրսն Թէոդորոսի Մամեստացւոյ, զոր սուրբն Սահակ մերժեալ էր Ազգային ժողովով, և թէ հաղորդեալ իցեն նոքա ընդ նեստորականաց նովին ժողովով, Բաբգէն Կաթուղիկոս Հայոց յՈթմսոյ որ ի Վանանդ, արար ժողով Եպիսկոպոսաց ի Կաթուղիկէ Մայր Եկեղեցւոջ Վաղարշապատու. ուր եկին հասին և Կաթուղիկոսունք Վրաց և Աղուանից հանդերձ Եպիսկոպոսօք իւրեանց։

Ի Հանդիսի ժողովոյն նզովեն նախ զՆեստորականսն և զամենայն համախոհս նոցին և զմոլորութիւնս, ընդ որս և զԵւտիքեանսն. և ընթերցեալ զՀենոտիկոն Զենոնի կայսեր և հաւանեալ ընդ այն, ըստ նորին մասանց դատապարտեն զժողովն Քաղկեդոնի, համարեալ

«Նախ՝ թէ այն ժողով ընկալաւ զգիրս Մոպսուեստացւոյն և զջատագովս նորին։

Երկրորդ՝ թէ այն ժողով բաժանեալ իցէ զՔրիստոս յերկուս դէմս և յերկուս որդիս, ըստ մասաց Նեստորի, սահման եդեալ ի վճիռս ժողովոյն յասելն. «Մեք Հայք և Հոռոմք, Վիրք և Աղուանք մի խոստովանութեամբ եմք հաստատեալ ճշմարիտ հաւատով ի լաւ անդր. զոր աւանդեցին մեզ սուրբ Հարքն յերիս ժողովս. ոչ ընդունիմք զայսպիսի բանս հայհոյութեան, այլ նզովեմք միաբան զնմանիս նորա»։

Պատճառ այսր ժողովոյ և հերքելոյ զժողովն Քաղկեդոնի բացայայտ ևս գրեն ազգային պատմիչք մեր. յորոց Յովհաննէս Կաթուղիկոս. «Զայսու ժամանակաւ ասաստուածահաճոյ վարուք և բարեպաշտ հաւատով երջանիկ արքայն Հոռոմոց Զենոն վախճանէր. որ ի ժամանակի տէրութեան իւրոյ զմիգատարր և զօդախիտ բքայորդոր չար հերձուածս Քաղկեդոնականաց ի բաց մերժեալ, զլուսափիւռ պայծառատարած ճառագայթաւէտ զհաւատս առաքելական ծաղկեցուցանէր յԵկեղեցւոջ Աստուծոյ»։ Եւ յաղագս Անաստասայ նորին յաջորդի ասէ, «Հաստատէր զաւանդութիւն բարեպաշտութեան հարցն սրբոց. և շրջաբերական թղթովք նզովեաց զամենայն հերձուածողս, ընդ ամենեսին և զժողովն Քաղկեդոնի նզովէր»։ Իսկ վասն Ժողովոյս այսորիկ՝ այսպէս. «Մեծ Հայրապետն Հայոց Բաբգէն առնէ ժողով Ե-

պիսկոպոսաց Հայոց, Վրաց և Աղուանից ի Նոր քաղաքի ի սուրբ Կաթուղիկէի ի Մայրն Եկեղեցեաց Հայոց. որք նմանապէս նզովեալ խոտեցին զժողովն Քաղկեդոնի. քանզի և չև իսկ էր ընկալեալ զաշխարհակործան ուսանդութիւնն, այլ ի նմին հիման սրբոյն Գրիգորի հաստատեալ կային,,։

## ԳԼ. ԺԳ.

### Երկրորդ ժողովն է Դուինն, վասն բարեկարգելոյ զժողովուրդն Քաղկեդոնի։

(Ամ Տեառն 527)։ Ներսէս Երկրորդ յաջորդեալ Գեանդեայ յԱթոռն Հայրապետական ի Բագրեւանդ գաւառէ ի գեղջէ Աշտարակաց յամի Տեառն 524, անէ ժողով Եպիսկոպոսաց ի Դուին յԱթոռն Հայրապետութեան յամի 527, վասն ուղղելոյ զանկարգութիւնս ամանց ի քահանայից և յեկեղեցականաց՝ յաւէտ ի զիւղօրայս. երևելիք էին Ներշապուհ Եպիսկոպոս Մամիկոնէից, և Պետրոս Քերթող Եպիսկոպոս Սիւնեաց։

Ի սմին ժողովի յուղղութիւն անկարգութեանցն սահմանեն կանոնս երեսուն և ութն՝ առեալ զքաղուածս ի կանոնաց սրբոյն Սահակայ Պարթևի. որք ի կանոնագիրս մեր կոչին Կանոնք Ներսէսի և Ներշապհոյ Մամիկոնէից Եպիսկոպոսի. որոց և համառօտութիւն դնի աստանօր։

ա. Զտուրս քահանայից տացեն յեկեղեցին, և մի՛ ի տուն միոյ ուրուք քահանայի ևեթ։

բ. Զտուրս ողորմութեան Պատարագի առանց զօշաքաղութեան առցեն քահանայք։

գ. Տուրք Եկեղեցւոյ մի՛ տացին վաշխիւք։

Դ. Մի՛ վաճառեսցի ումեք շնորհք քահանայութեան, և մի՛ իշխեսցեն աշխարհականք առնել զգործ քահանայի։

Ե. Երկկին պաշտօնեայք որոշեալ կայցեն յեկեղեցական կարգէ. և մի՛ վայելեսցեն զհասս Եկեղեցւոյ։

Զ. Քահանայք մի՛ խափանեսցեն զպատարագսն յաւուրս շաբաթու և կիւրակէի. և մի՛ ծուլասցին ի պաշտամանց յաւուրս տօնից. և եթէ անփոյթ լիցին, ի հասից աւուրն զրկեսցին։

Է. Քահանայք մի՛ իշխեսցեն նուազեցուցանել ընդ բաժակ սրբոյ հաղորդութեան պատճառաւ չքաւորութեան։

Ը. Ի մատակարարել քահանայից ի սուրբ բաժակէ առ ժողովուրդն՝ մի՛ խառնեսցին ի նոյն նորոգ գինի։

Թ. Օշխարագոյրս խորանին մի՛ տացեն ի տունս փեսայի և հարսին։

Ժ. Քահանայք մի՛ տացեն այլոց մանաւանդ կանանց զՋուր մկրտութեան պահել ի տուն և մկրտել զերեխայս։

ԺԱ. Ի քահանայս նախադաս համարեսցի՝ որ իցէ ձեռնադրեալ յառաջագոյն։

ԺԲ. Առանց քահանայի մի՛ իշխեսցեն դպիրք յԵկեղեցւոջ պաշտամունս կատարել։

ԺԳ. Քահանայք մի՛ զգեցցին զգեստ աշխարհականի կամ զինուորի։

ԺԴ. Տուրք Եկեղեցւոյ ըստ օրինի բաժանեսցին. աւագ Երիցանց՝ երկու և կէս մասն. հասարակ քահանայից՝ երկու մասն. սարկաւագաց՝ մի և կէս մասն. դպրաց՝ և այլոց կանանց եթէ իցեն կարօտ՝ մի մասն։

ԺԵ. Սպասք Եկեղեցւոյ ի ձեռս աւագ Երիցուն լիցի, և բնաւ յաշխարհական իրս մի՛ զբաղեսցի։

ծզ. Մկրտութիւնն յԵկեղեցւոջ լիցի հանդերձ ամենայն սպասուք յաւազանին սուրբ. և եթէ վտանգ կայցէ, ի տան կատարել։

ծէ. Ի մկրտել քահանային՝ մի՛ կայցեն առ նմա կանայք, ունելով զտեղի սարկաւագաց։

ծը. Սարկաւագունք մի՛ իշխեսցեն մկրտութիւն առնել առանց հարկի։

ծթ. Քահանայք մի՛ իշխեսցեն տրովք կատարել զխորհուրդ ապաշխարութեան։

կ. Եթէ քահանայն յայտնեսցէ զխոստովանութիւն ապաշխարողաց՝ նզովեալ լուծցի։

կա. Մի՛ լիցի հասարակ գերեզման յԵկեղեցւոջ։

կբ. Քահանայք մի՛ իշխեսցեն առնուլ վաշխս։

կգ. Զագապս այս ինքն զնուէրս, որք վասն աղքատաց ընծային, մի՛ բաժանեսցեն քահանայք ըստ հաճոյս. այլ ի նմին ժամու յանդիման ընծայողին բաշխեսցեն աղքատաց։

կդ. Որք հաղորդելոց են, մի՛ ճաշակեսցեն ինչ նախ ի տան. և եթէ գիտասցեն զայս քահանայք կամ կղերիկոսք, մի՛ թողցեն հաղորդել։

կե. Տղայոց պսակ մի՛ լիցի. և որք ի չափ հասեալ իցեն, առանց տեսանելոյ զմիմեանս մի՛ պսակեսցին։

կզ. Կոյս ընդ այրւոյ մի պսակեսցի, և ոչ այրի ընդ կուսի առանց հարկի։

կէ. Քահանայք մի՛ իշխեսցեն երթալ և ընտրել ըստ հաճոյս իւրեանց զարջառ վասն ողորմութեան նուիրաց։

կը. Քահանայք մի՛ իշխեսցեն զնուիրեալ անասունս պահել կենդանի, այլ տացեն զենուլ և բաշխել աղքատաց։

կթ. Զաւուրս Քառասնորդաց կամ զԱռաջաւորաց մի՛ ոք իշխեսցէ լուծանել։

Ի. Խմեծի շաբաթու, ծրագալուցի մի՛ որք յառաջ քան զՊատարագն Հաղորդեսցի օրինաց, բայց եթէ վասն Հար-կի տկարութեան։

ԻԱ. Ժողովրդականք Հակառակ քահանայից մի՛ իշխեսցեն Հրաման տալ։

ԻԲ. Մի՛ գտցի քահանայ արբեցող կամ Հանդանակող, և մի՛ ունիցի արծաթագին աղախին. և մի՛ առնուցու կին ի կապելենից։

ԻԳ. Մի՛ ընաւ մտցէ կին ի վանս արեղայից, վասն Հաց եփելոյ կամ կով կթելոյ, և մի՛ վասն ո՛ և իցէ գործոյ։

ԻԴ. Անապատաւորք յառաջ քան զմուտս արևու դարձ-ցին յանապատ իւրեանց։

ԻԵ. Վանականք մի՛ օթեսցին ի տունս աշխարՀակա-նաց, այլ ի մերձակայ վանս. և եթէ չիցէ ի մերձուոջ վանք, ի տուն Աւագերիցու կացցեն։

ԻԶ. Վանականք մի՛ իշխեսցեն վաճառականութիւն առ-նել, և մի՛ պաՀեսցեն առանձին զերիվարս և զայլ ինչ այսպիսի։

ԻԷ. Եղանակաւորաց բնակութիւն մի՛ տացի ի տան։

ԻԸ. Յամենայն ամիս մի պաՀք պաՀեսցի։

ԳԼ. ԺԴ.

## Երրորդ ժողով է Դուին. ուր սահմանեցաւ Նոր Տոմար և Թուական Հայոց։

(Ամք Տեառն 551)։ Մովսէս յԵղուարդայ յԱրագա-ծոտն գաւառէ յաջորդեալ յԱթոռ Հայրապետութեան ի Դուին՝ յետ Յովհաննու Երկրորդի ի Գաբեղենից, ա-րար ժողով եպիսկոպոսաց և իմաստնոց անդէն ի Դուին յԱթոռն Հայրապետական, և բազում քննութեամբ նո-

րոգեաց և ուղղեաց զՏումարն Հայոց ըստ ձեռնտուութեան ժամանակին նորոգ սկսեալ զշրջանն՝ զորմէ փոյթ յառաջագոյն ունէր, յամի Տեառն 551․ յորմէ սկսաւ և թուական Հայոց․ զի ի յաջորդ 552 ամի ժողովոյն՝ եդև առաջին ամ Հայոց թուականին․ որով սկսան Հայք վարել այնուհետև նովին տումարաւ և զթուական ամացն անտի չափել, այն է ի 552 ամէն։

Յովհաննէս Կաթուղիկոս, պատմաբան զժողովոյն Մովսեսի յաղագս նորոգութեան Հայոց տումարին՝ վկայէ այսպէս։

"Յամի տասներորդի հայրապետութեան նորա (Մով-
"սեսի) և 31 ամին Խոսրովայ որդւոյ Կաւատայ արքա-
"յին Պարսից, լցեալ բովանդակեալ շրջանակ բոլորակի
"532 ամաց, ապա ի հրամանէ մեծին Մովսեսի՝ քեր-
"թողք և գիտունք արուեստին եդին զկարգ թուակա-
"նութեան Թորգոմեանս համարոյ՝ որ է շարժումն յա-
"ռաջախաղաց, և հիմն զանազան մասանց արուեստին։
"Իսկ այսպէս ըստ հայկականս լեզուի տուեալ տոմար
"տօնից տարեկանաց, յայնմ հետէ ոչ կարօտանային
"իբրև մուրացիկ իմն առնլով յազգաց զպիտանի խոր-
"հրդոցն արարողութիւնս„։

ԳԼ. ԺԵ.

## Չորրորդ ժողով ի Դուին վասն Կիւրիոնի կաթողիկոսին Վրաց։

(Ամք Տեառն 596)։ Կիւրիոն Վրացի վաներէց եկեղեցւոյ Կաթուղիկոսարանին Հայոց ըստ կացուցանելոյ Հայրապետին Մովսեսի, և քորեպիսկոպոս Այրարատայ, յառաջագոյն հասու լեալ մտաց ժողովոյն Քաղկեդոնի,

իբրեւ ձեռնադրեցաւ ի Մովսէսէ ի կաթուղիկոսութիւն Վրաց, քարոզեաց անդ ի Վիրս զդաւանութիւն ժողովոյն. որում հակառակ կացեալ Մովսէս եպիսկոպոս Ցրրտաւայ քաղաքի ի Վիրս ձեռնադրեալն ի Կիւրիոնէ, իբրեւ ամբաստանեցաւ առ Կիւրիոն, ի կոչել նմա Կիւրիոնի՝ փախեաւ առ Աբրահամ կաթուղիկոսն Հայոց փոխանորդ Մովսէսի, և չարախօս եղեւ զկաթուղիկոսէ իւրեանց, իբր զի յաղագս չընդունելոյ իւրոյ զժողովն Քաղկեդոնի՝ հալածեաց զինքն։

Ապա Աբրահամ կաթուղիկոս յետ բազում փոխադարձ թղթակցութեանց առ միմեանս, տեսեալ զհաստատուն միտս Կիւրիոնի ընդ Քաղկեդոնեան դաւանութիւնն, 'զոր ընկալեալ էին ի ձեռն նորա և Վիրք համօրէն, ժողով առնէ եպիսկոպոսացն ի Դուին յերրորդ ամի Հայրապետութեան իւրոյ յամի 596, և մատուցեալ անդ զբանս ժողովոյն Քաղկեդոնի գրեալ ի Կիւրիոնէ, և համարեալ զայն ըստ մտաց Թէոդորոսի և Նեստորի, հերքեցին զայն և նզովեցին զԿիւրիոն և զնոսին որք ընդունին զժողովն Քաղկեդոնի. արգել եւս նզովիւք, 'զի մի՛ ոք հաղորդեսցի ընդ Վիրս. որով 'և որոշեցաւ Եկեղեցին Հայոց ի Վրաց. որոց կաթուղիկոս ձեռնադրէր ցայն վայր ի կաթուղիկոսէն մերմէ։

Եւ Յովհաննէս կաթուղիկոս այսպիսի ունի բան զԿիւրիոնէ. “Այս Մովսէս զԿիւրիոն սրբոյ կաթուղիկէի վանաց երէց ձեռնադրէ յԱրքեպիսկոպոսութիւն Վրաց նահանգին և Գուգարաց և Եգերացւոց ըստ օրինակի կարգացն առաջնոց . . . իսկ ապա մերձ ի վախճանն Մովսէսի Կիւրիոն զճշմարիտ կարգաց և զկրօնից ուղղութիւնն ի բաց խզեալ, զոր ի հարցն մերոց ուղղափառաց աշակերտեալ էին կողմանքն այնոքիկ, միտէր զհետ ամբարիշտ

ժողովոյն Քաղկեդոնի, զկնի փառաւոր ամբարհաւաճու-թեանն իւրոյ ձգեալ դաւաճանեալ զնախահարս աշխար-հին: Ապա վաղվաղակի ի դերև ելանէք խոկացեալ նորայն դաւաճանութիւն,,:

Իսկ զժողովոյն հրամանաւ Աբրահամու և քաջին Սմ-բատայ՝ այսպէս. ,,Բայց մեծ Հայրապետն Աբրահամ Քրիստոսաւանդ կարգօք և առաքինահրաշ երկօք զուն ի վերայ գործէր, զի թերևս հնար լիցի դարձուցանել զԿիւրիոնն և զհնազանդեալսն նմա ի մոլորութեան ճա-նապարհէն. այլ նոքա ոչ թերևս զճշմարտութիւն պա-տուէին, քան թէ միայն զօշաքաղութեան և փառաւոր բարուց բոյսս ի վեր ընծիւղեալ աճեցուցանէին: Եւ այսպէս ապա զմարդադաւան տոմարն Լևոնի փոխա-նակէին ընդ առաքելական աւանդից երիցս երանեալ սուրբ Լուսաւորչին Գրիգորի, որ երաց նոցա զդուռն լուսոյ ճշմարիտ աստուածգիտութեան,,:

,,Իսկ այնուհետև բազում կղերիկոսաց. ժողով ա-րարեալ մեծի Հայրապետին Աբրահամու ի Դուին քա-ղաքի հրամանաւ քաջին Սմբատայ և այլոց ևս նախարա-րաց, աստուածամերձ և ամբիծ այցելութեամբ ուշ ե-դեալ աստուածային զրոյց և առաքելական իմացուածիւ ծանուցեալ զուղիղ դաւանութիւն սուրբ Հարցն, նզովե-ցին զԿիւրիոնն զպատուականիցն Եկեղեցւոյ Քրիստոսի և զամենայն հնազանդեալս և զհամախոհս չար հերեսիու-թեանն, և անէծս ցաւալիս տաղտկալից դաւանողաց մերոց նահանգիս ի վերայ եդին, ոչ միայն իսկ ընդ նոսա միաբանել, որք զկնի Կիւրիոնի չարափառին շեղեցան,,. և այլն:

## ԳԼ. ԺԶ.

### Վառաջին ժողովն է Կարին վասն ենանէ ժողովոյն Քաղկեդոնի։

(Ամք Տեառն 629)։ Դարձ արտաքեալ Հերակլի կայսեր ի պատերազմացն ընդ Պարսից ի Կարնոյ քաղաք Թէոդուպօլիս, և բազում խնամօք առ Հայս ցուցեալ զսէր յերեւեալ ի բաժնին Յունաց, լուեալ եթէ բազում խռովութիւն գոյ ի մէջ նոցա և Հայոց եղելոցն ի բաժնի Պարսից, ուրանօր էր և Հայրապետութիւն Հայոց ի Դուին, յաղագս ընդունելոյ եղելոյն ի բաժնի Յունաց զժողովն Քաղկեդոնի, հրամանաւ կայսեր գումարեցաւ գաւառական ժողով ի նմին քաղաքի յեպիսկոպոսաց Հայոց և ի Յունաց, ուր կոչեցեալ և Եզրի հայրապետի հրեշտակութեամբ Մժեժի Գնունւոյ զօրավարի Հայոցն եղելոց ի Յոյնս, յաղագս ընդունելոյ և պարսկահայոց զժողովն Քաղկեդոնի, տարաւ ընդ իւր Եզր հայրապետ ի Հայաստանէ զչորս եպիսկոպոսունս, զերկուս վարդապետս և զքեռորդի իւր զԹէոդորոս զեղբօրորդի Կոմիտաս Կաթողիկոսի, նաև զայլս, հանդերձ քանի մի իշխանօք՝ ըստ գրելոյ Զաքարեայ Ծործորեցւոյ և Ռուբենայ Սահառունւոյ։

Յայսմիկ ժողովի եպիսկոպոսաց ի յառաջարկել կայսեր ընդունել հայրապետին և եպիսկոպոսացն զժողովն Քաղկեդոնի, խնդրեն ի կայսերէն զհանգանակ հաւատոյ Եկեղեցւոյն Յունաց ձեռագրութեամբ նորին. և քննեալ զնոյն դաւանութիւն, յետ բազում խորհրդոյ ընդ իշխանս և ընդ եպիսկոպոսս ի վերայ այնորիկ, ի մի հաւանութիւն եկեալ ընկալան զժողովն Քաղկեդոնի ի ներկայութեան կայսեր, միաբանեալ ընդ Յոյնս ի բան խոստո-

վանութեան հաւատոյ յամի 629, և յառաջնում ամի հայրապետութեան իւրոյ։

Այս պարգևս ի կայսերէն ընկալեալ զերեք մասն Կողք գեղջ հայրապետն Եզր, իբրև վերադարձեալ մըտանէր ի Հայրապետական Աթոռն ի Դուին, յընդառաջելն նմին ուխտի Եկեղեցւոյն՝ ոչ ելանէր ընդ նոսա Յովհաննէս Վարդապետ փիլիսոփայ ի ժամանակին ըստ գրելոյ Յովհ. Կաթուղիկոսի պատմագրի, որ Փակականն էր կարգեալ ի հայրապետէն Եկեղեցւոյ սրբոյն Գրիգորի անդ ի Դուին ի Հայրապետական Աթոռն, յաղագս ոչ տանելոյ հայրապետին և զնա ընդ իւր առ կայսր ի Կարին վասն բանի Քաղկեդոնի ժողովոյն, զխտացեալ թէ ընկալեալ է Հայրապետին զայն ժողով. զոր լուեալ հայրապետին, բռնութեամբ ածեալ առ իւր, իբրև հարցանէ զպատճառ չելանելոյ նորա ընդ առաջ իւր, պատասխանի տայ Յովհաննէս ըստ գրելոյ Յովհ. Կաթուղիկոսի, "խըրոխտումն և ամբարհաւաճութիւն յիս ոչ գտանի, այլ ջատագով ճշմարտութեանն լինել հաւանիմ. բայց քո յիրաւի կոչեցաւ անունդ Եզր, վասն զի՝ յեզր հաներ զՀայաստանեայս, քակեալ զսահման հաւատոյ հարցն մերոց ուղղափառաց, և խրամատեալ զցանկն առաքելական, և ի մարդադաւանն տոմարն Լևոնի կործանեալ,,։

ԳԼ. ԺԷ.

Հինգերորդ ժողովն ի Դուին վասն բարեկարգելոյ զեկեղեցականս և զաշխարհականս։

(Ամք Տեառն 645)։ Յառաջնում նուագի անդ աւերանաց Դուին քաղաքի ի Հագարացւոց՝ յամի Տեառն 639, յորում էր Ն. Աթոռն Հայրապետական, ժողովով

Նախարարաց և յորդորմամբ Թէոդորոսի Ռշտունւոյ յաջորդեալ Ներսէսի ի Կաթուղիկոսութիւն Հայոց «Ներսէս Երրորդ Եպիսկոպոս Տայոց՝ կոչեցեալ Շինող. յաղագըս բազմաց հռչակաւոր եկեղեցեացն ի նմանէ կառուցման ի Հայաստան, յաղագս երից գլխաւոր պատճառաց և անկարգութեանց մտելոց յԵկեղեցիս Հայոց՝ արար ժողով ի Դուին ի վեցերորդումն ամի Հայրապետութեան իւրոյ, յոր գումարեցան եօթնևտասն եպիսկոպոսք և բազում վարդապետք և իշխանք ոչ սակաւք։

Երեք այսոքիկ էին ի ժամանակին անկարգութեանց պատճառք լեալ ի Հայաստան և յեկեղեցականս։

Նախ՝ յայնմ ժամանակի յայտնեալ էին մոլորական գրեանք յանուն Յովհաննու Մայրավանեցւոյ, և աշակերտի նորին Սարգսի, որ և թարգմանեալ էր զաղանդաւոր գիրս Յուլիանոսի Աղիկառնացւոյ, զորմէ Յովհաննէս Կաթուղիկոս Պատմ. ոչ տայ կարծիս հերձուածողութեան վասն այնպիսւոյ իմաստութեան առն, այլ ի թշնամեաց հաւատոյ զայն համբաւ հանեալ զնմանէ. բայց որ ինչ յաղագս աշակերտի նորին՝ ոչ հակառակի այնմ. զի ասէ, «Զսմանէ (զՅովհաննէ) ապա համբաւ «ամբաստանութեան պատմի, իբր դառն հերձուածս «նմա մուծանել յԵկեղեցի սուրբ. սակայն ես ոչ կարեմ հաւանութիւն իմոյ կամացս տալ վասն այնպիսւոյ առնն . . . այլ կարծիս ինձ ընդունի սիրտ իմ ի «հակառակադիր և ի խորհմանց այլոց կամաց այս գործ «համբաւոյ լեալ։ Բայց եթէ սակս Սարգսի աշակերտի «նորա համբաւէ ոք զայսպիսի չար հերձուածս ընձիւղել, «և ես ոչ վասն նորա հակառակիմ, զի իմ իսկ ընթերցեալ է զգիր Ճառսս նորա։ Այլ վասն զի Յովհ. ի բաց

« յիւրմէ հալածեաց զՅարդիսն, սակս այնորիկ արտաքոյ
« կամաց նորա առեալ զնորայն հերձուած »։

Երկրորդ, մտեալ էին թուլութիւնք և անկարգութիւնք ինչ յեկեղեցականս, նաև բռնութիւնք յաշխարհական իշխանս։

Երրորդ, ի յաճախել շարականաց, այլևայլ շարականս երգէին, և զայլոցն արհամարհելով՝ խռովութիւնս յարուցանէին։

Ապա յաղագս այսոցիկ ի սմին ժողովի նզովեն զամենայն հերետիկոսս և զամենայն հերձուածողական գիրս, ընդ որ և զժողովն Քաղկեդոնի համարեալ զայն նպաստ արծարծելոյ հերետիկոսութեան Նեստորականաց և խռովութեան ի մէջ ազգաց, ուր և յաղագս ժառանգաւորաց Եկեղեցւոյ և աշխարհականաց՝ սահմանեն զերկոտասան կանոնս, որոց համառօտութիւնն է։

ա. Եպիսկոպոսն զայլոյ եպիսկոպոսի վիճակ մի՛ յափշտակեսցէ։

բ. Եպիսկոպոսն մի՛ իշխեսցէ յայլում վիճակի սեղան հաստատել, կամ քահանայ ձեռնադրել։

գ. Եպիսկոպոսն այցելութիւն արասցէ ի վիճակի իւրում ի վանորայս, ի գեղորայս և ի հիւանդանոցս, և մի՛ իշխեսցէ առնուլ ինչ յումեքէ բռնութեամբ։

դ. Ժառանգութիւն Եկեղեցւոյ մի՛ վաճառեսցի այլում։

ե. Քահանայք և պաշտօնեայք եթէ յուլասցին ի պաշտամանց Եկեղեցւոյ, պատժեսցին յԵպիսկոպոսէն։

զ. Որք թողեալ զգործ քահանայութեան կամ սարկաւագութեան, զբաղին յիրս աշխարհի կամ յորս, զրկեսցին ի հասից Եկեղեցւոյ։

Նոյն քանզի ի գերութեան աշխարհին Հայոց՝ որով գերեցան այր և կանայք, բազումք ի մնացելոց անտի՝ առանց լսելոյ զմահ ամուսնոյ իւրեանց պսակեցան ընդ այլում, վասն այնպիսեաց կարգեցաւ այս կանոն եօթներորդ։

Է. Որք առանց ստուգելոյ զեօթն ամ յետ գերութեանն լսել զկենդանութիւն ամուսնոյ իւրեանց, ամուսնացան ընդ այլում, անվաւեր լիցի պսակ նոցա։ Իսկ եթէ յետ եօթն ամաց ամուսնացեալ իցեն յանգէտս, ի դառնալ ամուսնոյ իւրեանց ի գերութենէ, թողցեն զոր առին, և դարձցին առ առաջինսն. և ապաշխարեսցեն ըստ սահմանելոյ եպիսկոպոսին. սոյնպէս եղիցի և որք ի գերութեան գոլով՝ ամուսնացան։

Ը. Քառանդաւորք եկեղեցւոյ եթէ անօրդի իցեն, զինչս իւրեանց զանշարժս՝ որք կարգեալ են նոցա յեկեղեցւոյ, մի՛ իշխեսցեն տալ մերձաւորաց իւրեանց. իսկ եթէ կամիցին որդեգրել զոք, յետ մեռանելոյ իւրեանց՝ եթէ քահանայացի որդեգրեալն, նա վայելեսցէ. ապա թէ չիցէ արժանի քահանայութեան, թողցին եկեղեցւոյ, այլ՝ շարժական ինչք նոցին տացեն մերձաւորաց։

Թ. Եկեղեցականք ազատ լիցին ի հարկաց. և եթէ իշխան ոք առցէ ի նոցանէ զհաս, կամ ծառայեցուսցէ զնոսա, զրկեսցի յօրհնութենէ եկեղեցւոյ, և մի՛ ոք ի քահանայից մատուսցէ պատարագ վասն նորա, մինչև ապաշխարեսցէ։

Ժ. Աշխարհական իշխանք մի՛ իշխեսցեն կարգել վանահայր կամ ընկենուլ ըստ կամաց իւրեանց, և մի՛ բնակեսցին ընտանեօք ի վանս։

ԺԱ. Իշխանք մի՛ առցեն հարկս ի տկարաց՝ որ ի հիւանդանոցս։

ԺԷ. Իշխանք և հեծեալք ի հասանել ի գիւղ՝ մի՛ ագահիցեն ի վանս ուտել և ըմպել:

Եղև յաւարտման ժողովոյն՝ Հայրապետն Ներսէս յանձն արար Բարսեղ Վարդապետի՝ առաջնորդին Դպրավանից ի Շիրակ՝ զորոշումն առնել շարականաց ընտրելով զպիտանին յանպիտանեաց: Նա զորս ընտրեաց սա ի շարականացն՝ կոչեցաւ Ճ՚ընտիր. զի և թիւքն յայն անուն մականուանեամբ Ճ՚ոն կոչէր:

Բայց ի յաջորդ ամի կայսրն Կոստանդին եկեալ ի Դվին և անդ յեկեղեցւոջ Կաթուղիկոսարանին հրամայէ հոռոմ քահանային պատարագ մատուցանել, ուր կայսրն և Կաթուղիկոսն քարոզելով զժողովն Քաղկեդոնի, կամայ ակամայ ընդունի զայն և որք ընդ իւր եպիսկոպոսք՝ որպէս գրէ Սեբէոս:

## ԳԼ. ԺԸ.

## Վեցերորդ ժողովն Դուին վասն ժխտելոյ զժողովն Քաղկեդոնի:

(Ամք Տեառն 648): Վերակացուք զօրացն Յունաց թողեալք ի կայսերէ ի դառնալ նորա ի Կոստանդնուպօլիս՝ ի վերայ աշխարհին Հայոց, յաղագս ինչ ինչ անկարգութեանց իւրեանց և բռնաւորութեանց ի վերայ ժողովրդեան և եկեղեցականաց Հայոց ըստ հրապուրանաց ոմանց քահանայից և աշխարհականաց թուլամորթ անձանց ընդունողաց զժողովն Քաղկեդոնի՝ ի նեղել զՀայս, որովք լինէին առիթք գայթագղութեան և խռովութեան բազմօք ի ժողովուրդս՝ յոլով կշտամբանս և նզովս ի Հայոց ընկալեալ, որք խորշեալ ևս ի նոցունց իբրև ի չարափառաց, բողոքեն նոքա զՀայոց առ կայսր

ամբաստանեալ, թէ Հայք ընդ մեզ իբրև ընդ հերետիկոսս վարին և ամենայն իրօք խորշին ի մէնջ վասն լինելոյ մեր քաղկեդոնահաւատս. իբր զի որ Հայք յոռոմն առերեսս ընդ Հայրապետին Ներսէսի հաղորդակից կայսերն գտան ի Պոլիս, և հաղորդեցան ևս եպիսկոպոսք ոմանք ընդ Հայրապետին ի խորհուրդ սրբոյ պատարագին ի նշան ընդունելոյ զժողովն Քաղկեդոնի, մնացեալ ի քահանայից Յունաց որ ընդ կայսերն էին ի Պոլիս, այժմ յետս դարձեալ խորշին ի մէնջ։

Զամանէ Յովհ. Կաթուղիկոս այսպէս վկայէ. «Ապա հեզաբար գնացեալ (Կոստանդեայ կայսեր) ի քաղաքն Պոլիս, իջեւանս ի տան կաթուղիկոսարանին արարեալ, և անդ ապա հրամայէ Հոռոմ քահանայից պատարագ ի սուրբ եկեղեցւոջն մատուցանել, և քարոզել ի նմա զժողովն Քաղկեդոնի, և հաղորդեցան օրինացն ի միասին թագաւորն և Հայրապետն մեր Ներսէս, այլ և ժողովեալ ևս եպիսկոպոսունքն։

Եւ այսպէս ապա թէ կամաւ թէ ակամայ պատճառք զայթագղութեան բազմաց այս լեալ, շարժեցաւ հաւատ որ ընձիւղեալ էր ի սրբոյն Գրիգորէ, և ցայն վայր անշուշտ կացեալ մնացեալ։

Իբրև կայսրն լսէ զայնպիսի ամբաստանութիւն վերակացուացն զՀայոց, ոչ անսացանի գրէ բարկութեամբ հրրովարտակ առ Հայրապետն Ներսէս, առ եպիսկոպոսունս, և առ կիւրապաղատն Սմբատ Վարազտիրոցեան, և առ զօրավարն Թէոդորոս Ռշտունի, յաղագս սիրով և խաղաղութեամբ գնալոյ ընդ Հոռոմս և ոչ խոտելոյ զընկալեալ ժողովն Քաղկեդոնի, ըստ որոյ և պահանջէ յամենեցունց նոցա զգիր հաստատութեան։

Առ այս հրովարտակ կայսերն ժողով արարեալ [illegible] Դունին Եպիսկոպոսաց և իշխանաց յամի Տեառն [illegible]8, հրամանաւ Կաթուղիկոսին և Սմբատայ Ասպուրապ[illegible]ատի և Թէոդորոսի Ռշտունւոյ, մերժեն զժողովն Քաղ[illegible]կեդոնի առաջի Դաւթի փիլիսոփայի, որ բերեալ էր զհր[illegible]մանն կայսերն, ասելով այսպէս, “Մեք նոր աւանդ[illegible]թիւնս ոչ ընդունիմք, զոր ինչ ընկալեալ եմք վար[illegible]պետութիւն հաւատոյ ի Հայրապետէն մերմէ Գրիգոր[illegible] և յերից սուրբ ժողովոց, և ի սրբոց Թարգմանչա[illegible]երաց՝ զայն միայն ունիմք հաստատուն, զայլ ինչ [illegible] կարեմք յանձն առնուլ„:

Եւ առ հրովարտակ կայս[illegible] զայսչափ և եթ պատասխանեն զոլով ինքեանց ի[illegible]ութեան, այլ ամբողջութիւն մնացն է. Մեք աղօթող[illegible]ք վասն ձեր և խնդրեմք թոյլ տալ մեզ կալ ի հաւա[illegible] մեր, որպէս թոյլ ետուն և Թագաւորք Պարսից Կա[illegible] և Խոսրով:

## ԳԼ[illegible]ԺԹ.

### Առաջին ժողով է Մանազկե[illegible] հակառակ Քաղկեդոնականաց[illegible]

(Ամք Տեառն 651): Յովհաննէս [illegible]րդապետ ի սահմանաց Մանազկերտոյ, Մանազկերտացի [illegible]չեցեալ, ի Տեղապահութենէ գահակալութեան Ներսիսի [illegible]որորդի՝ ըստ կոչուցանելոյ զօրավարին Հայոց Թէոդորոսի [illegible]տունեաց տեառն, որ արդէն գրգռեալ էր ընդդէմ Հայ[illegible]պետին ընդ հաղորդութիւննորին ընդ Յոյնս ի բանս Քաղ[illegible]նի հաւատոյն և պատճառ լեալ հրաժարելոյ Հայրապետի[illegible] յաթոռոյ ի Տայս, տեսեալ ըստ գրելոյ Հ. Չամչեանի[illegible] թէ Հայք ըստ մեծի մասին պահս Քառասնորդաց ըստ[illegible]

օրինակի Յունաց պահեն ի բանադրանելոյ զօրավարին Յունաց, և ոմանք զտօն Ծննդեան առանձին կատարեն, և Քաղկեդոնեայք ոմանք սկսեալ են խմորուն և ջրախառն պատարագել, և զայլս այսպիսի միտեալս ի դաւանութիւն Յունաց, հարաւ ի նախանձ բարկութեան, և հաւանեցուցեալ զեպիսկոպոսս և զվարդապետս Հայոց զինել ընդդէմ նոցա և հնարել խափանել զայն ամենայն, գնայ ի Մանազկերտ հանդերձ միաբանելովքն, զի ի Դունին առ լինելոյ բանակին Յունական՝ ոչ իշխեաց առ ահին, և անդ ապա ժողով արարեալ, նզովեաց զժողովն Քաղկեդոնի և զտումարն Լեւոնի, ևս և զժողովն Կարնոյ հանդերձ Եզր կաթուղիկոսիւ, որ անդ ուրեմն ընկալեալ էր ըզՔաղկեդոնական դաւանութիւնն, յառաջ բերեալ փաստըս ապացուցականս, իբր Քաղկեդոնականաց բաժանաբար ասացեալ զերկու բնութիւն ի Քրիստոս. ընդ դէմ որոյ սահմանեաց ասել մի բնութիւն ի Քրիստոս անշփոթ։

Կարգեցին ի սմին ժողովի գումարեալ եպիսկոպոսք և զհինգ կանոնս ընդ դէմ արարողութեանց և ծիսից Յունաց, զորս արդէն ընկալեալ էին ի Հայոց ոմանց ի Դունին, և են այսոքիկ կանոնք։

ա. Ի պահս քառասնորդաց լուծանել զշաբաթ և զկիւրակէ ձկամբք և կթովք, ձիթով և գինւով. որպէս զի յայլ աւուրս քառասնորդաց չուտիցեն բնաւ զայնպիսիս։ Մի՛ ոք, ասէ, խղճեսցի ուտել ի կթոց, երբ ուտէ զձուկն և զձէթ, այլ ամենայն միաճաշակ համարեսցի ընդ դէմ համարման Յունաց, որ խտիր առնեն ընդ մէջ կըթոյն և ձկան և ձիթոյ։

բ. Չառնել ումեք բնաւ խմորուն զհաց նուիրացն։

գ. Չխառնել քահանայից բնաւ ջուր ի բաժակն։

դ. Չբաժանել զտօն Ծննդեանն ի Յայտնութենէ։

Ըստ այս հրովարտակ կայսերն ժողով արարեալ ի Դուին եպիսկոպոսաց և իշխանաց յամի Տեառն 648, հրամանաւ Կաթուղիկոսին և Սմբատայ Կիւրապաղատի և Թէոդորոսի Ռշտունւոյ, մերժեն զժողովն Քաղկեդոնի առաջի Դաւթի փիլիսոփայի, որ բերեալ էր զհրաման կայսերն, ասելով այսպէս, "Մեք նոր աւանդութիւնս ոչ ընդունիմք, զոր ինչ ընկալեալ եմք վարդապետութիւն հաւատոյ ի Հայրապետէն մերմէ Գրիգորէ և յերից սուրբ ժողովոց, և ի սրբոց Թարգմանչաց մերոց՝ զայն միայն ունիմք հաստատուն, զայլ ինչ ոչ կարեմք յանձն առնուլ"։

Նա առ հրովարտակ կայսերն զայսչափ և եթ պատասխանեն գրելով ինքեանք ի նեղութեան, յոր ամբողջութիւն մնացին է. Մեք աղօթող եմք վասն ձեր և խնդրեմք թոյլ տալ մեզ կալ ի հաւատս մեր, որպէս թոյլ ետուն և թագաւորք Պարսից Կաւատ և Խոսրով։

## ԳԼ. ԺԹ.

### Առաջին ժողով է Մանազկերտ հակառակ Քաղկեդոնականաց։

(Ամք Տեառն 651)։ Յովհաննէս վարդապետ ի սահմանաց Մանազկերտոյ, Մանազկերտացի կոչեցեալ, ի Տեղապահութենէ գահակալութեան Ներսիսի երրորդի՝ ըստ կացուցանելոյ զօրավարին Հայոց Թէոդորոսի Ռշտունեաց տեառն, որ արդէն գրգռեալ էր ընդդէմ Հայրապետին ընդ հաղորդութիւննորին ընդ Յոյնս ի բանս Քաղկեդոնի հաւատոյն և պատճառ լեալ հրաժարելոյ Հայրապետին յաթոռոյ ի Տայս, տեսեալ ըստ գրելոյ Հ. Չամչեանի թէ Հայք ըստ մեծի մասին պահս Քառասնորդաց ըստ

օրինակի Յունաց պահէին ի բռնադատելոյ զօրավարին Յունաց, և ոմանք զտօն Նեստորեան առանձին կատարէին, և Քահանայք ոմանք սկսեալ էին խմորուն և ջրախառն պատարագել, և զայլս այսպիսի միտեալս ի դաւանութիւն Յունաց, հարեալ ի նախանձ բարկութեան, և հաւանե-ցուցեալ զեպիսկոպոսս և զվարդապետս Հայոց գումարել ընդդէմ նոցա. և հնարել խափանել զայն ամենայն, գնայ ի Մանազկերտ հանդերձ միաբանելովքն, զի ի Դուին առ լինելոյ բանակին Յունական՝ ոչ իշխեաց առ ահին, և անդ ապա ժողով արարեալ, նզովեաց զժողովն Քաղկե-դոնի և զտումարն Լևոնի, ևս և զժողովն Կարնոյ հանդերձ Եզր կաթուղիկոսիւ, որ անդ ուրեմն ընկալեալ էր ըզ-Քաղկեդոնական դաւանութիւնն, յառաջ բերեալ փաս-տըս ապացուցականս, իբր Քաղկեդոնականաց բաժանա-բար ասացեալ զերկու բնութիւն ի Քրիստոս. ընդդէմ որոյ սահմանեաց ասել մի բնութիւն ի Քրիստոս անշփոթ։

Կարգեցին ի սմին Ժողովի գումարեալ եպիսկոպոսք և զհինգ կանոնս ընդդէմ արարողութեանց և ծիսից Յու-նաց, զորս արդէն ընկալեալ էին ի Հայոց ոմանց ի Դուի-ն, և են այսոքիկ կանոնք։

ա. Ի պահս քառասնորդաց լուծանել զշաբաթ և զկիւրակէ ձկամբք և կթովք, ձիթով և գինւով. որպէս զի յայլ աւուրս քառասնորդաց չուտիցեն բնաւ զայն-պիսիս։ Մի՛ ոք, ասէ, խղճեսցի ուտել ի կթոց, երբ ուտէ զձուկն և զձէթ, այլ ամենայնն միաճաշակ համարեսցի ընդ-դէմ համարման Յունաց, որ խտիր առնեն ընդ մէջ կը-թոցն և ձկան և ձիթոյ։

բ. Չառնել ումեք բնաւ խմորուն զհաց նուիրացն։

գ. Չխառնել քահանայից բնաւ ջուր ի բաժակն։

դ. Չբաժանել զտօն Նեստորեանն ի Յայտնութենէ։

Ե. Չհաղորդել յաւուր Աւագ Հինգշաբաթի ըստ սովորութեան Յունաց, որպէս զի (ասէ) զատեալ որոշեսցուք ամենայն կարգօք յերկաբնակ աղանդոյն Քաղկեդոնի։

Այս Յովհաննէս վարդապետ Մանազկերտցի դրէ յաղագս այսր ժողովոյ զճառ մի յընդունելութիւն ժողովոյն ի մէջ ազգին. ըստ որոյ և յետ ժամանակի այս ժողով հաշտեցաւ յանուն Յովհաննու Մանդակունւոյ, որ զկարգ մեծ ի մէջ ազգին ունէր։

## ԳԼ. Ի.

Արտաքին ժողով է Պարտաւ, մերձ է Գանձակ Աղուանից, վասն ընդդիմութեան կաթողիկոսին Աղուանից և կանոնաց նոցա։

(Ամք Տեառն 709)։ Յաղագս ընդունելոյ կաթողիկոսին Աղուանից Ներսիսի և դշխոյի նոցին զժողովն Քաղկեդոնի՝ Եղիա կաթողիկոս յԱրճիշոյ յետ բազմադիմի յորդորանաց յետս կալոյ յընդունելութենէ ժողովոյն, տեսեալ զհաստատութիւն նոցին, և լուեալ զամբաստանութիւն Աղուանիցն զկաթողիկոսէն և ըզդշխոյէն յաղագս սոցին իրաց՝ մատնէ զնոսին կապանօք ի ձեռս ամիրապետին Օմարայ, որոյ ընդ իշխանութեամբ էր ի նմին ժամանակի աշխարհ Հայաստան։ Եւ ինքն Եղիա գնացեալ յԱղուանս աթոռանիստն Պարտաւ, առնէ ժողով եպիսկոպոսաց, որոց հաւանութեամբ ձեռնադրէ նոցին ի կաթողիկոսութիւն զՍիմէոնն ոմն փոխանակ Ներսիսի. յորում և Սիմէոնն յաղագս բարեկարգութեան աշխարհին Աղուանից սահմանէ զքանի մի կանոնս։

## Գլ. ԻԱ.

### Եօթներորդ ժողով է Պօլսին վասն բարեկարգութեան Եկեղեցւոյ։

(Ամք Տեառն 719)։ Ի յաջորդել Յովհաննու Դրդի Իմաստասիրի ի գահակալն Տաշրաց յաթոռն Հայրապետական յամի 718, վերստին մտեալ էին յազգս Հայոց ինչ ինչ Յունական ծէսք և արարողութիւնք և անկարգութիւնք ի Պօղիկեանց, նախ՝ աղմուկ շփոթից լինէր բազում ուրեք ի կեղծաւորութենէ ամենաչար աղանդաւորացն Պօղիկեանց, որք եկեալ էին ի Հայս յաւուրց Եղիայի։

Երկրորդ՝ յանկարգութենէ ոմանց քահանայից և աշխարհականաց՝ բազում ինչ անպատշաճ գործէին յեկեղեցւոջ և արտաքոյ։

Երրորդ՝ հակառակաւորք ոմանք եկեալք ի մասնէ Յունաց առ Հայաստանեայս, վիճէին ի վերայ ծիսից եկեղեցւոյ, պնդելով՝ թէ խմորուն և ջրախառն պատարագ է պատարագել. և առանց խաչեցարի զՍուրբ Աստուածն երգել. և զտօն Ծննդեան ի 25 դեկտեմ. կատարել առանձին. զիւղ երեխայից և հիւանդաց ի կէր առնուլ. յաւուրս քառասնորդաց ի շաբաթու և ի կիւրակէի չուտել զձուկն և զձէթ, (այս կանոն սահմանադրեցաւ յայնժամ ի Մանազկերտի Յովհաննէս վարդապետէ Մանազկերտացւոյ. զոր և բազում Հայաստանեայք վարէին անխախտ ընդդէմ Յունական ծիսից). և այլք բազում բանք։

Յայսպիսի յանկարգութիւնս շեղեալք ոմանք՝ սկսան յայլ ինչ խոտորել արտաքոյ կարգի, ոմանց խմորուն և այլոց ջրախառն պատարագել, բազմաց զՍուրբ Աստուածն ի դէմս Երրորդութեան առանց խաչեցարի երգելով և

կլիտոյ յԱրղին սուրբ խաչեցարիւ հանդերձ, շարժեցին զանարատ ծէս Հայաստանեայց սրբոյ եկեղեցւոյ, անարատ ընկալեալ ի սրբոյն Գրիգորէ, յորոց առհասարակ ազգն դայթագղեալ, որ զնախնի սովորութիւն ունէին առաջնորդ յարարողութիւնս, զուն գործէին հալածել զամենեսին զնոսա միաբանել զհետ Յունական արարողութեանց. և քանզի մեծ Հայրապետն Յովհաննէս Իմաստասէր ի դառնութեան յայնմիկ ժամանակի փոյթ ունէր ի խաղաղութեան զազգն պահել և հօտին իւրում ուղղութեամբ լինել խնամատար, Ժողով մեծ գումարեաց եպիսկոպոսաց մեծին և փոքուն Հայոց ի Դուին մայրաքաղաքի յԱթոռն Հայրապետական. յորում ինքնին Հայրապետն առաջի եդեալ զվիճակ եկեղեցւոյն յայնմ ժամանակի և զառաջին բարեզարդութիւնն կարգեալ ի սրբոց Հայրապետաց ի Նախնումն, և յետ երկարաբան գեղեցիկ ատենաբանութեանց իւրոց յաղագս այսոցիկ, կարգէ ի Ժողովի յայնմիկ զերեսուն և երկու կանոնս՝ զորս դիցուք ի սորին:

Իսկ յաղագս մերժելոյ զմոլորութիւն Յուլիանեայ Աղիկառնացւոյ և զգիրս նորա հանդերձ ամենայն համախոհիւք նորին, արար Ժողով ի Մանազկերտ. զի Անաստաս պատրիարգ լուեալ յերկուց ոմանց Ասորի խռովարար բանսարկու անձանց ի Բարշապհոյ և ի Գաբրիէլէ, զորս հալածեալ էր սրբոյ Հայրապետին մերոյ ի Հայաստան աշխարհէ յետ անսաստութեանց նոցին նորին խրատու, գրէ առ մեր Հայրապետ, թէ ըստ լսելոյ իւրոյ՝ Հայք խոտորեալ են ի մոլորութիւնս Յուլիանոսի Աղիկառնացւոյ, և առ աչօք զանօրէնութիւնն Քրիստոսի ասեն, ըստ որոյ ազդ առնէ զգուշացուցանել զազգս մեր յայնպիսի մոլորութենէ, և խնդրէ ևս Ժողովով մերժել զնոյն աղանդ

Աղեկսանդրացւոյն. և առ այս առաքէ առ Հայրապետն զվեց եպիսկոպոսունս. որք ի միասին ընդ Հայրապետին և ընդ վեց եպիսկոպոսաց մերումս Հայաստանեայց եկեղեցւոյ ի Ժողովին ի Մանազկերտ հերքեցին զՅուլիանոսի գիրս և զհամախոհս նորին, և նզովեցին ևս զերկուս զայնոսիկ զարս բանսարկուս ատորիս զՍարշապուհ և զԳաբրիէլ։

Այս Ժողովն արարեալ ի սորա Հայրապետէն յամեօթն ամաց առաջնոյն՝ եղև Երկրորդ Ժողովն ի Մանազկերտ։

Եւ յաղագս բարեկարգութեան եկեղեցւոյ կանոնադրութիւնք սորին այսոքիկ են, որպէս ի վեր անդր յիշեցաւ, որոց ընդարձակն տպագրեալ է ի գիրս Նորին ի Վենետիկ։

ա. Եկեղեցականք յարբեցութեան գտեալ՝ մի՛ իշխեսցեն մատչիլ ի խորհուրդ, բայց եթէ յետ արժանաւոր ապաշխարութեան։

բ. Աշխարհականք արբեցողք եթէ ոչ զգաստասցին՝ որոշեսցին։

գ. Յաւագ շաբաթու մի լիցի պսակ։

դ. Որք առ վաղիւ պսակելոց են, մի՛ յարբեցութեան զեղխեսցին յերեկոյն։

ե. Ի զատկէ մինչև ի Պենտէկոստէ մի՛ լիցի հարսանիք։

զ. ՅԱղուհացսն յաւուրս շաբաթու և կիւրակէի պատարագ մատուսցի անխափան։

է. Պահել կամ լուծանել (ձիթով և ձկամբ և կըթովք) զշաբաթ և զկիւրակէ յաւուրս աղուհացից, յիւրաքանչիւր կամս թողեալ լիցի, միայն թէ պարկեշտութեամբ և առանց գայթագղութեան և բամբասանաց։

ը. Ի հացն և ի գինին՝ որք մատչին ի սեղան պատարագի, մի՛ նորաձևս ինչ առնել. այլ հաց անխմոր և գինի անապակ ընծայել ի խորհուրդ ըստ նախնի աւանդութեան ազգին՝ առեալ ի Լուսաւորչէ։

Թ. Զսուրբ մեռոնն Հայրապետն օրհնեսցէ։

Ժ. Զձէթն երախայութեան յատուկ ի կիր առնուլ, զոր քահանայն օրհնեսցէ այնչափ՝ որչափ պիտոյ է։

ԺԱ. Զձէթ օծութեան հիւանդաց քահանայն օրհնեսցէ ըստ իւրում աղօթից և ըստ ժամուն պիտոյից։

ԺԲ. Սեղան պատարագին մի՛ լիցի փայտեղէն, այլ քարեղէն և անշարժ։

ԺԳ. Աւազանն մկրտութեան քարեղէն լիցի։

ԺԴ. Յընծայել ուրուք յերախայութիւն՝ առ դրան մկրտարանին օծցի, և ապա տարցի ի մկրտարանն։

ԺԵ. Որ հանդերձեալ են պսակիլ, տարցէ զնոսա քահանայն յեկեղեցին և անդ պսակեսցէ։

ԺԶ. Սոյնպէս արասցեն և որք ընդունելոց են զերկրորդ պսակ. իսկ եթէ յառաջ քան զպսակելն գործեալ իցեն ինչ, ապաշխարեսցեն նախ, և ապա (եթէ) չկամիցին պսակիլ, կամ ի միմեանց մեկնել, որոշեսցեն յեկեղեցւոյ։

ԺԷ. Յերեկոյի շաբաթուն զԼոյս զուարթն ասել, և զպաշտօն Մարտիրոսաց կատարել, և ծունր չկրկնել։

ԺԸ. Ի գիշերի՝ յոր լուսանայ կիւրակէն, գիշերապաշտօն առնել, և տքնութեամբ և աղօթիւք զանցեալ աւուրց զյանցանսն ջնջել, և պատրաստել զանձն յարժանաւոր ընդունելութիւն հաղորդութեան, ակնկալեալ անձկանօք Տեառն։

ԺԹ. Յառաւօտուն և յերեկոյի և ի ժամ Պատարագի զՍուրբ Աստուածն ասել։

Ի. Յերգելն զՍուրբ Աստուածն ի դէմս Որդւոյ՝ մի՛ նաւակցուցանել ի շնորհաց խաչին Քրիստոսի միանգամ և եթ խաչեցար ասելով, այլ երիցս։

ԻԱ. Ի գիշերային ժամուն զամենայն կանոնեալ սաղ-

մասն և զատ ի Յովհաննէ Մանդակունւոյ կարգեալ քարոզն և զաղօթսն ասել։

իբ. Զառաւօտեան ժամու կարգսն անթերի կատարել։

իգ. Նոյնպէս և զերեկոյինն։

իդ. Եւ զԿիւրակէին ըստ պատշաճի։

իե. Եւ զԳիշերապաշտամանն ըստ կանոնաց։

իզ. Ի տօնի Յայտնութեան կատարել զջրոյն օրհնութիւն, և ի Ծաղկազարդի ոստս բառնալ։

իէ. Ի Յայտնութեան ընթեռնուլ զՄկրտութեան և Ծննդեան աւետարանս, զի որպէս տօնն երկուցն ևս հասարակաց է, նոյնպէս և կարդացմունքն։

իը. Եթէ ոք չինեսցէ խաչ յինչ և իցէ նիւթոց, տացէ քահանային օրհնել և օծանել մեռոնաւ։

իթ. Պաշտել զխաչն օրհնեալս, և երկիր պագանել այնըմ, և մի՛ հրաժարել յերկրպագութենէ, թէ և մեռանել հասանիցէ։

լ. Զօր կիւրակէի մինչև ցերեկոյ պատուել, և մի՛ մինչև ցճաշն։

լա. Մի՛ անխտիր հաղորդութիւն առնել ընդ յիմար հերձուածողս, զի պատկառեսցին։

լբ. Մի՛ բնականալ ի տեղիս չարաղանդիցն Պօղիկեանց, մի՛ աղօթել անդ և մի՛ ընտանենալ առ նոսա. և մի՛ խօտակից լինել ընդ նոսա, այլ ամենևին հեռանալ և գարշել ի նոցանէ, զի որդիք սատանայի են նոքա, և լուցկիք յաւիտենական հրոյն. և եթէ ոք յարեսցի ի նոսա կամ բարեկամասցի, խոշտանգանօք և ծանր պատժովք պատուհասեսցի, մինչև զգաստասցի. և եթէ վերստին յարեսցի ի նոսա, հատցի իբրև ժանտախտ յանդամոց Եկեղեցւոյն Քրիստոսի։

ԳԼ. ԻԲ.

Երկրորդ ժողովն է Պարտաւ, ուր եդան քսան և չորս կանոնք վասն բարեկարգութեան Եկեղեցւոյ։

(Ամք Տեառն 768)։ Սիոնն Կաթուղիկոս՝ երջանիկ այր՝ Եպիսկոպոս Աղձնեաց՝ յաջորդեալ երկրորդն Տրդատայ ի Հայրապետութիւն ի հրամանէ Սուլէյման ոստիկանի աշխարհին Հայոց ի Դուին, խնամ եդ ժողովով բառնալ զթուլութիւն և զանկարգութիւնս և զբռնակալութիւնս և զօշաքաղութիւնս յոմանց Առաջնորդաց Եկեղեցւոյ, և զարման ուղղութեան մատուցանել նմին և անարատ հովուել զհօտ բանաւոր ոչխարաց տանն Աստուծոյ։

Այսու հոգատարութեամբ և ջանիւք գրեաց առ ընդհանուր Եպիսկոպոսս Հայոց աշխարհին յամենայն տեղիս վիճակաց նոցին՝ գալ գումարել ի ժողով ի Պարտաւ քաղաք Աղուանից. զի ոչ կարէր ի Դուին հանգըստեամբ զնոյն առնել, գուցէ յերեսաց բազմութեան Պարսից։ Այլ զի բազմաց ի նոցանէ անկարելի թուէր ի ժամանակին անդր ամենեցուն հասանել ըստ Հայրապետական հրամանի, բազումք թուղթս և հաւանութիւնս գրեցին առ Հայրապետն, հնազանդել ամենայնի, և ընդունել զոր ինչ ժողովն սահմանեսցէ։

Ապա Սիոնն Կաթուղիկոս առեալ ընդ իւր զերեւելի Եպիսկոպոսս և զՎարդապետս՝ զվանականս և զվանաց երէցս և զբազմութիւն իշխանաց՝ գնայ ի Պարտաւ, և անդ ժողով արարեալ սահմանէ յաղագս բարեկարգութեան Եկեղեցւոյ՝ զքսան և չորս կանոնս՝ զոմանս ի նոցանէ ի վաղագոյն հաստատելոց յայլեայլ ժողովս ի Հայաստան. որոց համառօտութիւն է այս։

ա. Եպիսկոպոս, Քորեպիսկոպոս և Երէց՝ եթէ զհետ լինելով փառաց և զբօսանաց՝ անհոգ լիցին ի խնամելոյ հօտին, լուծցին ի կարգէ։

բ. Եպիսկոպոսունք մի՛ իշխեսցեն ձեռնադրութիւն առնել ի վիճակ այլոյ Եպիսկոպոսի։

գ. Եպիսկոպոսք մի՛ ստիպեսցեն զյանցաւորս՝ տալ ինչ յԵկեղեցի, այլ հրամայեսցեն՝ զի նոքա իւրեանց ձեռօք տացեն աղքատաց։

դ. Եպիսկոպոսք մի՛ թոյլ տացեն Քորեպիսկոպոսաց կամ քահանայից սեղան հաստատել, կամ եկեղեցի օրհնել։

ե. Եպիսկոպոսք մի՛ իշխեսցեն մեռոնն օրհնել, կամ յօրհնելն յաւելուլ ինչ, այլ ի Հայրապետէն առցեն ամ յամէ։

զ. Եպիսկոպոսք կարգեսցեն վարդապետս յեկեղեցւոջ՝ անխափան քարոզել և ուսուցանել զժողովուրդն։

է. Վանք շինեսցին ի գեօղս, զի անդ հանգիցեն առաջնորդք. նա և հիւրանոց և աղքատանոց. և հաս նոցա ի գիւղից տացի։

ը. Աւազանն մկրտութեան մաքուր պահեսցի և պատուեսցի. և ջուր մկրտութեան մի՛ թափեսցի յանսուրբ տեղիս։

թ. Քահանայ՝ որում հասեալ է կարգ սպասաւորելոյ եկեղեցւոյ, սրբութեամբ արասցէ, և զաստուածային աղօթսն անխափան կատարեսցէ։

ժ. Քահանայ եթէ ամուսնասցի, կամ եթէ երկրորդ ամուսնացեալն ձեռնադրեսցի, մի՛ իշխեսցէ քահանայութիւն առնել, այլ յապաշխարութեան կացցէ։

ժա. Քահանայք զգոյշ լիցին մի՛ պսակել զհաւատացեալս ընդ անհաւատի։

ԾԲ. Զնշխարս սուրբ խորհրդոյն քահանայք պատրաստեսցեն, և մի՛ աշխարհականք։

ԾԳ. Եթէ Քահանայ պսակարասցէ երրորդաց յառաջադոյն շնացելոց, նզովեալ եղիցի, և պսակն քակտեսցի։

ԾԴ. Ինչք և սպասք եկեղեցւոյ մի՛ վաճառեսցին։

ԾԵ. Կրօնաւորք մի՛ տեղափոխ լիցին վանաց ի վանս, այլ կացցեն անդ՝ ուր կրօնաւորեցան. բայց եթէ կոչեսցեն ի վիճակ առաջնորդութեան։

ԾԶ. Ամուսնութիւն մի՛ լիցի մերձաւորաց մինչև ի չորրորդ զարմ։

ԾԷ. Անկելանոցք շինեսցին վասն նոցա, որք յաղագս ախտից ինչ հալածեալ լինին ի քաղաքաց. և հոգս կարգեսցի նոցա ի ժողովրդենէ։

ԾԸ. Ի մեռանել ուրուք՝ տուրք ողորմութեան վասն յիշատակի հոգւոյ նորա տացին այնմ եկեղեցւոյ և այնմ վանից, որոյ էր ժողովուրդ, բայց եթէ յաւելցի ինչ։

ԾԹ. Բանադրեալն յԵպիսկոպոսէ եթէ յառաջ քան զարձակելն մեռցի, հանդիսիւ մի՛ թաղեսցի։

Կ. Եթէ երեխայ ոք առանց մկրտութեան մեռցի, հանդէս թաղման մի՛ կատարեսցի ի վերայ նորա։

ԿԱ. Քորեպիսկոպոսունք մի՛ իշխեսցեն փակել զդրունս եկեղեցւոյ կամ խափանել զաստուածային պաշտամունս։

ԿԲ. Իշխան գեղջն՝ եթէ վասն պահանջելոյ զհարկս՝ տացէ փակել զեկեղեցին, նզովեալ լիցի։

ԿԳ. Որք գերի վարեալ ի հեթանոսս՝ եթէ կեցեալ իցեն ըստ կրօնի հեթանոսաց, և անպատշաճ ինչ գործեալ ըստ նոցա, թէպէտ և առանց ուրանալոյ զհաւատս, ի դառնալն իւրեանց ամ մի ապաշխարեսցեն, և յայնմ ամի ծոմապահ լիցին յաւուրս չորեքշաբաթու և ուրբաթու։

էր. Սուրբ Գիրք համարեցին ի Հին Օրինաց՝ սոքա, Ծննդոց, Ելից, Ղեւտացւոց, Թուոց, Բ. Օրինաց, Յեսուայ, Դատաւորաց, Հռութայ, Չրդ. Թագաւորաց, երկու գիրք Մնացորդաց, երկու գիրք Եզրայ, Տոբիթայ, Յուդիթայ, Եսթերայ, Մակաբայեցւոց, չորս գիրք Սաղմոնի, Յոբայ, Սաղմոսք Դաւթի, գիրք երկոտասան Մարգարէից, Եսայեայ, Երեմիայ (ընդ որ իմանի և Բարուքայն), Եզեկիէլի և Դանիէլի և Իմաստութիւն Սիրաքայ:

Զայս ամենայն քսան և չորս կանոնադրութիւնս կոնդակաւ ընդ ամենայն աշխարհն Հայոց սփռեալ Սիոնի կաթուղիկոս, տարածեաց և յաշխարհն Աղուանից հաւանութեամբ կաթուղիկոսի նոցին և իշխանացն:

ԳԼ. ԻԳ.

Առաջին ժողով յԵրզնկայ յաղագս ծննդեան կարգաց Յովհաննու Կաթողիկոսի Օձնեցւոյ:

(Ամք Տեառն 841): Յետ Դաւթի երկրորդի նստեալ յԱթոռ Կաթողիկոսութեան Յովհաննու հինգերորդի ի Կոտայից ի գեղջէ Օվայից՝ այր խոնարհամիտ և անարգամեծար՝ յամի Տեառն 833, իբրև չարաբանք ոմանք ի տանէ կաթողիկոսարանին յութերորդ ամի Հայրապետութեան սորա ամբաստանութիւն զմանէ առ Բագարատ Բագրատունի մատուցանեն՝ որ Պատրիկն էր ի վերայ ազգին, յաղագս ընկենլոյ զնա ի կաթողիկոսութենէ, և լուեալ թէ պատրիկին այնմիկ ունկն մատուցեալ ամբաստանողացն իւրոց՝ կամի վրէժխնդիր լինել և գրել հրովարտակ ընդ ամենայն տեղիս՝ իբրաց կալ յինքենէ և ընկենուլ զինքն՝ ի Կաթողիկոսութենէ, ապա բա-

նադրէ զնոյն ինքն զպատրիկն Բագարատ. որ յաւէտ յառաջս մնայր պարծանաց իշխանութեան իւրոյ և ոչ ըստ իրաւանց զայն առնէր. և ինքն թողեալ զԱթոռն Հայրապետական գնայ յԱյրիվանս ի Գեղարքունիս ի վայր որքոյն Սահակայ։

Զայս ամենայն լուեալ ապստեան Սահակ Բագրատունի և Գրիգոր Սուփան տէր Սիւնեաց և այլ նախարարքն՝ գան ժողովին յԵրնջակ, և զԵպիսկոպոսունս Հայոց անդր գումարեալ՝ քննեն զքանս բամբասողաց յաւէտ երեց արանց զՀայրապետէն, և սուտ համեալ զամենայն ամբաստանութիւնն, վերստին հաստատեն զՅովհաննէս յԱթոռ Կաթուղիկոսութեան. և ի յաջորդ ամի ժողովոյն անմեղութիւն մեծի Հայրապետին ոչ ընդ վարագուրաւ ամբաստանութեան ամբաստանողացն մնայր, զի պատիժ Աստուածահաս զերիս զարսն կորուսանէր որպէս և նա ինքն Բագարատ էառ զհատուցումն յետ քանի ամաց անկեալ ի դատապարտութիւն։

Գլ. ԻԴ.

Առաջին ժողովն է Շիրակաւան. ուր ընթերցաւ Զատկաց Կանոնագիրքս է Կոփայից։

(Ամք Տեառն 854)։ Յաւուրս սարսափելի կոտորածին գրեթէ ընդհանուր Հայաստանեայց յոստիկանէն Բուղայէ ըստ հրամանի Ամիրապետին Հագարացւոց, յորժամ Սմբատ սպարապետ՝ որ փութայրն հասանել առ նոյն ոստիկան ի Դվին, յետ փոխելոյ յաշխարհէս Յովհաննու Ե. Հայրապետի, որ մեկուսացեալն էր ի վանըս Մաքենոցաց վասն դառնութեան ժամանակին, հրամայէ վաղվաղակի ժողով Եպիսկոպոսաց գումարել յԵ-

բաղդպաւորս ի Շիրակ, յորում ժամանակի այն տեղի միայն էր ապաւինող յերեսաց Հագարացւոցն, և ընտրել զնոր Կաթուղիկոս ի Հայրապետութիւն Հայաստանեայց Աթոռոյ։

Ընդ անոր ի Ժողովին ընտրեն ապա ի կաթուղիկոսութիւն զԶաքարիա ի Կոտայից ի Ձագ գեղջէ, և ի միում աւուր ըստ առն արժանաւորութեան՝ կոչեն զնա յաստիճան Սարկաւագութեան, Քահանայութեան, վերածեն յԵպիսկոպոսութիւն, և ձեռնադրեն ի Կաթուղիկոս Հայաստանեայց Եկեղեցւոյ ի Ծաղկազարդի կիւրակէին՝ առ սոսկման հարկին և կարճութեան ժամանակին ըստ դառնութեան անցիցն Հայաստանեայց։

### Գ.Լ. ԻԵ.

### Երկրորդ Ժողով ի Շիրակաւան վասն միաբանութեան հաւատոց և Ժողովոյն Քաղկեդոնի։

(Ամք Տեառն 862)։ Յաղագս միաբանութեան Հայոց ընդ Յոյնս յընդունելութիւն Ժողովոյն Քաղկեդոնի, Փոտ Պատրիարգ Յունաց Կոստանդնուպօլսոյ գրէ առ Աշոտ մեծ իշխանն Հայոց և առ Զաքարիա Կաթուղիկոս, որպէս զի Ժողով արարեալ՝ քննեսցեն զճշմարտութիւնն, և մի՛ խտրոց անջատման և հակառակութեան ի հաւատոյսն արկցեն ի մէջ երկուց ազգացն. զի Զաքարիա Կաթուղիկոս յառաջ քան զայս լուեալ զնեղութիւն Հայոց յիշխանութեանն Յունաց ի նոյն իսկ Պատրիարգէն յաղագս բանի յիշեալ Ժողովոյն՝ գրեալ էր առ նա թուղթ, և առ այն՝ զի զՀայս նախատական անուամբ կոչէին ծանծաղիկեանս։

Ընկալեալ Զաքարեայ զԹուղթ Պատրիարգին,։ տանու ընդ իւր զՆանայ սարկաւագ Ասորի և զԱրքեպիսկոպոսն Նիկիոյ զՎահան զնամակաբեր Պատրիարգին և գնայ առ Աշոտ իշխան յԵրազգաւորս. և նորին հրամանաւ ժողով առնէ բազմութեան Եպիսկոպոսաց և Վարդապետաց, կրօնաւորաց և երևելի իշխանաց ի ներկայութեան նորին Աշոտոյ. ուր հաստատեն զխորհուրդ Երրորդութեան Աստուածային անձանց և մարդեղութեան Քրիստոսի և զԱստուածամայրութիւն սրբոյ Կուսին, որպէս դաւանի մեր Եկեղեցի. այլ զժողովն Քաղկեդոնի հերքեն չորք ժողովոյն; հաստատեալ՝ թէ ընդդէմ է այն ժողով Առաքելական աւանդութեանց և երից Տիեզերական սուրբ Ժողովոց։

Յաւարտ Ժողովոյն՝ Վահան Եպիսկոպոս (զորմէ կարծէ Հ. Չամչեան լինել Հայ ազգաւ և Յոյն կրօնիւք) տեղեակ երկուցն ևս լեզուաց, խօսի երկար ճառս ի վերայ խորհրդոց Երրորդութեան և մարդեղութեան, և ի դիմաց ժողովոյն կարդէ զհնգետասան կանոնս հանդերձ նզովիւք։ Այլ այս կանոնք սորին Վահանայ չեղեն ընկալեալ ի կանոնագիրս մեր, վասն այսորիկ և ոչ դնեմք զնոյնս աստանօր։

## ԳԼ. ԻԶ.

### Առաջին ժողով է քաղաքն Անի, վասն քննելոյ զվարս Վահանայ Կաթողիկոսի։

(Ամք Տեառն 970)։ Անանիայ Կաթուղիկոսի յաջորդեալ ի Հայրապետութիւն ըստ նորին յանձնարարութեանն Վահան ի Սիւնեաց, ընկալաւ զԿաթուղիկոսու-

թիւն Հայոց մեծաւ ժողովով յԱնի քաղաք, ուր և գըտաւ Յովհաննէս կաթուղիկոս Եղուանից։

Սորա յառաջագոյն միաեալ ընդ ժողովն Փաղկեդոնի, և ի կաթուղիկոսութեան եւս թղթով միաբանեալ ընդ Յոյնս և ընդ Վիրս ի ձեռն մետրապօլտին Մելիտինոյ, յարոյց ընդ դէմ իւր զուղղափառ եկեղեցւոյ Հայաստանեայց զջատագովս, զեպիսկոպոսս և զվարդապետս, յորոց գլխաւորք էին Խաչիկ եպիսկոպոս Արշարունեաց, Պօղիկարպոս առաջնորդ Կամրջաձորոյ, Սարգիս վանական Հոռոմոսի վանաց, և Ստեփաննոս Սևանայ, որք հրամանաւ Աշոտոյ արքայի ժողով բազմաց եպիսկոպոսաց և միանձանց գումարեալ յԱնի, քննեցին զմիտըս և զգործս Վահանայ, և ընդ յայտնութիւն միաբանութեան նորա ընդ Յոյնս ի վերայ քաղկեդոնի ժողովոյն, և յերկպառակելն այն ինչ ժողովն խորհէր ընկենուլ զնա յԱթոռոյ, Վահան ինքնին թողեալ զՀայրապետութիւն՝ փախստեայ անկանի յաշխարհ Վասպուրական առ Աբուսահլ արքայ Արծրունի։

Ըստ որոյ և ժողովն ընտրեաց առ այն ի կաթուղիկոսութիւն Հայոց զՍտեփաննոս Գ., վանահայր Սևանայ վանաց՝ յազգականութենէ Մաշտոցի և Յովհաննու Պատմաբանի։

## ԳԼ. ԻԵ.

### Երկրորդ ժողով յԱնի, որ ընտրեցաւ Խաչիկ ի կաթողիկոսութիւն Հայոց։

(Ամք Տեառն 972)։ — Ստեփաննոս յաջորդ Վահանայ յերկրորդում ամի Հայրապետութեան իւրոյ նզովս ար-

ձակէ առ Վահան և առ Ապուսահլ, որ պաշտպանեաց զնա. և նա առ սոյն Հայրապետ զփախստականսն։ Եւ որ Ստեփաննոսի ժողովեալ զբազմութիւն կրօնաւորաց ի Տարօնոյ, ի Հաշտենից, ի Ծոփաց և ի Խորձենոյ, ընդ որս և զՄօվսէս վարդապետ և զԲարսեղ վանական Սինեցի, գնայ յաշխարհ Վասպուրականի ի յանդիմանութիւն Վահանայ. այլ չև սոցա հանդիպեալ արքայի և նմին Վահանայ, աքսորին արքունի հրամանաւ յԵգթամար կղզին. ուստի ի խոնարհիլ սմանց ի նոցանէ առ Ապուսահլ և յարձակել յիւրաքանչիւր տեղիս, Ստեփաննոս Հայրապետ միայն վարեցաւ յԱպուսահլայ ի Կոստորոց բերդ, ուր կացեալ նորին ամիս ինչ՝ մեռանի։

Ապա ըստ այսմ հանգամանաց յետ ամաց ինչ յամի 972, առաջնորդք Հայոց աշխարհի, ժողովեալ վերատին հրամանաւ Աշոտոյ հանդերձ եպիսկոպոսօք և վանականօք յարքայանիստն Անի, կացուցանեն ի Կաթուղիկոսութիւն Հայաստանեայց Աթոռոյ՝ զԽաչիկ Արշարունեաց եպիսկոպոս զքեռորդի Անանեայ Հայրապետի։

Թէև ոմանք ըստ յորդորանաց արքայի Աշոտոյ խորհին զՎահան վերստին կոչել յԱթոռն, այլ շատք ընդդիմացեալք յարուցին զխռովութիւն, վասն այնորիկ և զԽաչիկ կոչեցին։

## ԳԼ. ԻԸ.

### Առաջին և Երկրորդ Ժողով ի Հարք, ընդդէմ Թոնդրակեցւոց աղանդաւորաց։

(Ամք Տեառն 1002)։ — Յայնհետեւ Սարգիս Կաթուղիկոսի զաղանդ Թոնդրակեցւոց, սկզբնաւորեալն յա-

ւորց հինգերորդն Յովհաննու Կաթուղիկոսի Ովայեցւոյ գրեթէ յամէ Տեառն 833, յորում կոչեցաւ նա յԱթոռ ըստ գնելոյ և մերում Մագիստրոսի, զումարէ ժողով եպիսկոպոսաց ի Հարք ըմբերանել զաղանդաւորսն և որմատախիլ զնոյն առնել, բայց ոչ կարացեալ յառաջնում ժողովի որոշել զվճիռ իւր, վերստին գումարեցան եպիսկոպոսք, վարդապետք, երիցունք և կրօնաւորք ջնջել իսպառ զաղանդ Թոնդրակեցւոց, որ ի սոյն ժամանակի առաւել իբրև հուր արծարծեցաւ յաւուրս Վարդանի Հայրապետի. զի Յակոբոս եպիսկոպոս ոմն ի ժամանակին յայնմիկ առաջնորդ գաւառին Հարքայ ըմբռնեալ յաղանդ Թոնդրակեցի՝ կեղծաւորեալ առ երեսս՝ վարէր զխիստ կեանս քրձազգեացս, բոկագնաց էր պահեցողութեամբ, որով բազմաց զմիտս յինքն յանկուցեալ՝ մանաւանդ յիշխանաց, քարոզէր՝ թէ պատարագք և նուիրմունք և աղօթք ոչ օգնեն վասն թողութեան մեղաց, այլ՝ որ մեռաւ, զոր ինչ ինքն գործէ յանձին իւրում, այն միայն օգնէ նմա. զայս քարոզէին և հետևողք նորա, և զենուլ զանասունս ի տուրս աղքատաց՝ ամենևին ծաղրականս գրէին. և հաղորդել ժողովրդոց ի կենարար մարմնի և արեան՝ անգոսնէին և զնոքօք ծիծաղէին, մինչև անկանել տարակոյս ի ժողովուրդն, ոմանց յետս կալ յառաջնորդէն և ի հետևողաց նորին, և այլոց երկբայեալ ի խորհուրդ եկեղեցւոյ, որովք շփոթ մեծ և շշուկ ծագեալ ընդ ամենայն տեղիս, հոգևորականք առհասարակ յաղօթս ապաւինեցան առ Աստուած՝ այց առնել և բառնալ զչարն ի միջոյ։

Եւ յԼ Հարք ժողովոյն թէ և անդէն զառաջնորդն մոլորեցուցիչ զՅակոբոս դատապարտել կամէին և հատանել յեկեղեցւոյ, բայց տեսեալ թէ նա ապաւինեալ է

յիշխանս և ինքեանք ոչ ունէին ի ձեռին զկայանս յանցանս նորին, լռեցին վերստին յանձնեալ զդատաստան առըն ի ձեռս Աստուծոյ, մինչև Սարգիս աշակերտ նորա Կարնեցի՝ այր երկիւղած՝ ի վերայ հասեալ չար աղանդոյ վարդապետին և անօրէն գործոցն, ի ծագել խռովութեանս ի մէջ ազգին, փաղփաղակի ծանուցանէ սրբոյ Հայրապետին. որ և ձեռնտուութեամբ ոմանց իշխանաց առ ինքն բերեալ զՅակոբ եպիսկոպոս, եղոյծ զնա ի քահանայութենէ և աղուեսադրոշմ ի ճակատն եդեալ, շրջեցուցանել տայ զնա ի հրապարակս, որոյ առաջի քարոզն աղաղակէր. ‘‘Որ ի սուրբ հաւատոյ Եկեղեցւոյ Քրիստոսի սողոսկեալ՝ յանօրէն Թոնդրակեցւոց ի մարգարէմ գազանաց փարախն մտեալ միաբանի, զնա և իրաւունս զայս կրեսցէ,,։

## ԳԼ. ԻԹ.

### Երրորդ ժողով յԱնի՝ վասն տնօրինեան կարգաց Պետրոսի Կաթողիկոսի։

(Ամք. Տեառն 1036)։ — Յովհաննու Սմբատայ արքայի Հայոց և նախարարացն դժուարացեալք ընդ յարատևութիւն Պետրոս Կաթողիկոսի Գետադարձն կոչեցելոյ ի Սեբաստիա՝ և առանձնանալոյ ի նոցանէ զամս չորս ի Վասպուրական ի Ձորոյ վանս, սուտ երդմամբ վերադարձուցեալ զսուրբ Հայրապետն յԱնի արքայանիստ, կալանաւորէ զնա և առաքէ յարգելանս ի մեծ ամուրն Բջնի առ Վահրամայ հօրեղբօր Գրիգորի Մագիստրոսի. և ապա բերեալ զԴէոսկորոս վանահայր Սանահնի կացուցանէ արքայ ի Կաթողիկոս. բայց երևելիք Եպիսկոպոսացն Հայոց ոչ ընկալեալ զնա, չտան թոյլ

նմա ձեռնադրել զոք յեպիսկոպոս, և չյիշեն զանունն ի պատարագի. ընդ որ և համօրէն ժողովուրդք չհաճեն երբէք, բայց միայն յարքայէ և ի նախարարաց։

Զանարգութիւն իւր տեսեալ Պետրոսի յայս ամենեցուն, ինքնին եւս զպատիւ իւր անարգեալ և ձեռնարկ լեալ յանարժանութիւն, կոչէ յեպիսկոպոսութիւն զանպիտանս և զվատթարս ի մարդկանէ, և յաթոռս վերստին՝ զմերժեալսն վասն յայտնի յանցանաց. և զարժանաւորս և զիմաստունս մերժէ յիշխանութենէ, յափշտակեալ զնոցին ստացուածս։ Եւ որ եպիսկոպոսք և վարդապետք Հայոց ի խորհուրդ եկեալ՝ նզովեն զարքայ և զնախարարսն զպատճառսն անակնկալ չարեացս։

Լուեալ արքայի և նախարարաց զայս գործ պաշտօնէից տանն Աստուծոյ և յերկիւղ մեծ լեալ, բազում թախանձանօք և աղաչանօք հնարեալ դարձուցանել ըզՊետրոս յԱթոռն և խոստացեալ հնազանդիլ ի բանս նորա, նա ոչ զիջանի յաղաչանս նոցին՝ մինչև թագաւորն նախարարաց իւրոց խորհրդով հրաւիրէն աղաչանօք զՅովսէփ Կաթուղիկոս Աղուանից ի քաղաքն արքայական, ուր արքունի հրամանաւ լինի ժողով մեծ Հայրապետաց, վարդապետաց, և իշխանաց՝ իբրև չորս հազար անձանց յամի 1036։

Ընդ ապա ամենայնիւ պարտաւոր գտեալ զՊետրոս, ընկենուն յԱթոռոյ, և պատուեալ զՀայրապետական Քօղ յերեսս նորին, զոր ցայն վայր Հայրապետք զգլխով արկանէին, առաքեն յաքսոր յիւր նախնի վանս Սանահին, յետ հայրապետանալոյ նորա զամ մի և զքանի մի ամիս. և զամենայն զձեռնադրեալս ի նմանէ ընդ բանիւ արարեալ, ապաշխարանս ի վերայ նոցին կարգեն. և վե-

ըստին հաստատեալ զսուրբ Հայրապետն Պետրոս, կոչէին զնա յԱթոռ իշխանութեան։

## ԳԼ. Լ.

### Երկրորդ ժողով ի Հարք՝ ընդդէմ Թոնդրակեցւոց։

(Ամք Տեառն 1051)։—Յաւուրս դքսութեան Գրիգորի Մագիստրոսի ի Միջագետս, երկուք ոմանք քահանայ անուամբ ի Թոնդրակեցւոց, ի շնորհացն Աստուծոյ լուսաւորեալք ՚ի գիտութիւն ճշմարտութեան, դիմեն յոտս նորին և պատմեալ նմին զամենայն չարութիւն գործոց աղանդոց իւրեանց, մերժին յանուն ամենասուրբ Երրորդութեան, կոչեցեալք մին Պօղիկարպոս և միւսն Ղիկանորս, և աղաչեն զնա՝ բառնալ զաղանդն ի գաւառէ անտի, ցուցեալ՝ և ուր ուրեք յաղանդաւորաց ի նորա իշխանութեան՝ ի Միջագետս կային։

Ապա Գրիգոր Մագիստրոս դիմեալ յԱպահունիս յաւանն Թոնդրակ, քակէ զժողովատեղի նոցա և անդէն կառուցեալ զտաճար անուամբ սրբոյն Գէորգայ հալածէ զՂազար առաջնորդ նոցին, պատուհասեալ զամենեսին, սրբելով զտեղին. յորոց բազմաց ի Թոնդրակեցւոցն զարհուրեալք, դարձան յաղանդոցն, յաղագս որոց վերստին ժողով արարեալ անդր ի Հարք յամի Տեառն 1051, հրաման առնեն մկրտիլ հազարաւոր բազմութեանն յանուն ամենասուրբ Երրորդութեանն ի ձեռն Եփրեմ Եպիսկոպոսին Բջնոյ. ըստ որոյ և հալածեալքն ի նոյն աղանդաւորաց յամենեցունց և յայլազգեաց ևս, դառնային հեռահեռաէ և ընկալեալ զմկրտութիւնն՝ մտանէին յեկեղեցի սուրբ։

## ԳԼ. ԼԲ.

### Երրորդն. ժողով ի Սեւ—լեռան վասն ընտրելոյ զԳէորգ Կաթողիկոս։

(Ամ Տեառն 1072)։—Գէորգ Լոռեցի յատենադպ-րութենէ Գրիգորի Վկայասիրի՝ հաճութեամբ իշխանացն կողմանց Տաւրոսեան՝ ի հրաժարել նորին Գրիգորի յանապատ, ձեռնադրեցաւ ի նմանէ Կաթողիկոս ի Թաւբլուր. բայց որպէս երեւի՝ զղջացեալ ընդ այն առա Վկայասիրին ի դրդելոյ հակառակորդացն Գէորգայ, յետ երկար չփոթութեանցս այսոցիկ, առնէ Վկայասէրն Գրիգոր ժողով սակաւ Եպիսկոպոսաց եւ վարդապետաց ի Սեւ լերինն, եւ նոցին թելադրութեամբ ընկենու զԳէորգ յԱթոռոյ Հայրապետութեան, եւ վերստին վարէ ինքն զիշխանութիւնն՝ եկեալ ի Մուտառասուն։

Ու թէեւ պատճառ այսր անկման Գէորգայ Լոռեցւոյ զնա ինքն համարի Հ. Չամչեան, իբր զչարեալ նորա ընդ համակրութիւն Ազգին առ Վկայասէրն, եւ խռովութիւնս յարուցանել, յորմէ ստիպեալ լիցէ Գրիգոր ընկենուլ զնա յԱթոռոյ, բայց ես համարիմ զայն բարուրանք պապականին, մինչդեռ չէ հաստատեալ զբանս իւր վկայութեամբ ժամանակակից պատմագրաց. եւ զի համակրութիւն Ազգին առ առաջին Հայրապետն՝ զհետ առիթ զչարելոյ համարիցի առ ի Գէորգայ, երբ ինքն եւս հաճութեամբ ազգին ձեռնադրեալ էր Կաթողիկոս յիւրմէ Վ. Հայրապետէն, առ որում լեալ էր ատենադպիր։

## ԳԼ. ԼԲ.

### Երկրորդ ժողով է Սեաւ-լեառն, ուր նզովեցաւ Դաւիթ Կաթողիկոս Աղթամարայ։

(Ամք Տեառն 1114)։—Իբրև. օծաւ ի կաթողիկոսութիւն Հայաստանեայց Գրիգոր Պահլաւունի՝ եղբայր Ներսիսի Շնորհալւոյն՝ ըստ ընտրութեանն Բարսղի Հայրապետի ի մահուան իւրում յամի 1113, ի Կարմիր վանս Սևաւ լերին, համբաւ առեալ մահուան Բարսղի և կոչման Գրիգորի ի քանանեայ պատանեկութեանն՝ Դաւիթ Արքեպիսկոպոս Աղթամարայ՝ առիթ ինքեան գտեալ զտիս տհասութեան հասակի նորոգ Հայրապետին, որ արդէն փայլէր իմաստութեամբ և զառաքինութեամբ ծերոցն անցեալ, ապստամբեալ ի Հայրապետական իշխանութենէ և խռովութիւն յարուցեալ յազգին, ձեռնադրի կաթողիկոս ի հինգ Եպիսկոպոսաց ի Ձորոյ վանս և հայրապետանայ յԱղթամար, փաստ ապացուցականս ի մէջ առեալ՝ զգերեզման Վահանայ և այլոց Հայրապետաց ի Վասպուրական, զսեղան սրբոյն Գրիգորի, զԲօղ նորա, զգաւազան, զգօտի մաշկեղէն և զնորին զԱջ սուրբ, և որ մեծն է՝ աթոռ լինել Վասպուրականի, ասէ, թագաւորացն Արծրունեաց։

Ընդ այս ապստամբութիւն Դաւթի և ինքնակոչ եղանել ի գահ Հայրապետութեան, գումարէ Գրիգոր Կաթողիկոս զբազմութիւն Եպիսկոպոսաց, վարդապետաց, և վանահարց և միանձանց մինչև ցերկու հազար հինգ հարիւր անձինս, և առնէ ժողով ի Սեաւ լեառն. յորում առաջի արարեալ զապստամբութիւն Դաւթի, ա-

մեներքին ձեռագրով բանադրանս և զնզովս եդեալ ի վերայ նորին իսկ Դաւթի և որոց յաստիճան կաթուղիկոսութեան բռնութեամբ կամ կաշառօք ելանիցեն, մերժեցին միանգամայն զնա, և վասն այսորիկ գրեցին առ Եպիսկոպոսունս և իշխանս յարևելս Հայաստանի և առ նոսա, որք ընկալեալ էին զԴաւիթ. որոց առ այս մերժեալ զնա, դարձան յօրինաւոր Հայրապետն և օրհնեցան ի նմանէ. իսկ Դաւիթ միայն նստաւ յԱղթամար. յորմէ և յետ քանի ամաց զԱջ և զքօղ և զգաւազան Լուսաւորչին գողացեալ ոմանց՝ ածին առ Գրիգոր։

Յայս ժողով, ասէ Հայր Միքայէլ Չամչեան, թուի թէ սահմանեցաւ այն կանոն, զի ընտրութիւն Կաթուղիկոսաց՝ լիցի համաձայնութեամբ չորից գլխաւոր աթոռոց Արքեպիսկոպոսաց ի մեծն Հայս, որք են Բջնոյ, Հաղբատայ, Թադէոսի Առաքելոյ վանաց և Տաթևու։

## ԳԼ. ԼԳ.

## Առաջին ժողով ի Հռոմկլայ, ուր ընտրեցաւ Ներսէս Շնորհալի ի Կաթողիկոս։

(Ամք Տեառն 1165)։ — Հասեալ Գրիգոր Կաթուղիկոսի ի վերջին շունչ ծերութեանն և ազդեցութեամբ Հոգւոյն իմացեալ զվախճան կենաց, արար ժողով Եպիսկոպոսաց և վարդապետաց ի Հայրապետանոց անդր ի Հռոմկլայ, ի նոյն նահանգէ. ուր յետ յանդիման խօսելոյ յորդորական բանից, հաւանութեամբ ամենեցուն ընտրեաց փոխանակ իւր յաթոռ Հայրապետութեան ըզհարազատ եղբայրն իւր զՆերսէս Շնորհալի. որում բազում անգամ յառաջարկել նորա, չէր լեալ յանձնա-

ռաւ. որ և յեպիսկոպոսութենէ իւրմէ և ցայն վայր էր նա ինքն շնորհալի հաւատարակից իւր գործակալ եղբօր իւրում՝ հոգւով չափ ոգնեալ ի յառաջադիմութիւն ազգին և յանձուն հոգողութիւն ի վերայ բանաւոր հօտին Քրիստոսի՝ յանձն եղելոցն ի Հայրապետական տեսչութիւնն։

Այլ այսմիկ ընտրութեան թէ և զանձն իւր ոչ արժանի մատուցանէր սուրբն Շնորհալի, յառաջնութեան պարապել կամելով, սակայն ժողովն ամենայն ստիպեալ զնա ընդունել զառաքելապետական զայն պաշտօն ի կողմանէ Հոգւոյն, որում ամենեքին ակն ունէին, ապա նա ինքն Գրիգոր Կաթուղիկոս էօծ զնա; զգեցուցեալ նմա զգեստ Քահանայապետական կարգի, և դրօշ Կաթուղիկոսական ի գլուխ նորա արկեալ, կոչեաց զնա յԱթոռ իւր, և զգաւազան հայրապետական իշխանութեանն եդ ի ձեռս նորա՝ երկիր պագեալ նմա իբրև կաթուղիկոսի. ուր ապա բացեալ զհոգեբուղխ բերան իւր Շնորհալին Ներսէս խօսեցաւ զիմաստալից իւր ատենաբանութիւն յիւրում յայնմիկ ձեռնադրութեան, որպէս կայ յԸնդհանրական Թուղթս նորա։

## ԳԼ. ԼԴ.

## Երկրորդ և Երրորդ ժողովք ի Հռոմկլայ վասն միաբանութեան Հայոց ընդ Յոյնս։

(Ամք Տեառն 1167—1178)։ — Թողլով մեր զերկարաձիգ անցս պատմութեան յաղագս միաւորութեան Եկեղեցւոյ մերոյ ընդ Յունաց և յաղագս երկուց ազգաց միաբանութեան, յորոց վերայ այնքան բանակցութիւնք

եղեն յերկուց ևս կողմանց յաւուրս Կիռ Մանուէլի կայսեր և երից Կաթուղիկոսացն մերոց Գրիգորի Պալհաւունւոյ, Շնորհալւոյն Ներսէսի և եղբօրորդւոյ նորին Գրիգորի Տղայ կոչեցելոյ յամս Տեառն 1167 – 1180, և զնոցին փոխադարձ թղթակցութիւնսն զդաւանութեանց հաւատոյ և կարգաց Եկեղեցւոյ, որ յԸնդհանրականս Շնորհալւոյն, առաւել համառօտ կարգեմք Երկրորդ և Երրորդ ժողովոց պատմութիւնս Եկեղեցւոյս մերոյ եղելոցն ի Հայրապետական Աթոռ անդր ի Հռոմկլայ։

Տեառն Մանուէլի կայսեր զԹուղթ Շնորհալւոյն Ներսէսի զառաջինն յաղագս դաւանութեան հաւատոյ և կարգաց Եկեղեցւոյ մերոյ ի ձեռս փեսային իւրոյ Դքսին Ալէքսի, ըստ խնդրանաց նորին ի Մամեստիա քաղաքի՝ գրեալս ի նորին Շնորհալւոյ յԵպիսկոպոսութեան իւրում, և թարգմանեալ զայն, ընթերցան ինքնին կայսրն և պատրիարգ նորին Միքայէլ, և հաւանեցեալ ուղղափառութեան հաւատոյս մերոյ դաւանութեան յԱմենասուրբ Երրորդութիւնն, ի մարդեղութիւն Քրիստոսի, և աւանդութեանց կարգաց և ծիսից, փառեցան ի սէր միաբանութեան և ի տեսութիւն իսկ նորին Շնորհալւոյ. ուստի և անդ զառաջինն գըրեաց թուղթ կայսրն առ Գրիգոր Կաթուղիկոս եղբայր Շնորհալւոյն յաղագս միաբանութեան և առաքելոյ զեղբայրն ի Կոստանդնուպօլիս՝ բանիւ բերանոյ ևս խօսել ի վերայ գրելոցն նորա, զի բարձցի ի միջոյ պատճառ բաժանման երկուց Եկեղեցեաց. և զայս թուղթ առաքէ ի Հռովմկլայ դեսպանութեամբ ումեմն Հայազգւոյ ծառայի իւրոյ Ամրատայ։

Բայց սորա ընդ ժամանել ի Հռոմկլայ, վախճանեալ գոլով Գրիգոր Կաթուղիկոսի, ընդունի զԹուղթ կայսեր յաջորդ նորա Շնորհալին Ներսէս. և պատասխանի արարեալ նմին, գրեաց և զընդարձակ նամակ դաւանութեան հաւատոյ և կարգաց Եկեղեցւոյ ըստ խնդրանաց դեսպանին յառաւել ևս տեղեկութիւն Յունաց՝ դաւանութեան մերոյս հաւատոյ:

Զայս թուղթ Շնորհալի Հայրապետին ընկալեալ կայսեր և եկեղեցական դասուց Յունաց, թողեալ այնուհետև զատելութիւն, փափագէին միաբանութեան. ընդ որ կայսրն առաքեաց ի կողմանէ իւրմէ առ Կաթուղիկոսն մեր զԹէորիանէ աստուածաբան և զՅովհաննէս ութման խօսիլ ընդ նմա ի վերայ բանից հաւատոյ հանդերձ երկրորդ թղթով. ի 1170 ամի, յորում ցուցանէր զուրախութիւն իւր ընդ յօժարութիւն Կաթուղիկոսին սակս միաւորութեան Եկեղեցւոյ և ուղղափառ հաւատոյ:

Ընդանոր յառաջարկել Թէորիանեայ զտարակուսութիւնս Յունաց ի վերայ խնդրոց ինչ, պատասխանէր Հայրապետն ըստ վարդապետութեան Հայաստանեայցըս Եկեղեցւոյ, նախ՝ ի վերայ երկուց բնութեանց Քրիստոսի. երկրորդ՝ յաղագս Տօնի Ծննդեանն Քրիստոսի. երրորդ՝ ի վերայ երից սրբասացութեանց. չորրորդ՝ յաղագս մեռոնի. հինգերորդ՝ յաղագս աղօթելոյ յԵկեղեցւոջ. և վեցերրորդ՝ յաղագս ժողովոյն Քաղկեդոնի:

Վեցից այսոցիկ խնդրոցս պատասխանի Շնորհալի Հայրապետին, զորոց և յառաջին թուղթն իւր գրեալ էր բացայայտ, արձանագրեալ Թէորիանեայ՝ ըստ վկայելոյ Լամբրոնացւոյն ի Ներբողեան Շնորհալւոյն, դարձաւ ի Կոստանդնուպօլիս՝ հանդերձ նամակաւ սուրբ Հայրա-

պետին. ընդ որ Յոյնք առաջի արարին խնդիրս ինն գլխա-
կարգութեամբք վերստին ընդ յիշեալ Աստուածաբանին՝
հանդերձ կայսերական թղթով՝ յամին 1172 — ընդու-
նել մերումս Հայրապետի Եկեղեցական Ժողովով։

Այսոքիկ ինն գլուխք են խնդրոցն, զորս յառաջ բե-
րեմք ի Չամչեանէ։

ա. Նզովել զմի բնութիւն ի Քրիստոս ասողսն՝ զԵւ-
տիքէս և զԴիոսկորոս, և զՍեւերիոս, զՏիմոթէոս զկուզն
և զամենայն համախոհս նոցունց։

բ. Խոստովանել զՏէր մեր Յիսուս Քրիստոս՝ մի որդի,
մի դէմք, մի անձնաւորութիւն անորիշ, անփոփոխ, անայ-
լայլելի, անշփոթ՝ ոչ այլ զորդին Աստուծոյ ասել, և ոչ
այլ զորդին սրբոյ Աստուածածնի, այլ և զնոյն՝ որդի Աս-
տուծոյ և որդի մարդոյ՝ զմին (զՔրիստոս) խոստովանել
Աստուած և մարդ յերկուս բնութիւնս. զնոյն զմի Քրի-
ստոս՝ ունելով երկուս ներգործութիւնս և երկուս կա-
մըս Աստուածային և մարդկային ոչ հակառակք միմեանց,
այլ ընթանայ մարդկային կամքն զկնի Աստուծոյ կամացն։

գ. Ասել զերեքսրբասացութիւնն բաց ի խաչեցելոյն
ձայն ձեր և բաց յաւէն։

դ. Տօնել և զտօնսն ընդ Հոռոմս, այս է, զԱւետեաց
Տեառն ի ԻԵ Մարտի, և զԾնունդն ի Դեկտեմբերի ԻԵ.
զԹլփատութիւնն յութերորդն զկնի Ծննդեանն Քրիս-
տոսի, այս է՝ յառաջինն Յունուարի և զՄկրտութիւնն ի
վեցն Յունուարի, և զՏեառնընդառաջն ի Փետրուարի Բ.
և պարզաբար զամենայն տօնսն տէրունականս և զսրբուհ-
ւոյ Աստուածածնին, և զԿարապետին և զսրբոց Առա-
քելոցն և զայլոցն։

ե. Առնել զմիւռոնն ձիթով ի պտղոյ ծառոց։

Դ. Զաստուածային հաղորդութիւնն առնել խմորուն հացիւ, գինեաւ և ջրով։

Ե. Զամենայն քրիստոնեայքն, քահանայք և ժողովրդականք ի ներքս յեկեղեցւոյն կացցեն, յորժամ կատարի աստուածային պատարագն, բայց յայնցանէ՝ զորս արգելուն կանոնք յաղագս ապաշխարութեան, նոյնպէս և յայլ կարգս Եկեղեցւոյ։

Զ. Ընդունել զչորրորդ, զհինգերորդ, զվեցերորդ և զեօթներորդ տիեզերական ժողովսն։

Է. Ընդունել զառաջարկութիւն Կաթողիկոսին միայն ի Թագաւորէն Հոռոմոց։

Ընդ այս խնդիր Յունաց գրեալ Ներսիսի Թուղթս առ ամենայն Եպիսկոպոսս և Վարդապետս մեծին Հայոց յԱշխարհ Երարատեան, յորս կային Եպիսկոպոսք աւելի քան երեք հարիւրք և յոլով վարդապետք, ծանոյց նոցա զամենայն անցս միաբանութեանն. առանց որոց դըժուարին էր ընդունել զխնդիրսն. և մինչ պատրաստ էր հրաւիրել զնոսին հաստանել առնել ժողով ընդհանուր, զի մի՛ ծագեսցի երկպառակութիւն յԱզգին, հասեալ նմա վախճան կենաց, փոխեցաւ ինքն Շնորհային առ Աստուած, և ոչ գումարեցաւ ժողովն։

Իսկ երրորդ ժողովն ևս անդ ի Հռոմկլայ՝, որ եղև ընդ ձեռն եղբօրորդւոյ Շնորհալւոյն Գրիգոր Տղայի, որ յաջորդեաց յետ նորա յԱթոռն, այն ևս այսպիսում դիպաւ վիճակի, և մնաց անկատար, — որպէս արդ ի համառօտագրութեանս։

Սա ինքն Գրիգոր Կաթուղիկոս հաւաստի գիտելով, եթէ ոչ ունի ընդունել երբէք Ազգ մեր զփոփոխութիւն ծիսիցն ամփոփեալ յինն խնդիրս անդ Յունաց, խորհր-

դով վարդապետաց իւրոց խնդրեաց գրով ի կայսերէ մի՛ պահանջել զայնս ի Հայոց, այլ միայն՝ զորս ի հաւատս վերաբերին. զի հնացեալ սովորութիւն է՝ ասէ՝ Եղգիս, զոր միայն ի ձեռն խաղաղութեան ընդհանուր ժողովով՝ աէրն կատարեսցէ, ասէ:

Այս իբրև ընկալաւ Գրիգոր Կաթուղիկոս զպատասխանի կայսերն և ժողովոյ մետրապօլտացն Յունաց, որոց թողեալ զինն խնդիրսն զայնոսիկ, խնդրէին ի Հայոց միայն բանս հաւատոյ ի նիւթ միաբանութեան, արար զժողովն երրորդ ի Հռոմկլայ յամի 1179. յորում գտան երեսուն երեք Եպիսկոպոսք միայն, ընդ որս էր և Կաթուղիկոսն Աղուանից, վարդապետք, քահանայք, վանահայրք և իշխանք. իսկ երեք հարիւր երեսուն և վեց Եպիսկոպոսք արևելեան Հայոց արգելեալք ի շփոթութենէ ճանապարհաց, զթուղթ հաւանութեան միայն առաքեն ի ժողովն, որպէս և այլք ոմանք մերժեցին զհրաւէր Կաթուղիկոսին:

Ի ժողովի յայսմիկ՝ ուր ընթերցաւ Լամբրոնացին Ներսէս զատենաբանութիւն իւր, ընթերցան և զթուղթըս ժողովոյն Յունաց և կայսերն, և համաձայն գտեալ զայնս դաւանութեան հաւատոյ Հայաստանեայց Եկեղեցւոյ, ստորագրեցին ամենեքին. և վերստին գրեալ ժողովով զգիր դաւանութեան հաւատոյ, առաքեցին ի Կոստանդնուպօլիս. բայց հրեշտակք Հայրապետին հասեալ ի Կեսարիա, և արգելեալք ի խռովութեանց ճանապարհի, դարձան յետս առ Կաթուղիկոսն հանդերձ թըղթովք ժողովոյն. և յայսմիկ միջոցի վախճանեցաւ և կայսրն Մանուէլ յամի 1180, և մնաց անկատար միութիւն երկուց ազգաց Եկեղեցեաց, որով և ապարդիւն եղև հնգետասան ամաց ջանք և աշխատութիւնք:

## ԳԼ. ԼԵ

### Առաջին ժողով ի Սիս, որ սահմանեցան ութն եկեղեցական կանոնք։

(Ամք Տեառն 1204)։—Զաքարիա սպարապետ երկեալ իշխան Հայոց՝ ի զօրավարութեան Վրաց՝ բազում ի նոցանէ կրեալ մեղադրութիւն՝ յաղագս չունելոյ ընդ ինքեանս և Հայկական զօրացն ընդ իւրով իշխանութեամբ ըստ նոցայն սովորութեան զքահանայս և զշարժական սեղան, սակս տեսանելոյ զպատարագ և ընդունելոյ զսուրբ հաղորդութիւն, և նախանձ բարի յանձին բերեալ առ այս և հասու եւս լեալ, եթէ էր յառաջագոյն և յազգս մեր այն սովորութիւն ի բազօթեայս պատարագել, այլ յետ Բագրատունեաց այն անհետացեալ, առաք դրէ թուղթ առ արքայ Լևոն և առ Յովհաննէս կաթուղիկոս, չև եւս լուեալ զկաթուղիկոսութիւն Դաւթի՝ ի Սիս, և առաքեալ անդր առ նոսա զդեսպանս, խնդրեաց ի նոցանէ զերեսին զայսոսիկ առաջարկութիւնս կարի հարկաւորագոյնս յայնմ ժամանակի. նախ՝ շրջեցուցանել ընդ իւր զսեղան պատարագի. երկրորդ՝ զի քահանայք հանդերձիւք կատարեսցեն զպատարագն, որպէս առնէին Վիրք սարկաւագօք և դպրօք. և երրորդ՝ զտօն Վերափոխման և Խաչի կատարեսցեն ըստ աւուրց պատշաճի ընդ Վրաց։

Ապա Լևոն արքայ ի վերայ այսօրինակ խնդրանաց Զաքարեայ, խորհրդեամբ Դաւթի կաթուղիկոսի վաղվաղակի հրամայեաց առնել ժողով առ ինքն ի Սիս ի շրջակայ եպիսկոպոսաց, վարդապետաց և վանահարց և իմաստնոց և այլոց բազմաց. յորոց ի գումարման առաջի եդեալ զխնդիրսն Զաքարեայ, և ուղիղ և բանաւոր զայ-

նըս ղատեալ համաձայն առաքելական կանոնաց, ընդ որս և զինչ ինչ քննելով՝ նուազեալս յայնմ ժամանակի յահէ այլազգեաց յարևելս ուրեք ուրեք՝ ի քննութիւն մատուցեալ, վճռով հաստատեցին ի ժողովս զութն զայսոսիկ բանս ի կանոնագրութիւն եկեղեցւոյ։

ա. Մատուցանել զպատարագ սարկաւագօք և դպրօք և քահանայական զգեստիւք, որպէս սովորութիւն էր յառաջն յազգի մերում, և որպէս օրէն է ամենայն Քրիստոնէից։

բ. Ունել հրաման պատարագ մատուցանելոյ վրանաւ ի բանակի՝ ի վերայ շարժական սեղանոյ ի թագօթեայս։

գ. Մատուցանել պատարագ ոչ միայն վասն ննջեցելոց, այլ և վասն կենդանեաց։

դ. Զտօն Վերափոխման սրբոյ Աստուածածնին կատարել յՕգոստոսի ԺԵ, յորում աւուր և պատահեա-ցի, և զխաչին ի Սեպտեմբերի ԺԴ, յերկիր տէրութեան Յունաց և Վրաց։

ե. Պահել ի Ճրագալոյցն Յայտնութեան և Զատկի մինչև ցերեկոյ, և յերեկոյին ոչ այլ ինչ լուծանել՝ բայց եթէ ձկամբք և ձիթով։

զ. Յարգել զպատկերս Փրկչին և սրբոց ամենայնի։

է. Մի առանց դպիր ձեռնադրելոյ սարկաւագ ձեռնադրել։

ը. Մի տանել կրօնաւորաց առանձին ինչ ստացուած, և կալ միաբան ի վանս և չուտել ևս զմիս։

Առեալ դեսպանաց Զաքարեայ իշխանի զայսոսիկ կանոնս ժողովոյն հանդերձ թղթով, դարձան առ նա յարևելս։

## Գլ. ԼԶ.

### Եռաջին ժողով է Լոռէ վասն պահելոյ զաւրէն կանոնս ժողովոյն Սսոյ։

(Ամք Տեառն 1205)։—Ընկալեալ Զաքարեայ զԹուղթ և զվճիռ ժողովոյն և զԹուղթս երկուց Կաթուղիկոսացն Յովհաննու ի Հռոմկլայ և Դաւթի ի Սիս հանդերձ պատգամաւ արքային Լեւոնի ի ձեռն դեսպանացն իւրոց, վասն որոյ առաքեալքն էին, ուրախութեամբ սրտի ժողով մեծ առնէ ի Լոռի քաղաքի վասն ընդունելոյ ըստ իւրում ըղձի զկանոնսն. ուր հասին ըստ իշխանական հրամանի՝ Սանահնեցին Գրիգոր Տուտէորդի եպիսկոպոս Հաղբատայ, Յովհաննէս վարդապետ Սանահնի, և Դաւիթ Քոբայրեցի, Սարգիս եպիսկոպոս Անւոյ, Վրթանէս Բջնոյ, Գրիգոր Գունայ, Յովհաննէս Կարուց, Եղիա վանահայր Հաւուց Թառայ, Տուրքիկ Թեղենեաց, Մոնոնիկ Գրիգոր Կեչառեցի, Սարգիս Սևանեցի, ընդ որս և Խաչատուր վարդապետ Տարօնեցի առաջնորդ Հաղարծնի վանաց, և Մխիթար վարդապետ Գանձակեցի Գոշ՝ առաջնորդ Գետկայ, և այլ բազում վարդապետք, վանահայրք և քահանայք։

Սոքա հարք ժողովոյն իբրև ընթերցան զԹուղթս և զվճիռս ժողովոյն Սսոյ և եպիսկոպոսացն և Թագաւորին, ոմանք հաւանեցան այնց՝ մանաւանդ Խաչատուր և Մխիթար վարդապետք. այլ որոց անհաւան գտան, գլխաւորք էին Տուտէորդին Գրիգոր, Դաւիթ Քոբայրեցի, Յովհաննէս Սանահնի և այլք բազումք. որովք և երկպառակեալք քակտեցան ի միմեանց։

Եւ յետ այսորիկ Զաքարիա սպասալար զերկպառակիչսն կալեալ և կապեալ ի բանտի, յամենայն վանո-

բայս որ ընդ խեռ իշխանութեամբ պատգամաւորս առաքէ և հրամայէ զկանոնսն կատարել և զԱստուածածնի և ըզ-խաչի զտօնսն ըստ աւուրց պատշաճի կատարել և ի կիւ-րակէս։ Ըստ որոց և թշնամութիւնք, երկպառակու-թիւնք, աղաղակք և կռիւք և այլ արտասուաց արժանի գործք գործեցան՝ ասէ Կիրակոս պատմագիր։

## ԳԼ. ԼԷ.

### Չորրորդ ժողով յԱնի վասն ութն կանոնաց Ժողովոյն Սսոյ։

(Ամք Տեառն 1207)։— Առ ի խաղաղել Զաքարեայ Սպասալարի զշփոթութիւնսն և զաղմուկս յեկեղեցա-կանաց Հայոց ի՛վանորայսն Հայաստանի յարուցեալս, որ յայնժամ առաւել ևս սաստկացեալն էր ի նոսին, և վե-րջստին ընդունելոյ ամենեցուն նոցա յեկեղեցական արա-րողութիւնս զութն կանոնսն Ժողովոյն Սսոյ, որոց վասն և արարեալ էր ժողով յառաջնումն ի Լոռի, հրաման եհան վերստին գումարել եպիսկոպոսաց և վարդապետաց յԱնի առ ընդունելութիւն կանոնացն՝ որպէս ասացաւ՝ ի համօրէն եկեղեցիս Հայաստանեայց։

Ընդ գումարեցան նոյն եպիսկոպոսք և վարդապետք ա-ռաջնոյ ժողովոյն, այլ յայսմ նուագի ոչ եկն ի ժողով անդր Մխիթար Գօշ, որում ամենեքեան պատկառ կա-յին առ ծերութեանն՝ և առանց նորին հաւանութեան չհաճէին ընդ կանոնսն. ապա Զաքարիա ստիպեաց ըզ-վարդապետս ժողովոյն ընդունել զկանոնս, որք խնդրա-նօք իւրովք առաքեալքն էին, և տալ ձեռագիրս համա-ձայն թղթոց ժողովոյն։ Առ այս թէև ժողովն բովան-դակ առանց ներկայութեան Գօշն Մխիթարայ ըստ ամե-նայն ստիպմանց սպասալարին ոչ տային զհաւանութիւն՝

*ընդունելութեան, այլ՝ նորա ցուցեալ նոցա զթուղթս հաճութեան Մխիթարայ առ ինքն իսկ գրեալ. և ի չհա-ճել նոցա ընդ այս ևս, կոչեալ զՄխիթար յապարանս իւր ի վանաց նորա, և զկարծիս նորա և հաւանութիւն ի բերանոյն իսկ լուեալ, ապա պատուիրէ նմին Մխիթարայ երթալ արձակել միանգամայն զժողովն յիւրաքանչիւր տեղիս, չանսացեալ այլ ևս հաւանութեան ժողովոյն։ Իսկ Մխիթար զպատգամս միայն առաքեալ զԶաքարեայ առ ժողովն, յորդորեաց զնոսա գնալ ի վանս այր իւրաքանչիւր։*

*Բայց Զաքարիա սպասալար յետ աւուրց ինչ զանհաւանս զամենեսին զաղտ ի միմեանց արտաքսէ ի վանաց յայլ և այլ տեղիս. յորոց ոմանք ըստ խնդրանաց եղբօր Զաքարիա Իւանէի անդրէն ի տեղիսն դարձեալք, ըստ հաճութեան Զաքարեայ զկանոնսն կատարեցին ըստ Սըսոյ վճռոյն, և ոմանք ըստ քուրեանց սովորութեան զպատարագն առանց պաշտօնէի մատուցին և առանց քահանայական զգեստուց, որք յետոյ անհետացան և ի նոցանէ։*

## ԳԼ. ԼԸ.

### Երկրորդ ժողովն ի Սիս, ուր եղան տասն և հինգ կանոնք վասն եկեղեցականաց։

(Ամք Տեառն 1243)։ — *Ի քսաներեքերորդում ամի Հայրապետութեան Կոստանդեայ Կաթուղիկոսի Ա. Բարձրբերդցւոյ՝ պէսպէս անկարգութիւնք մտեալ և յազգ մեր, և ցոփութիւնք յեկեղեցականս և ի ժողովուրդս, որպէս տարածեալ էին յայնմ ժամանակի և յաշխարհ բովանդակ, մեծամեծ թուլութիւնք յայսպիսեաց լինէին։ Այս և Կոստանդին Կաթուղիկոս խնամ մեծ ի վերայ*

հօտին իւր ցուցեալ վասն զգաստացուցանելոյ զհաւատա-
ցեալս իւր, եկեալ յաթոռանիստն Հռովմկլայէ, գնայ առ
արքայն Հեթում ի Սիս. որոյ խորհրդով և հրամանաւ
գումարէ Ժողով մեծ ի դարման անկարգութեանցն, յե-
պիսկոպոսաց, յառաջնորդաց, ի վանօրէից և յիմաստուն
վարդապետաց, յորս երևելի լինի և մեծն Վարդան Բար-
ձրբերդցի. Եւս և յաշխարհական իշխանաց արևմտեայ
կողմանց հանդերձ արքայիւ և արքայորդւով յամի 1243։

Ուրանօր ապա յառեալ Ժողովոյն զիւրաքանչիւր ան-
կարգութիւնս յառաջ բերեալ և հերքեալ, ընդդէմ նո-
ցին ամենայնի կարգեցին Ժողովով զքսան և հինգ կանո-
նըս. որք թէպէտ և յառաջագոյն եւս կային յազգի մերում,
այլ ի շփոթութեանց և յանկանիլ աշխարհին Հայոց
ընդ այլ և այլ իշխանութեամբ և ի ձեռս խառն ազգաց,
աղաւաղեալք էին այն ամենայն կանոնք, զորս հաստատուն
և վճռովք կանոնադրեցին յայս երկրորդ Ժողով Սսոյ.
որք ըստ Կիրակոսի ականատես պատմագրի Գանձակե-
ցւոյ՝ են օրինակ զայս։

ա. Ձեռնադրութիւնք առանց գրամոց լիցին։

բ. Վկայեալքն միայն ընարեսցին յեպիսկոպոսութիւն։

գ. Եպիսկոպոսունք ձեռնադրեսցին զէթ երեսնամեայ,
աշխարհական երէցք քսան և հինգամեայ, և սարկաւագք
քսանամեայք։

դ. Արժանաւորք միայն ձեռնադրեսցին քահանայ և
սարկաւագ։

ե. Քահանայք ծոմ կատարեսցեն զխորհուրդ եկեղե-
ցւոյ՝ բաց ի վտանգէ մահուան։

զ. Խորհուրդք եկեղեցւոյ պատկառանօք պաշտեսցին։

է. Աւազանն մկրտութեան հաստատուն լիցի յեկեղեց-
ւոջ։

ը. Պակաս մի՛ լիցի ի մերձաւոր ազգականս ցեօթն ծը-նունդ . . . :

թ. Եպիսկոպոսունք կամ երիցունք յայլոց թեմս մի՛ իշխեսցեն կատարել զպաշտօն իւրեանց առանց հրամանի:

ժ. Յամենայն տեղիս ուսուցիչք կարգեսցին:

ժա. Զսուրբ գիրս միայն գիտունք և ուղղափառք գը-րեսցեն:

ժբ. Երկիցս ի տարւոջ շրջեսցին եպիսկոպոսունք յայ-ցելութիւն ի թեմս իւրեանց:

ժգ. Նոր և գիտուն լիցին խոստովանահարք, որք և յամենայն կիւրակէի յորդորեսցեն զժողովուրդն ի խոս-տովանութիւն:

ժդ. Զսուրբ հաղորդութիւնն առանց բուրվառի և մո-մեղինի մի՛ տարցին առ հիւանդս:

ժե. Պոռնիկք և հմայողք պատժեսցին:

ժզ. Հայհոյիչք աշխարհական դատաստանաւ պատու-հասեսցին:

ժէ. Պահք առանց ձկան և ձիթոյ պահեսցին՝ բաց ի հարկէ հիւանդութեան:

ժը. Քահանայք եթէ պարապեսցեն վաճառականու-թեան կամ որսորդութեան՝ զրկեսցին ի ժողովրդենէ իւ-րեանց:

ժթ. Ժողովուրդք մի՛ ըստ հաճոյս իւրեանց ընտրեսցեն ժողովրդապետս այս ինքն՝ ծխատէր, այլ՝ հրամանաւ եպիսկոպոսին:

ի. Քահանայք միանգամ ի տարին մասնաւոր խնամով քննեսցեն զընթացս ժողովրդեան իւրեանց, թէ յորում զարգանան և յորում նուազին:

իա. Ժողովրդականք տայցեն հաս քահանայից:

ԻԵ. Վահանայք հոգասցեն վասն պիտոյից եպիսկոպոսացն։

ԻԶ. Նոյնպէս եպիսկոպոսունք վասն Հայրապետական Աթոռոյն։

ԻԷ. Ներկուքին աղօթքն՝ առաւօտու և երեկոյի՝ այս լինիցին Գոհանամք զքեզ և Լոյս զուարթ ծերոյն, յորոց ի վերջն երգեսցեն զՍուրբ Աստուածն, աւարտեսցեն ի դէմս Որդւոյ՝ յարելով զկնի զբառսդ Քրիստոս Աստուած մեր՝, զի յայտնի ծանիցի թէ ի դէմս Որդւոյ ասի խաչեցարն։

ԻԸ. Խորհուրդն վերջին օծման հիւանդաց՝ անխափան կատարեսցի իւղով օրհնեցելով ի Վահանայէն, որպէս կանոնեալ է յառաջ ժամանակաւ և մեծ Հայրապետն Հայոց Յովհաննէս Իմաստասէր՝ յաջորդ Ներսէս Կաթուղիկոսի։

## ԳԼ. ԼԹ.

### Երրորդ ժողովն ի Սիս յաղագս վարդապետութեան հաւատոյ Հոգւոյն սրբոյ։

(Ամք Տեառն 1251)։—Այս խնդիր շարժեցաւ, ասէ Վարդան մեր պատմագիր, ի մեծ պապէն Հռովմայ (Ինոկենտիոս Դ.) ի թուին Հայոց Չ. և գրեաց յամենայն ազգս քրիստոնէից, առ Կոստանդին Կաթուղիկոս և առ արքայն մեր Հեթում, թէ պարտ է զամենասուրբ Հոգին Աստուած՝ խոստովանել ի Հօրէ և յՈրդւոյ բղխեալ, և ոչ եղև հաճոյ, ասէ, Յունաց և Ասորւոց, բաց ի Հայոց։

Ընդ որ արքայ և Հայրապետն գումարեն ի Սիս ժողով Եպիսկոպոսաց և Վարդապետաց Հայոց, յորում և ինքն գտանէր Վարդան, հաւանեցան ընդ այն. զորմէ

Կաթուղիկոսն և Արքայ գրեցին առաջ առ եպիսկոպոսունս ի Մեծն Հայս և մասնաւորապէս առ Վանական վարդապետ համբաւեալն իմաստութեամբ ի ժամանակին։

Իսկ Արևելեան Վարդապետք քննեցին, ասէ նոյն Վարդան, զդաւանութիւն առաջնոց սրբոց ի ձեռն աստուածամերձ վարդապետին Վանականի, և գտին զայն համամիտ երևելի սրբոց փառաւորաց՝ Աթանասի, Գրիգորի Աստուածաբանի, Գրիգորի Նիւսացւոյն, Գրիգորի Լուսաւորչին և այլոց սրբոց։

Հայաստանեայցս Եկեղեցի, առ որս ասել Յայ մեզ, չէ շեղեալ երբէք ի բանից սրբոց Հարց՝ ի հաւատոյս՝ որք հիմնեալք են ի վերայ Աւետարանին բանի, այլ եղեալ է միշտ և խորշի ի նորաստեղծ և ի նորամոյծ բառից ինչ ի յետագայից՝ ի վարդապետութիւնս հաւատոյ, որպէս բղխումն ասել Հոգւոյն սրբոյ՝ և յՈրդւոյ. զոր և նա ինքն իսկ ոչ ուրանայ Չամչեան, զի բովանդակ վկայութիւնս վարդապետաց եկեղեցւոյ մերոյ, զորս յառաջ բերէ նա ի պատմագրութեան, Գիրք Գ, գլ. ԼԵ, ոչ երբէք գտանի բղխումն Հոգւոյն սրբոյ ասացեալ և յՈրդւոյ, մանաւանդ ի Վանականին բանս, որով ջանայ ցուցանել զայս վարդապետութիւն. զի բղխումն և ելումն՝ ոչ նոյնանշան իմաստս ունին. Եկեղեցի Հայոց և վարդապետք նորին ընդ սրբոյ Լուսաւորչին իւրոյ ըստ Փրկչին բանի ի սուրբ Աւետարանին խոստովանին, զՀոգին ճշմարտութեան, որ ի Հօրէ ելանէ. Յովհ. գլ. ԺԵ. 26։ Եւ զի առնու յորդւոյ՝ վկայէ ևս անդ. յիմմէ անտի առնու. ԺԶ. 14. խոստովանին նոյնպէս զհամագոյակցութիւն Հոգւոյն սրբոյ ընդ Հօր և ընդ Որդւոյ՝ ըստ սրբոյ Լուսաւորչին, "Հայր յանձնէ, Որդի ի Հօրէ, և Հոգին սուրբ ի նոցունց էութենէ"։

Սակս չեն մեզ այլ վարդապետութիւն կարեւոր ի դաւանութեան Հոգւոյն սրբոյ՝ աւելի քան զքարոզեալն մեզ ի սուրբ Աւետարանէն եւ ի մերոց Լուսաւորչէն. ընդունայն եւ անհիմն պահանջմունք են պապից, եւ ընդվայր կեղեքումն Ճղխուած բառիս՝ ի Չամչեանէ, մինչդեռ նա անհաւատարիմ գտանի այսպէս յիւրմէ իսկ յառաջ բերելոցն բանից սուրբ վարդապետաց մերոց, յորս ոչ գոյ բառդ, որպէս ասացաք։

## ԳԼ. Խ.

### Չորրորդ ժողով ի Սիս վասն Ծառազարդին։

(Ամք Տեառն 1292)։ — Յամին 1292 դիպեցաւ Նուազատիկ՝ այն է խառնուրդումն աւուր տօնի Զատկին, յարեաւ խռովութիւն, վէճ եւ աղմուկ ի տեղիս տեղիս, մինչեւ ոմանց ի վերջն Ապրիլի ընդ Յոյնս կատարել զտօն, եւ բազմաց ըստ առաջնոյ տոմարին միով շաբաթով յառաջ քան զՅոյնս. եւ առ այս երկաքանչիւր կողմանք յիւրաքանչիւր կարծիս պնդեալ, հակառակութեամբ ընդ միմեանս վիճէին։

Զայս ամենայն կամեցեալ արքայի Հեթմոյ բառնալ ի ժողովրդենէ եւ ի հոգեւորականաց, կոչեաց առ ինքն ի Սիս զՍտեփաննոս Կաթուղիկոս ի Հռոմկլայէ, հրամայէ գումարել ժողով եպիսկոպոսաց եւ վարդապետաց ի քաղաքն անդր։

Ապա ի ժողովին յայտնի անաչառ քննեալ զուղիղ ժամանակ զատկի եւ զգուշաւոր հետազօտութեամբ ի վերայ հասեալ, յայնմ ամի ընդհանուր Կիլիկիա տօնէ զզատիկն ընդ Յունաց ի վերջն Ապրիլի. բայց ըստ պատմութեան Կիլիկիոյ՝ բնակիչք Մեծին Հայոց ի Կեսարիոյ ի վեր՝ ուրոյն ի Կիլիկեցւոց ըստ իւրեանց առաջնոյ տոմա-

րութեան տօնեցին յայնմ ամի զզատիկն միով շաբթով յետոյ քան զնոսա։

## ԳԼ. ԽԱ.

### Առաջին ժողովն է Սսինի, որ գրեցաւ Թուղթ առ Գրիգոր Կաթողիկոս Անաւարզեցի վասն անփոփոխ պահելոյ զծէսս Հայաստանեայց Եկեղեցւոյ։

**(Ամք Տեառն 1294)։** — Վարդապետք Արեւելեան Եկեղեցւոյ Հայոց լուեալ զյաջորդութիւն Գրիգորի Անաւարզեցւոյ յաթոռն Հայրապետական, սկսան խռովիլ ընդ այն, յարուցանելով տրտունջ ընդ միջ, զի գիտէին՝ եթէ նա հետամուտ է ծիսից փոփոխութեան, նմանելով այլոց ազգաց. ըստ որոյ և Հռոմն կոչէր մականուն նորա. զի ի յաջորդութեան Կոստանդեայ Երկրորդի յամի 1287, յորժամ Լեւոն արքայ ջանայր հաւանեցուցանել զժողովն, զի ընտրեսցի նոյն ինքն Գրիգոր, հայրք ժողովոյն բովանդակ ընդդէմ կացեալ կամաց արքային, ոչ ընկալան զնա, զի Հռոմ է ասէին, զառաջնորդութիւն այդպիսեաց ոչ կամիմք. որով և խափանեցաւ զառաջին ընտրութիւն նորա։

Արդ զահակալեալ սմին Գրիգորի յաթոռն Հայրապետական յամին 1294, յետ գերութեան Ստեփաննոսի Դ.ի յԵգիպտոս, առ աւերանացն Հռոմկլայի, փոխեաց զԱթոռ կաթուղիկոսութեանն ի Սիս, ջանացաւ զայսոսիկ ծէսս մուծանել յԵկեղեցի Հայոց ըստ Լատինացւոց և Յունաց եկեղեցեաց։

ա. Խառնել ջուր ի բաժակն, և յաւելուլ ինչ ինչ ի սպաս պատարագի։

բ. Բառնալ զխաչեցարն ի սրբասացութենէ։

Գ. Զամենայն տօն տօնել ըստ աւուրց ամսոց։

Դ. Պահել պահս հսկմանց ըստ Լատինացւոց, նոյնպէս և զայլ քանի մի պահս։

Ե. Փոխել զբանս Մաշտոցին ի կանոնս մկրտութեան, դրոշմի, ձեռնադրութեան և այլոց օրհնութեանց։

Զ. Միայն ի չորս եղանակս տարւոյն ըստ Լատինացւոց առնել ձեռնադրութիւն։

Է. Փոխել ինչ ինչ ի ժամերգութեան յառաւօտու և յերեկոյի, և յաւելուլ ի նոսին պէսպէս կցուրդս այլոց ազգաց։

Ը. Ի կիր առնուլ զիւղ երեխայից։

Թ. Կատարել զխորհուրդ վերջին օծման հիւանդաց։

Եւ վասն այսոցիկ ամենայնի կատարմանց արարեալ էր նա զնոր տօնացոյց պահեալ ի ծածուկ առ իւր. զի սպասէր յաջող ժամանակի ի լոյս ածելոյ. բայց յայսմ ամենայնէ կանոնաց և ոչ մին ընկալեալ եղև ուրեք ոչ ի Կիլիկիա, և ոչ յարևելս. միայն, զի վերջին օծումն ոմանց եղև ընդունելի, և ինքն ի ծխիցն, զորս կարէր՝ կատարէր ի ծածուկ. զորոց ոմանց վկայէ ինքնին, որպէս խառնել զջուր ի բաժակն, ևլն։

Տեղեկացեալ Երևելեան Վարդապետք ի լոյս, թէ Գրիգոր Կաթուղիկոս զայս ամենայն Լատինադաւան և ըղՅունադաւան փոփոխութիւնս յառաջադրեալ է մուծանել ի ծէսս եկեղեցւոյ Հայոց, կամ լաւ ևս, բառնալ զայնըս, դժկամակ յոյժ ընդ նորաձևութիւն, արարին ժողով ի Սիւնիս յամի 1294. ուր և գրեալ թուղթս առ նա ինքն Գրիգոր, առաքեն բազմանուն ստորագրութեամբ, զորոց զանուանս և զթղթոյն պատճէնս դնեմք աստանօր։

Սարգիս Եպիսկոպոս առաջնորդ Նորավանից, Գրիգոր Եպիսկոպոս Սաթևու, Յովհաննէս Եպիսկոպոս Բջնոյ,

Յովհաննէս Եպիսկոպոս Հաղբատայ, Գրիգոր Վարդապետ Բջնեցի, Մարգար Վարդապետ եղբօրորդի Մխիթարական վարդապետի, Եսայի Վարժապետ՝ որոյ աշակերտ էր Յովհաննէս Քռնեցի, և Գուլիթ Վարդապետ Մեծբարատոյ, ընդ որս և Ստեփաննոս Ուռպելեան Եպիսկոպոս Սիւնեաց, և եղբայր նորա Ելիկում իշխան, և հօրեղբօրորդի նոցա Լիպարիտ որդի Իւանեայ և այլ ևս իշխանք։

Իսկ ի թղթոյ ժողովոյն՝ կարևորսն և եթ դնեմք աստանօր. յորում նախ յայտնեն կաթուղիկոսին զկատարածանս իւրեանց յառաջագոյն ևս զմիաբանել վասն միաբանութեան նորա, և հաստատել զայն, առէ յերաշխաւորութեան կրօնից և աւանդութեանց, ազդեն նմա ի բաց կալ յայնօրինակ նորաձևութեանց. ապա այսպէս ուրեմն աւարտման բանից իւրեանց. «Գոհութիւն լիցի աստուածային գլխոյ Հայրապետութեանդ, զի թէպէտ հնազանդ եմք առ մենայնիւ Տեառնդ մերոյ, սակայն աղաչեմք զանձն ի կարծիս կրսեր և տգէտ մնաց մերոց բառնալ և բժշկել. զի տկարն յամենայնի շահել պարտ է. և զոր խնդրեմքդ՝ հեթանոսական թղթովք ձեռնադրել և առնել ձեռնարկ հաստատուն և անկախ կտակաւ՝ միաբանութեամբ սուրբ և երջանիկ եպիսկոպոսացդ, և ուղարկել առ մեզ իբր ըղձակար անձինն, զի յայնժամ առնել հաստատութեամբ և հլու հպատակութեամբ հնազանդ լիցուք աստուածային գլխոյդ. և թագաւորեսցես յեկեղեցիս մեր՝ զանհաւորեալ որպէս զարեգակն. ապա թէ աւելի ինչ կամ պակաս կամիք մուծանել յեկեղեցիս մեր, զոր ոչ ունիմք ի հարցն, և կամ գրեալքս խոստան են առ ձեզ, յայնժամ մի՛ աշխատ լինիք, և մի՛ զմեզ աշխատ առնէք. ընդ ձեր կամաց լիցի աշխարհդ այդ, և այլ ազգ որ կամիցի,

և զմեզ թողէք ի մեր զխտութիւնս. և մեք կայցուք մը-նասցուք՝ ակն ունելով վերին այցելութեանն։ Ողջ լեր թագաւորական արդարութեանդ ծնողդ իմաստից, և անվախ ախոյեանդ սուրբ եկեղեցւոյ Գրիգորիոս կաթողիկոս Հա-յոց, և Տէրն տերանց հովանասցի ի վերայ գլխոյդ»։

ԳԼ. ԽԲ.

Հինգերորդ ժողովն ի Սիս վասն հաւատոյ և ծիսից։

(Ամք Տեառն 1307)։ — Հինգերորդ ժողովքն Սսոյ եղև յետ մահուան Գրիգորի Անաւարզեցւոյ հրամանաւ Լևոնի արքայի և Հեթմոյ թագաւորահօր. վասն զի նախ ժողովով ընտրեցին նոր կաթողիկոս և ապա ընկալցին և հաստատեցին զկանոնս ծիսափոխութեան Գրիգորի զա-րարեալն ի կենդանութեան իւրում. զորս նա ցանկայր առ իւրով ժամանակօք հաստատել ի ձեռն ժողովոյ եկեղեցիս Հայաստանեայց. զորոյ և զհանգամանս նախ առաջին դիցուք, որպէս և յիշատակեցաւ ի վեր անդր։

Գրիգոր Անաւարզեցի յառաջագոյն պատրաստեալ ըզ-փոփոխութիւն ծիսից, զոր վաղուց ի մտի եդեալն էր, այն-ինչ խաղաղանայր աշխարհ Կիլիկիոյ, ապա առ ի հաւա-նեցուցանել ընդ այն զարևելեան եպիսկոպոսունս, ժամ պատեհ վարկուցեալ գրէ առ ամենեսին նոսա թուղթ՝ առաջի առնելով նոցին զխորհուրդ իւր. որոց երևելիքն են Յովհաննէս Որբէլ Արքեպիսկոպոս Սիւնեաց, որ պա-յազատէր և զմարմնաւոր իշխանութիւն աշխարհին. Զա-քարիա Ծործորեցի Արքեպիսկոպոս Արտազու և առաջ-նորդ Թադէոսի վանաց. Յովհան վարդապետ Ծործորե-ցի՝ այն է Եզնկացի. Յովհաննէս Արքեպիսկոպոս Բջնոյ և առ բազումս։

Ապա իբրև յարեաւ հակառակութիւն ընդ մէջ Յովհաննու Որբելի և Զաքարիայ Ծործորեցւոյ ընդ բանս Թղթոց կաթուղիկոսին յարևելս, որք և հանգամանօք իսկ հասին ի լուր ինքեան Գրիգորի, ևս և յայլ և այլ կողմանց այլ և այլ զրոյց ընդ բանս Թղթոց նորա յաղագս փոփոխութեան ծիսից, կասկածեալ՝ եթէ խափանեսցի գուցէ խորհուրդ իւր, զոր ցանկայր հաստատել ժողովով ի կողմն իւր ունելով զԼևոն արքայ, բայց զի ոչ ինչ իշխէր առնել Թագաւորն առանց հրամանի Թագաւորահօրն Հեթմոյ, նորին աղագաւ ապա Գրիգոր Կաթուղիկոս գրեաց յաղագս փոփոխութեան ծիսից և ժողովս առնելոյ ստիպմամբ առ Հեթում Թուղթ յորդորանաց խընդրեալ ի նմանէ՝ ժողով լինել և զարժանի փոփոխութիւն ծիսից ընդունել և համաձայնել այլոց եկեղեցեաց. ըստ որոյ և ինքն պատրաստէր զնամակ դաւանութեան, նշանակելով ի նմին զինն գլուխս բանից, զորս ցանկայր ժողովով հաստատել, սպասելով պատասխանւոյ առ ի Հեթմոյ։

Այլ մինչ չև ընկալեալ էր Գրիգորի զկատարումն փափագանաց իւրոց՝ հասեալ նմա վախճան, փոխեցաւ յաստեաց յամի 1306. զորոյ զմահուանէն Ղազար Կաթուղիկոս Ջահկեցի ի գլուխս ժողովոց այսպէս վկայէ, համարելով աստուածահաս պատուհաս. "Քանզի, ասէ, Գրիգոր Անաւարզեցի յաւուր միում մինչ նստեալ ի վերայ աթոռոյն իւրոյ հայհոյէր զառաջին սուրբ Հայրապետըս մեր, նոյնժամայն յանկարծակի անկեալ յաթոռոյն դիւահարեցաւ, և բազում աւուրս լլկեալ ի դիւաց, յանկարծակի դառն մահուամբ վճարեաց զկեանս իւր ,, ։

Ապա ի հրամանէ արքայի և Թագաւորահօր՝ որպէս յիշեցաք ի վերոյ՝ գումարեալք ի ժողովն ի Սիս, քառասուն

և մի Եպիսկոպոսք, որոց անուանք մի առ մի գրեալք են յընդարձակ պատմագրութեան Չամչեանի, տասն վարդապետք, և եօթն վանահարք, քահանայք և երէցք արքունի պալատանն և այլք, և կրօնաւորք ոչ սակաւք, և արքայ և Հեթում և պարագայք և պալատականք նոցին, ընդ որս և իշխանք աշխարհին և պարոնայք, ընթերցան զնամակ դաւանութեան Գրիգորի և ընկալան զինն գլուխ բանս փոփոխութեան ծիսից բովանդակեալսն ի դաւանութեան, որ դէպ ի ստորև, և ստորագրեցին այնմ նամակի հարք ժողովոյն յանձնառութեամբ ամենայնի այնոցիկ։

Յետ որոյ հաւանութեամբ բովանդակ ժողովոյն կոչեցաւ վերստին յաթոռ Հայրապետութեան Կոստանդին Կեսարացի՝ ընկեցեալն յաթոռոյ ի Հեթմոյ Բ. արքայէ, փոխանակ Գրիգորի։

Կանոնք դաւանութեան նորին Գրիգորի ։

Ա. Խոստովանիլ ի մի անձն Քրիստոսի բացայայտ բանիւք զերկուս բնութիւնս և զերկուս կամս և զերկուս ներգործութիւնս՝ զաստուածային և զմարդկային։

Բ. Յերեքսրբեանցութեան յաւելուլ զբառդ Քրիստոս, և ասել, Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ Քրիստոս, որ խաչեցար վասն մեր, ողորմեա՛ մեզ։

Գ. Տօնել զտօն Ծննդեան Քրիստոսի ի Դեկտեմ. 25, ըստ Յունաց և ըստ Լատինացւոց. ըստ այսմ և զայլ տօնս, որք ի նոյն հային՝ ըստ պատշաճի աւուրց ամսոյ. նոյնպէս և զայլ ամենայն տօնս ըստ Յայսմաւուրաց կատարել։

Դ. Պահել զաւուրս հինգ վասն տօնի Ծննդեան Քրիստոսի, և զաւուրս հինգ վասն տօնի Յայտնութեան Քրիստոսի։

Ե. Ի ճրագալոյցն Ծննդեան, և Յայտնութեան և Յարութեան՝ ձկամբ և ձիթով միայն լուծանել։

Զ. Ի պաշտաման Պատարագի զգենուլ զուրբ զգեստս ըստ իւրաքանչիւր աստիճանի կարգին։

Է. Ի սեղան խորհրդոյն դնել զՊորփիւրայ կամ մարմնակալ։

Ը. Ի խորհուրդ պատարագին արկանել ջուր ի բաժակն։

Թ. Ընդունել զեօթն ընդհանուր ժողովսն և զսահմանադրութիւնս նոցա։

Գլ. ԽԳ.

Երկրորդ ժողով ի Սիս վասն վերստին ընդունելոյ զկանոնս ժողովոյ նորին։

(Ամք Տեառն 1309)։—Յետ սրախողխողելոյ Լևոնի և թագաւորահօրն Հեթմոյ ի Պիլղար իշխանէն Թաթարաց յԱնարզաբայ քաղաք ընդ այլ իշխանս Հայոց երևելեաց յաղագս ատելութեանցն ի վերայ փոփոխութեանց ծիսից Հայաստանեայց եկեղեցւոյ ըստ մատնութեանց ոմանց իշխանաց մերոց, գահակալեալ յաթոռ թագաւորութեան Օշնի եղբօր Հեթմոյ Բ.րդի, հրաման առ ամենայն Առաջնորդս հանէ կատարել անխափան զկանոնսն ժողովոյն Սսոյ զարարեալսն յԱնաւարզեցւոյն։

Ընդ այս հրաման արքայի ոչ հաճեալ երբէք արևելեան Եպիսկոպոսաց Հայոց, և արևմտեայց ամբոխեալ առհասարակ վանահարց և ժողովրդոց, յարուցին լցին յամենայն տեղիս խռովութիւն մեծ, մինչև յեկեղեցիս, ի փողոցս և ի հրապարակս և ի վանորայս բողոք բառնալ և ոչ ընդունել զկանոնսն մանաւանդ զտօնսն և զպահսն և զխառնումն ջրոյ ի բաժակն և զայլայլութիւն Սուրբ Աստուածածին։

Ապա Օշին ի խաղաղել զայս ամենայն, պատգամ յղեաց առ նոսա խոստանալով ըստ կամաց նոցին առնել, գնայ ի կողմանս Բաղիշոյ և հրամայէ ժողով լինել անդ եպիսկոպոսաց և վարդապետաց, զի քննեսցեն զկանոնսն և որոշեսցեն՝ զինչ արժանն է առնել։

Բայց Եպիսկոպոսք և Վարդապետք ամենեքին՝ առ որս հրաման եհաս արքունի ի վերայ բանիս այսորիկ, հրաժեշտ տուեալ ընդ կոչումն, դիմեն ի Սիս և անդ ժողով արարեալ միանգամայն մերժեն զգործս ժողովոյն Սսոյ ի հինգերորդ նուագի և հերքեն զկանոնս ծիսափոխութեան, բարձեալ միանգամայն զաղմուկ և զխռովութիւն. ուր հաւաքեալ և մեծ բազմութիւն քահանայից, սարկաւագաց, կրօնաւորաց և միանձանց և անհամար ժողովրդոց՝ արանց և կանանց, բողոք բառնային ընդ ծիսափոխութիւնսն Հայաստանեայց Եկեղեցւոյ։

Թէև Հարք ժողովոյս հուսկ ապա կրեն զմեծամեծ հարուած ի բարկութենէ արքային, ոմանք զբանտարկութիւն, ոմանք զաքսորանս և բազումք ի ժողովրդոց զմահ ևս, բայց այսու ամենայնիւ ոչ ոք ի նոցանէ ընդ կամս արքային հաճեալ պահեն զկանոնս ժողովոյն, այլ միայն անխափան կանոնքն կատարեցան յարքունիս և ի կաթուղիկոսարանի։ Զի ի վարել ուրուք այսոքիւք կանոնովք ի ժողովուրդս, նորանոր չարիք երևէին, որպէս տեսանի ի պատմութեան Կիլիկիոյ։

ԳԼ. ԽԴ.

Առաջին ժողով յԱդանայ վասն ծիսից և հաւատոյ։

(Ամք Տեառն 1316)։—Տեսեալ Օշնի եթէ բռնանալով ի վերայ եպիսկոպոսաց և առաջնորդաց աշխարհին՝ ոչ երբէք անէ զազգն և զԵկեղեցին յընդունելութիւն

ծիսից և փոփոխութեան կանոնացն, այլ յաւէտ երկպառակութիւն, և մահ և օձտումն ի միմեանց յառաջանայ յազգին, մանաւանդ թէ և Գրիգոր Եպիսկոպոս Կարնոյ սպանաւ վասն խառնելոյ նորա զջուր ի բաժակն, և թէ Սարգիս եպիսկոպոս Երուսաղեմի առ՝ ոտն արկեալ զհրաման իւր և Կոստանդեայ Կաթուղիկոսի, հրամանաւ ամիրային Եգիպտոսի նստաւ յԵրուսաղէմ, և ընդվզեալ ի կաթուղիկոսական իշխանութենէ, ինքնագլուխ վարէր զիշխանութիւն, յղեաց դեսպանս առ Կղեմէս պապն Հռովմայ վասն գժտութեան ընդ մէջ իւր և արքային Կիպրոսի, ևս և վասն հրաման խնդրելոյ ի նմանէ պահել ի պալատան իւրում զվեց Լատին կրօնաւորս ի վանացն Կիպրոսի. առ որ և պապն գրեալ, հրաման տայ պահել ըստ ցանկութեան իւրում զկրօնաւորսն ի պալատան իւր։

Ընդ այս խռախուսեալ արքայի առնու ի ձեռն դարձեալ զտիպումն առաջնորդաց՝ վասն անխափան պահելոյ զկանոնսն. և իբրև ոչ կարաց առնել ինչ ըստ առաջնումն, յարուցանէ հալածումն մեծ ի վերայ նոցա. ընդ որ ևս հուսկ ուրեմն անձարացեալ, վերստին ժողով արար հրամանաւ իւրով յԱտանայ քաղաքի ի տաճար սրբոյն Մինասայ յամի 1316, ի ներկայութեան իւր և բոլոր պալատականացն և մեծամեծ իշխանաց և նախարարաց տէրութեան իւրոյ։

Յայս հրաման արքունի բազումք դժուարացեալք, ոչ իսկ եկին ի ժողովն. իսկ որ սակաւք յեպիսկոպոսաց գտան անդ, էին անձինք եօթնևտասն, որք հնազանդեալք հրամանին՝ ընթերցան զսահմանագրութիւն ժողովոյն և զինն կանոնս այնորիկ, ևս և զնամակ դաւանութեան Գրիգորի, ընկալան դարձեալ և հաստատեցին զայն ստորագրութեամբք ամենեցուն։

Բայց այսոքիկ սահմանադրութիւնք և ինն կանոնք թէ և երկիցս հաստատեցաւ, թէ և ընկալաւ ի ժողովս, այլ նոքին իսկ հարք ժողովոյն առաջնոյն և վերջնոյս՝ երբէք չվստահացան կատարել յեկեղեցիս առ ահի ժողովրդոցն. քան որոց երևի թէ՝ բռնութեամբ իշխանութեան լինէին ժողովքն։

ԳԼ. ԽԵ.

Նշանաւոր ժողով ի Սիս վասն պաշտպանելոյ նամակի Պապին։

(Ամք Տեառն 1342)։ — Յառաջնում ամի Հայրապետութեան Մխիթարայ Գռներցւոյ, Ներսէս Եպիսկոպոս Ուրմեայ տուեալ զանձն ի կարգս Ունիթոռաց եկն առ նա, որ հալածանս կրեալ էր յազգէն ցայն վայր յաւուրս Յակոբայ Սսեցւոյ. այլ իբրև և ի Մխիթարայ յանդիմանեցան գործք նորա իբրև արհամարհող օրինաց, դարձեալ գնաց առ Բենեդիկտոս Պապն Հռովմայ, և յԱւենիոն քաղաք, և յարեալ անդ յոմանս յազգէ Հայոց՝ որք ի կարգէ Ունիթոռացն էին, և յինքեանս յանկուցեալ ընդ Լատինս ոմանս փորձառուս Արևելեան իրաց ըստ իւրեանց վկայութեանն, մատուցին պապին զչարախօսութիւն ծանր զՀայոց Եկեղեցւոյ և արևելեայց, ջանացեալ ցուցանել՝, թէ լի են Հայք ամենայն մոլորութեամբք. զորպիսի ամբաստանութիւն գրեալ էր յառաջագոյն առ պապն և գործակից Ներսիսի՝ Սիմէոն Բէկ՝ եպիսկոպոս Կառնոյ՝ հալածեալն ի Կիպրոս յերեսաց Հայոց։

Եւ որ և ամենեքին նոքա առաջնորդութեամբ Ներսիսի զամենայն ինքնահնար ամբաստանութիւնս զՀայոց ժողովեալ ի մի գիրք, կցկցեն ի վերայ եկեղեցւոյն Հայոց

ղհարիւր տասն և եօթն մոլորութիւնս հաստատեալ բա-
նիւք ամենայց հակառակասիրաց, և մատուցանեն պապին,
յօդելով՝ թէ Հայք ունին այսպիսի մոլար վարդապետու-
թեանցս։

Զայս ամենայն ընթերցեալ և լուեալ պապին, կամե-
ցեալ ստուգել զամբաստանութիւնն, առաքէ ապա զպա-
տճէն գրոյն մոլորութեանց առ Լևոն արքայ և առ Մխի-
թար կաթուղիկոս, և խնդրեաց ի նոսա, զի ժողովով հեր-
քեսցեն զայն ամենայն, և ցուցցեն զուղղափառութիւնս
եկեղեցւոյն Հայոց։ Իսկ արքայի ծանրացաւումն եղեալ
ընդ զրպարտութիւնսն և ընդ գիրս մոլորութեանն՝ հրա-
մայեաց ուրումն Դանիէլ վարդապետի պատասխանի գրել
առ պապն ընդդէմ գրոցն. ըստ որոյ և նա ինքն շարագրե-
եալ գիրք մի, ստէ զամենայն ամբաստանութիւնս հակա-
ռակորդացն, և հրամայէ ևս արքայ ժողով գումարել և
հերքել զմոլորութիւնսն։

Սոյն զայս ժողով առնէ Մխիթար կաթուղիկոս յետ
վախճանի արքային և յաջորդութեան ի թագաւորու-
թեանն Կոստանդնի Գայլ կոչեցելոյ յամի 1342, ի Սիս,
ուրանօր գումարեալք քսան և հինգ Եպիսկոպոսք յայլ և
այլ կողմանց աշխարհին Հայոց, հինգ գլխաւոր Վարդա-
պետք, տասն Վանահայրք, և բազում աւագերիցունք
հանդերձ քահանայիւք իւրեանց, և յառեան հանեալ ըզ-
գիրս մոլորութեանցն և հերքեալ մի առ մի, գրեն պա-
տասխանի ընդարձակ յոյժ, ցուցեալ՝ թէ այնոքիկ ամե-
նեքեան շաղփաղփութիւնք զառածեալ մնաց, և քսու-
արանց ամբաստանութիւնք են և ոչ ուղղափառ ազգի
դաւանութիւն. և առաքեն առ Կղեմէս վեցերորդ պապ
յաջորդեալն Բենեդիկտոսի՝ ստորագրութեամբ միաբան
ժողովոյն։

Այլ թէ որպիսի՞ք ինչ էին ամբաստանութիւնքն և պատասխանիք ժողովոյն, ոչ ամենայնն ի մի վայր գոյ. և զի ի պատմութեան Հայոց ևս եղեալ են կարևորքն և եթ, նոքին աղագաւ թողաք ի բաց. յորում յաղագս ժողովոյն Քաղկեդոնի գրեն այսպէս. զժողովն Քաղկեդոնի վասն այնորիկ մերժեցին ամենք ի Հայոց, զի յոմանց վատարանց և ի սուտ բանից զխառնակութիւն սերմանողաց յեկեղեցի՝ յորոց խորշի Հոգին սուրբ, չարաչար համբաւեցաւ ի Հայս։

## ԳԼ. ԽԶ.

### Ութներորդ ժողով ի Սիս վասն չխառնելոյ զջուր ի սուրբ բաժակն։

(Ամք Տեառն 1361)։ — Յաւուրս անտի հինգերորդ ժողովոյն Սսոյ և Ադանայ մուծեալ յեկեղեցիս Հայոց ուրեք ուրեք ի Մեծն Հայս և յընդհանուր գրեթէ Կիլիկիոյ սահմանադրութիւն խառնելոյ զջուր ի սուրբ բաժակն, բազում վէճք և աղմուկք յայն սահմանն յառնէին, յաւէտ ևս խառնակութիւնն բորբոքեալ ի վանօրայս, յերիցունս և ի ժողովուրդս, սրօք և բրօք գրեթէ պատահէին միմեանց և ոճիրս բազումս գործէին. զի ոմանք պնդէին թէ՝ պարտ է խառնել զջուր ի բաժակն, և այլք թէ՝ պարտ է զանապակն պահել ըստ առաջին սովորութեանն։

Ապա Մեսրովբ Հայրապետ յԱրտազ գաւառէ, որ յաջորդեալ յԱթոռն էր յետ Յակոբայ Սսեցւոյ, ջանացեալ խաղաղել զնոսին, առնէ ժողով եպիսկոպոսաց և վարդապետաց աշխարհին Կիլիկիոյ ի Սիս. և յետ բազում խորհրդոց և բանից ընդ մէջ մտելոց՝ հրամայէ ա-

մնեցուն միօրինակ վարիլ ըստ սահմանոյ սովորութեանն, այս ինքն անապակ գինեաւ կատարել զխորհուրդ պատարագին․ որով և բարձաւ յայնմհետէ և յայլս գործածութիւն խառնելոյ զջուր ի բաժակն, ամենայն ուրեք, նա և յաշխարհին իսկ Կիլիկիոյ։

Գ․Լ․ ԽԷ․

Վեցերորդ ժողովն Էջմիածնի, որ փոխադրեաց Կաթողիկոսութիւնն։

(Ամք Տեառն 1441)։— Ի ժամանակի յորում կալով յաջորդեալ զԱթոռ Հայրապետութեանն Սսոյ Գրիգոր Մուսաբէկեանց յետ Յովսեփայ երրորդի Սսեցւոյ, և տեսեալ թէ խպառ անշքացեալ է Աթոռն և ոչ գոն եպիսկոպոսք բաւականք ի Կիլիկիա, ձեռնադրէ առանց ընտրութեան զհինգ եպիսկոպոսունս և առանց կամաց եպիսկոպոսաց կողմանցն Կիլիկիոյ, որոց հաւանութեամբ եպիսկոպոսական ձեռնադրութիւն կատարէին Կաթուղիկոսք․ ընդ որ չորեցունց նոցա բողոք բարձեալ գրեն միաբանութեամբ ընդ ամենայն Արեւելեան Եպիսկոպոսունս և Վարդապետըս, ծանուցեալ՝ եթէ աթոռն Սսոյ հասեալ է յանարգութիւն, եթէ ոչ աճապարեսջիք, ասեն, փոխել զնա, նախատինս լինիմք առաջի ամենայն ազգաց։

Ընկալեալ Արեւելեայց զթուղթս եպիսկոպոսացն Կիլիկիոյ և հասու իրացն լեալ, չհաճեցան ընդ ընտրութիւն Գրիգորի, զի առանց հաւանութեան չորից Աթոռոց և Առաջնորդաց նստեալ էր նոյն Մուսաբէկեան․ և առ ի նորոգ ընտրել զոք Կաթուղիկոս հաւանութեամբ Ազգին փափագելով և զԱթոռն յԷջմիածին, հրաւիրեն միաբան հաւանութեամբ զԳրիգոր յԷջմիածին․ այլ ի չառնուլ

նորա յանձն, խորհրդով Առաջնորդաց ազգիս և ձեռնտուութեամբ մեծամեծացն Հայոց ի Հայաստան և ի Մսիրս՝ և հաճութեամբ խանին Երևանայ, գումարեն ի Վաղարշապատ Այրարատայ զմեծ ժողով եպիսկոպոսաց՝ եօթն և տասն անձանց, յորս էր Կաթուղիկոսն Աղուանից և Առաջնորդք չորից գլխաւոր աթոռոցն, որոց հաւանութեամբ լինէր ընտրութիւն Կաթուղիկոսի, և բազմութիւնք վարդապետաց, վանահարց, կրօնաւորաց և քահանայից և իշխանաց՝ թուով եօթն հարիւր անձանց. իսկ որոց առ ժողովն հասին թուղթք հաւանութեան եպիսկոպոսաց և վարդապետաց՝ էին տասն և վեց անձինք, ընդ որս և միաբանք Աղթամարայ աթոռոյն, խոստացեալ հնազանդիլ իշխանութեան այնմ՝ զոր ժողովն կոչեսցէ ի Հայրապետութիւն։

Ապա ի նմին ժողովի հաւանութեամբ ամենեցուն ընտրեալ ի Հայրապետութիւն Կիրակոս Վարդապետ Խորվիրապեցի՝ այր խոնարհ և խիստ ի ճգնողական վարս, ընդունի զօծումն Եպիսկոպոսութեան և Կաթուղիկոսութեան ամենայն Հայոց, և հաստատէ զԱթոռն Էջմիածին, յետ աստանդելոյ այնմիկ զամս իննհարիւր ութսուն և ինն յայլ և յայլ տեղիս. որ և յայնմ հետէ և յապա զհետ լինի նորոգութեան և բարեզարդութեան Աթոռոյն։

### ԳԼ. ԽԸ.

### Եօթնեւորդ ժողով յԷջմիածին վասն ընտրութեան նոր Կաթողիկոսի։

(Ամք Տեառն 1603)։— Դաւիթ հինգերորդ Կաթուղիկոս՝ յաջորդ Առաքելի, որ առ առաւելութեան պարտուց Աթոռոյ Էջմիածնի՝ կացոյց յաջորդ ինքեան զՄել-

քիսէթ Գառնեցի յԷղջեց վանաց յամի 1593, որք և գրեթէ միշտ թափառական շրջէին ի գիւղս և ի քաղաքս տառապեալք առ ահի պարտատերացն՝ մինչև և զարման կենաց իւրեանց ոչ գտանէին. այսպ ի նմին ժամանակի լուեալ՝ եթէ առաջնորդ Ուռհայ Սրապիոնի վարդապետ Մեծ կոչեցեալն ունի բազում ստացուածս ի հայրենի ժառանգութենէ, գրեն առ նա ի միասին Դաւիթ և Մելքիսեթ, զի նա եկեալ թեթևացուսցէ զպարտս Էջմիածնի, և յանձն առցէ զԿաթուղիկոսութիւն, յորմէ երկրորդին նոքա ևս կամաւ հրաժարեսցին։

Ընկալեալ Սրապիոնի զայսօրինակ գիր նոցին, գնաց առ նոսա ի Հին Ջուղայ. ուր ի ժողովի Կաթուղիկոսացն և Եպիսկոպոսաց՝ իբրև մեղադրական բանս ինչ խօսի առ նոսա, Մանուէլ եպիսկոպոս յարուցեալ անդէն զաղմուկ և տարաձայնութիւն, ցրուէին ամենեքին անտի, և Դաւիթ և Մելքիսեթ գնան ի վանս Սալթէի. այլ Սրապիոնի կացեալ անդէն ի Ջուղայ և քարոզութեամբ աստուածային բանից հաճոյ լեալ յաչս Ջուղայեցւոց, առնուն զնա Ջուղայեցիք և ածեալ յԷջմիածին՝ կացուցանեն Կաթուղիկոս ժողովով Եպիսկոպոսաց, վարդապետաց և իշխանաց յամի 1603, կոչեցեալ զանունն Գրիգոր երեքտասաներորդ։

— Բայց Դաւիթ և Մելքիսեթ իբրև տեսին թէ այսպէս յիշխանութիւն իւրեանց յաջորդեաց Սրապիոն-Գրիգոր և ծանրութիւն պարտուցն ևս դարձեալ մնաց ի վերայ իւրեանց, խորհեցան դիմել յԱսպահան առ բնակիչս տեղւոյն՝ որք գաղթեալքն էին ի Հայաստանէ, և ներկայանալ Շահաբբաս արքայի, և գտեալ զօգնութիւն ի նոցանէ յաղագս պարտուցն՝ վերստին հաստատուն ունիցին զԿաթուղիկոսութիւնն։

ԳԼ. ԽԹ.

## Ազգային ժողով յԷջմիածին վասն ընտրելոյ զնոր կաթողիկոս։

(Ամք Տեառն 1629)։ — Սահակ Կաթողիկոս իբրեւ խոյս ետ յերեսաց հարկահանիցն ի Վան վասն բազմանալոյ պարտուցն հարկացն ի վերայ Աթոռոյ Էջմիածնի, Հայք Արարատեան եւ Ջուղայու լուեալ զայն եւ ոչ կամեցեալ զԱթոռն առանց Հայրապետի թողուլ ամայի, գրեն առ բնակիչս Մեծին եւ Փոքուն Հայոց, զի ընտրեսցեն ի կաթողիկոսութիւն Էջմիածնի զՄովսէս Վարդապետ Սիւնեցի, զորոյ զփոյթ վայելչացուցանելոյ զԱթոռն լուեալ էին ի համբաւոյ՝ մանաւանդ զբարի անունն։ Ըստ որոյ եւ առ Մովսէս հասանէին յայնմ հետէ յերեւելեաց ազգին թուղթք յորդորականք յամենայն կողմանց աշխարհին Հայոց եւ Պարսից եւ Վրաց եւ Յունաց եւ յայլոց տեղեաց, զի յանձն առցէ զհայրապետութիւն սրբոյ Աթոռոյն Էջմիածնի։

Այսպէս ստիպեալ Մովսիսի ի յորդորանաց Ազգին եւ յաւէտ ի սիրոյ սրտին իւրոյ, զոր ունէր ի վերայ Էջմիածնի, օծաւ Կաթողիկոս մեծաւ հանդիսիւ ժողովոյ Եպիսկոպոսաց եւ բազմութեամբ վարդապետաց ի սուրբ Էջմիածին յամի Տեառն 1629։ Նա զհետ եղեւ ինչ ինչ շինութեանցն Էջմիածնի՝ սկսեալ յաւուրց փակակալութեան իւրոյ։

ԳԼ. Ծ.

## Երրորդ ժողով յԵրուսաղէմ, ուր էին երեք պատրիարքն հանդէպ վասն Տէրունականաց։

(Ամք Տեառն 1651). — Գնալն Փիլիպպոս Կաթողիկոսի ի Կոստանդնուպօլիս, գրէ Հ. Չամչեան, եթէ էր

յաղագս խաղաղեցուցանելոյ նորա զխռովութիւնսն ծագեալս անդր ի Կ. Պօլիս, ընդ մէջ ժողովրդոցն և պատրիարգաց յաջորդելոց մի զհետ զմիոյ։

Դիմեալ նորա ի Ճանապարհ, գիտէ, ասէ, նախ յԷջմիածին. ուր և ընդ Աստուածատուր Պատրիարգի տեղւոյն և Ներսէս կաթուղիկոսին Սսոյ, որ դիպաւ անդանօր, արարեալ իցէ ժողով վասն բառնալոյ զանկարգութիւնսն մտեալս յեպիսկոպոսունս յաշխարհին Հայոց, և կարգեալ զատորև եդեալ կանոնս։

Հակառակ թուին ուղիղ դատողութեան բանիցս յառաջ բերելոց ի նոյն Չամչեանէ. զի երեւի յայտնապէս զխեկութիւն իւրին խռովութեան պատրուակաւ ծածկեալ։

Նախ՝ եթէ գնալ Կաթուղիկոսին ի Կ. Պօլիս էր յաղագս խռովութեանցն ծագելոց ընդ մէջ ժողովրդոց և պատրիարգացն Պօլսոյ, ընդէ՞ր ապա դիմեաց նա նախ յԷջմիածին։ Դա

Երկրորդ՝ եթէ վասն բառնալոյ զանկարգութիւնսն մտեալս յեպիսկոպոսունս աշխարհին Հայոց, գնաց Կաթուղիկոսն յԷջմիածին, և արար անդէն ժողով և կանոնս եդ ի նմին, զի՞նչ հարկ կայր ապաքէն ընդհանրական Կաթուղիկոսին վասն բառնալոյ զանկարգութիւնս եպիսկոպոսաց աշխարհին Հայոց թողուլ ըզՀայրապետական Աթոռ իւր, ուր իսկզբանէ և ցայն վայր վասն ամենայնի այնպիսեաց կարևորաց ազգի Հայոց լեալ էր ժողով բազում անգամ, և տարևոր ժամանակօք հեռանալ յԱթոռոյ իւրմէ, և ի ծայրս իշխանութեան իւրոյ և Հայաստան աշխարհի՝ վասն նոյն իսկ աշխարհին Հայոց առնել ժողով, կամ կանոնս կարգել վասն զանկարգութիւնսն բառնալոյ։

Այլ զի զկարեւոր պատճառս ընդոյ Փիլիպպոսի ի Կ. պօլիս, այն է զխռովութիւնս յարուցեալս անդր ոչ յայտնի բացատրէ, ծքելով զայն ի շնորհս Հռովմայ, որպէս և ոչ զանկարգութիւնս եղեալս ի մէջ Եպիսկոպոսաց էին. մեք առանց ակնառութեան յայտնի գրեացուք: Ո՞չ ապաքէն արքանեակք զահին Հռովմայ յաճախեալ անդր ի Կ. Պօլիս, և ի կողմն իւրեանց շորթելով զակարամիտս և զթեթեւահաւատս ի Հայոց, ընդ մէջ միամիտ ժողովրդոց յարուցանէին նոքօք զխռովութիւն և ջանային զազգն եւս դարձուցանել ի պապականութիւն, որպէս և ի մերումս այսր ժամանակի՝ ոմանք ի պապականութիւն և ոմանք ի բողոքականութիւն էին. շրջել ձգնին զեկեղեցին Հայաստանեայց:

Եւ զի Եպիսկոպոսունք կաթողիկոսութեան Սսոյ մուտ գործեալ յայնժամ ի վիճակս ժողովրդոց պատրիարքական իշխանութեան Կ. Պօլսոյ, ընդարձակէին ինքնագլուխ ի ժողովուրդս պէսպէս անկարգութեամբք, և ջանային տակաւ առ տակաւ տիրապետել վիճակացն, և տալ ընդվզել զեկեղեցականս և զաշխարհականս ի հնազանդութենէ Մայր Աթոռոյ. որպէս զի դիւրաւ արկցեն զորսացեալսն ի գուբ պապականութեան. առ այս և Փիլիպպոս Կաթուղիկոսի հարկ եղև ըստ խորհրդոյ ողջամտաց յԵրուսաղէմ անդր դիմել նախ, ուր ոչ պատահմամբ, այլ խորհրդով ոմանց անդ գտաւ և Ներսէս կաթուղիկոս Սսոյ, և առ ի փրկել զվիճակս ժողովրդոց ընդհանրական իշխանութեան իւրոյ, մանաւանդ թէ՝ Պատրիարգունք Կ. Պօլսոյ գոլով բնակեալ ի թագաւորեալ քաղաքն Կ. Պօլիս ընդ հզօր իշխանութեամբ Օսմանեան պետութեան գործէին զոր կամէին ի ձեռն Բ. Դրան. և Կաթուղիկոսական Աթոռն Էջմիածնին էր յառարկայ

ծիսից և փոփոխութեան կանոնացն, այլ յաւէտ երկպառակութիւն, և մահ և օծումն ի միմեանց յառաջանայ յազգին, մանաւանդ թէ և Գրիգոր Եպիսկոպոս Կարնոյ սպանաւ վասն խառնելոյ նորա զջուր ի բաժակն, և թէ Սարգիս եպիսկոպոս Երուսաղեմի առ ոտն արկեալ զհրաման իւր և Կոստանդեայ Կաթուղիկոսի, հրամանաւ ամիրային Եգիպտոսի նստաւ յԵրուսաղէմ, և ընդվզեալ ի կաթուղիկոսական իշխանութենէ, ինքնագլուխ վարէր զիշխանութիւն, յղեաց դեսպանս առ Կղեմէս պապն Հըռովմայ վասն գժտութեան ընդ մէջ իւր և արքային Կիպրոսի, եւս և վասն հրաման խնդրելոյ ի նմանէ պահել ի պալատան իւրում զվեց Լատին կրօնաւորս ի վանացն Կիպրոսի. առ որ և պապն գրեալ, հրաման տայ պահել ըստ ցանկութեան իւրում զկրօնաւորսն ի պալատն իւր։

Ընդ այս խրախուսեալ արքայի առնու ի ձեռն դարձեալ զտիպաւն առաջնորդաց՝ վասն անխափան պահելոյ զկանոնսն. և իբրև ոչ կարաց առնել ինչ ըստ առաջնումն, յարուցանէ հալածումն մեծ ի վերայ նոցա. ընդ որ եւս հուսկ ուրեմն անճարացեալ, վերստին ժողով արար հրամանաւ իւրով յԱտանայ քաղաքի ի տաճար սրբոյն Մինասայ յամի 1316, ի ներկայութեան իւր և բոլոր պալատականացն և մեծամեծ իշխանաց և նախարարաց տէրութեան իւրոյ։

Յայս հրաման արքունի բազումք դժուարացեալք, ոչ իսկ եկին ի ժողովն. իսկ որ սակաւք յեպիսկոպոսաց գտան անդ, էին անձինք եօթնևտասն, որք հնազանդեալք հրամանին՝ ընթերցան զսահմանագրութիւն ժողովոյն և զնոյն կանոնս այնորիկ, եւս և զնամակ դաւանութեան Գրիգորի, ընկալան դարձեալ և հաստատեցին զայն ստորագրութեամբք ամենեցուն։

Բայց մյուսքին սահմանադրութիւնք և իւնն կանոնք թէ և երկիցս հաստատեցաւ, թէ և ընկալաւ ի ժողովն, այլ նոքին իսկ հարք ժողովոյն առաջնոյն և վերջնոյս՝ երբեք չվստահացան կատարել յեկեղեցիս առ ահի ժողովրդոցն. ըստ որոց երևի թէ՝ բռնութեամբ իշխանութեան լինէին ժողովքն։

ԳԼ. ԽԵ.

ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ՝ Ի ՍԻՍ ՎԱՍՆ ՊԱՏԱՍԽԱՆԵԼՈՅ ՆԱՄԱԿԻՆ ՊԱՊԻՆ։

(Ամք Տեառն 1342)։ — Յառաջնում ամի Հայրապետութեան Մխիթարայ Գռներցւոյ, Ներսէս Եպիսկոպոս Ուրմեայ տուեալ զանձն ի կարգս Ունիթոռաց եկն առ նա, որ հալածանս կրեալն էր ՚ի յազգէն ցայն վայր յաւուրս Յակոբայ Սսեցւոյ. այլ իբրև և ի Մխիթարայ յանդիմանեցան գործք նորա իբրև արհամարհող օրինաց, դարձաւ գնաց առ Բենեդիկտոս Պապն Հռովմայ, և յԱւենիոն քաղաք, և յարեալ անդ յոմանս յազգէ Հայոց՝ որք ի կարգէ Ունիթոռացն էին, և յինքեանս յանկուցեալ ըզ-Ղատլս ոմանս փորձառուս Երևելեան իրաց ըստ իւրեանց վկայութեանն, մատուցին պապին զչարախօսութիւն ծանր զՀայոց Կիլիկեցւոց և արևելեայց, ջանացեալ ցուցանել՝, թէ լի են Հայք ամենայն մոլորութեամբք. զորպիսի ամբաստանութիւն գրեալն էր յառաջագոյն առ պապն և գործակից Ներսիսի՝ Սիմէոն բէկ՝ եպիսկոպոս Կարնոյ՝ հալածեալն ի Կիպրոս յիրեսաց Հայոց։

Եւ որ և ամենեքին նոքա առաջնորդութեամբ Ներսիսի զամենայն ինքնահնար ամբաստանութիւնս զՀայոց ժողովեալ ի մի գիրք, կցկցեն ի վերայ եկեղեցւոյն Հայոց

ղհարիւր տասն և եօթն մոլորութիւնս հաստատեալ բա-
նիւք ոմանց հակառակաւորաց, և մատուցանեն պապին,
յոդելով՝ թէ Հայք ունին այսպիսի մոլար վարդապետու-
թեամբք։

Զայս ամենայն ընթերցեալ և լուեալ պապին, կամե-
ցեալ ստուգել զամբաստանութիւնսն, առաքէ այս զպա-
տճէն գրոյն մոլորութեանց առ Լեւոն արքայ և առ Մխի-
թար կաթուղիկոս, և խնդրեաց, զի ժողովով հեր-
քեսցեն զայն ամենայն, և ցուցցեն զուղղափառութիւնս
եկեղեցւոյն Հայոց։ Իսկ արքայի ծանրացաւ եղեալ
ընդ զրպարտութիւնսն և ընդ գիրս մոլորութեանն՝ հրա-
մայեաց ուրուք Դանիէլ վարդապետի պատասխանի գրել
առ պապն ընդդէմ գրոցն. ըստ որոյ և նա ինքն շարադրե-
եալ գիրք մի, սատէ զամենայն ամբաստանութիւնս հակա-
ռակորդացն, և հրամայէ ևս արքայ ժողով գումարել և
հերքել զմոլորութիւնսն։

Ըստ այսմ ժողով առնէ Մխիթար կաթուղիկոս յետ
վախճանի արքային և յաջորդութեան ի թագաւորու-
թեանն Կոստանդեայ Գայլ կոչեցելոյ յամի 1342, ի Սիս,
ուրանօր գումարեալք քսան և հինգ Եպիսկոպոսք յայլ և
այլ կողմանց աշխարհին Հայոց, հինգ գլխաւոր Վարդա-
պետք, տասն Վանահայրք, և բազում աւագերիցունք
հանդերձ քահանայիւք իւրեանց, և յառեան հանեալ ըզ-
գիրս մոլորութեանցն և հերքեալ մի առ մի, գրեն պա-
տասխանի ընդարձակ յոյժ, ցուցեալ՝ թէ այնքանիկ ամե-
նեքեան շաղփաղփութիւնք գրաւածեալ մնաց, և քսու-
արանց ամբաստանութիւնք են և ոչ ուղղափառ ազգի
դաւանութիւն. և առաքեն առ Կղեմէս վեցերորդ պապ
յաջորդեալն Բենեդիկտոսի՝ ստորագրութեամբ միաբան
ժողովոյն։

Այլ թէ որպիսի՞ ինչ էին ամբաստանութիւնքն և պատասխանիք Ժողովոյն, ոչ ամենայնն ի մի վայր գոյ. և զի ի պատմութեան Հայոց ես եդեալ են կարևորքն և եթ, նոքին աղագաւ թողաք ի բաց. յորում յաղագս Ժողովոյն Քաղկեդոնի գրեն այսպէս. զԺողովն Քաղկեդոնի վասն այնորիկ մերժեցին ամենք ի Հայոց, զի յոմանց վատ-տարանց և ի սուտ բանից զխռովութիւն սերմանողաց յե-կեղեցի՝ յորոց խորշի Հոգին սուրբ, չարաչար համբաւե-ցաւ ի Հայս։

## ԳԼ. ԽԶ.

### Ութերորդ Ժողով ի Սիս վասն չխառնելոյ զջուր ի սուրբ բաժակն։

(Ամք Տեառն 1361)։ — Յաւուրց անտի հինգերորդ Ժողովոյն Սսոյ և Ադանայ մուծեալ յեկեղեցիս Հայոց ուրեք ուրեք ի Մեծն Հայս և յընդհանուր գրեթէ Կի-լիկիոյ սահմանադրութիւն խառնելոյ զջուր ի սուրբ բա-ժակն, բազում վէճք և աղմուկք յայն սահմանան յառ-նէին, յաւէտ ես խռովութիւնն բորբոքեալ ի վանօրայս յերիցունս և ի ժողովուրդս, սրոք և բրօք գրեթէ պատա-հէին միմեանց և ոճիրս բազումս գործէին. զի ոմանք պն-դէին թէ՝ պարտ է խառնել զջուր ի բաժակն, և այլք թէ՝ պարտ է զանապակն պահել ըստ առաջին սովորու-թեանն։

Ապա Մեսրովբ Հայրապետ յԱրտազ գաւառէ, որ յաջորդեալ յԱթոռն էր յետ Յակոբայ Սսեցւոյ, ջանա-ցեալ խաղաղել զնոսին, առնէ Ժողով եպիսկոպոսաց և վարդապետաց աշխարհին Կիլիկիոյ ի Սիս. և յետ բա-զում խորհրդոց և բանից ընդ մէջ նոցա՝ հրամայէ ա-

մնեցուն միօրինակ վարիլ ըստ առաջնոյ սովորութեան, այս ինքն անապակ գինեաւ կատարել զխորհուրդ պատարագին․ որով և բարձաւ յայնմհետէ և յապա գործածութիւն խառնելոյ զջուր ի բաժակն, ամենայն ուրեք, նա և յաշխարհին իսկ Կիլիկիոյ։

## ԳԼ. ԽԷ.

## Վեցերորդ ժողով Էջմիածին, ուր փոխադրեցաւ Կաթողիկոսութիւնն։

(**Ամք Տեառն 1441**)։— Ի ժամանակի յայսմիկ յաջորդեալ յԱթոռ Հայրապետութեանն Սսոյ Գրիգոր Մուսաբէկեանց յետ Յովսէփայ երրորդի Սսեցւոյ, և տեսեալ թէ իսպառ անշքացեալ է Աթոռն և ոչ գոն եպիսկոպոսք բաւականք ի Կիլիկիա, ձեռնադրէ առանց ընտրութեան զհինգ եպիսկոպոսունս և առանց կամաց եպիսկոպոսաց կողմանցն Կիլիկիոյ, որոց հաւանութեամբ եպիսկոպոսական ձեռնադրութիւն կատարէին Կաթուղիկոսք. ընդ որ չորեցունց նոցա բողոք բարձեալ գրեն միաբանութեամբ առ ամենայն Արեւելեան Եպիսկոպոսունս և Վարդապետըս, ծանուցեալ՝ եթէ աթոռն Սսոյ հասեալ է յանարգութիւն, եթէ ոչ աճապարեսջիք, ասեն, փոխել զսա, նախատինս լինիմք առաջի ամենայն ազգաց։

Ընկալեալ Արեւելեայց զթուղթս եպիսկոպոսացն Կիլիկիոյ և հասու իրացն լեալ, չհաճեցան ընդ ընտրութիւն Գրիգորի, զի առանց հաւանութեան չորից Աթոռոց և Առաջնորդաց նստեալ էր նոյն Մուսաբէկեան. և առ ի նորոգ ընտրել զոք Կաթուղիկոս հաւանութեամբ Ազգին փոխադրելով և զԱթոռն յԷջմիածին, հրաւիրեն միաբան հաւանութեամբ զԳրիգոր յԷջմիածին. այլ ի չառնուլ

նորա յանձն, խորհրդով Առաջնորդաց ազգիս և ձեռնտուութեամբ մեծամեծացն Հայոց ի Հայաստան և ի Վիրս՝ և հաճութեամբ խանին Երևանայ, գումարեն ի Վաղարշապատ Այրարատայ զմեծ ժողով եպիսկոպոսաց՝ եօթն և տասն անձանց, յորս էր Կաթուղիկոսն Աղուանից և Առաջնորդք չորից գլխաւոր աթոռոցն, որոց հաւանութեամբ լինէր ընտրութիւն Կաթուղիկոսի, և բազմութիւնք վարդապետաց, վանահարց, կրօնաւորաց և քահանայից և իշխանաց՝ թուով եօթն հարիւր անձանց. իսկ որոց առ ժողովն հասին թուղթք հաւանութեան եպիսկոպոսաց և վարդապետաց՝ էին տասն և վեց անձինք, ընդ որս և միաբանք Աղթամարայ աթոռոյն, խոստացեալ հնազանդիլ իշխանութեան այնմ՝ զոր ժողովն կոչեսցէ ի Հայրապետութիւն։

Արդ ի սմին ժողովի հաւանութեամբ ամենեցուն ընտրեալ ի Հայրապետութիւն Կիրակոս Վարդապետ Խորվիրապեցի՝ այր խոնարհ և խիստ ի ճգնողական վարս, ընդունի զօծումն Եպիսկոպոսութեան և Կաթուղիկոսութեան ամենայն Հայոց, և հաստատէ զԱթոռն Էջմիածին, յետ աստանդելոյ այնմիկ զամս ինն հարիւր ութսուն և ինն յայլ և այլ տեղիս. ո՜վ և յայսմ հետէ և յապա զհետ լինի նորոգութեան և բարեզարդութեան Աթոռոյն։

ԳԼ. ԽԸ.

### Եօթնեւտասներորդ Ժողով յԷջմիածին վասն ընտրութեան նոր Կաթողիկոսի։

**(Ամք Տեառն 1603)**։— Դաւիթ հինգերորդ Կաթուղիկոս՝ յաջորդ Առաքելի, որ առ առաւելութեան պարտուց Աթոռոյ Էջմիածնի՝ կացոյց յաջորդ ինքեան զՄել-

### ԳԼ. ԽԹ.

### Ազգային ժողով յԷջմիածին վասն ընտրելոյ զնոր Կաթողիկոս։

(Ամք Տեառն 1629)։ — Սահակ Կաթուղիկոս իբրև խոյս ետ յերեսաց հարկահանիցն ի Վան վասն բազմանալոյ արքունի հարկացն ի վերայ Աթոռոյ Էջմիածնի, Հայք Սպահանայ և Ջուղայու լուեալ զայն և ոչ կամեցեալ զԱթոռն առանց Հայրապետի թողուլ ամայի, գրեն առ բնակիչս Մեծին և Փոքուն Հայոց, զի ընտրեսցեն ի կաթուղիկոսութիւն Էջմիածնի զՄովսէս Վարդապետ Սիւնեցի, զորոյ զփոյթ վայելչացուցանելոյ զԱթոռն լուեալ էին ի համբաւոյ՝ մանաւանդ զբարի անունն։ Ըստ որոյ և առ Մովսէս հասանէին յայնմ հետէ յերեւելեաց ազգին թուղթք յորդորականք յամենայն կողմանց աշխարհին Հայոց և Պարսից և Վրաց և Յունաց և յայլոց տեղեաց, զի յանձն առցէ զՀայրապետութիւն սրբոյ Աթոռոյն Էջմիածնի։

Այսպէս ստիպեալ Մովսէսի ի յորդորանաց Ազգին և յաւէտ ի սիրոյ սրտին իւրոյ, զոր ունէր ի վերայ Էջմիածնի, օծաւ Կաթուղիկոս մեծաւ հանդիսիւ ժողովոյ Եպիսկոպոսաց և բազմութեամբ վարդապետաց ի սուրբ Էջմիածին յամի Տեառն 1629։ Եւ զհետ եղև ինչ ինչ շինութեանցն Էջմիածնի՝ սկսելոցն յաւուրց փակակալութեան իւրոյ։

### ԳԼ. Ծ.

### Ազգային ժողով յԵրուսաղէմ, ուր եղան երեքտասան կանոնք վասն Եկեղեցականաց։

(Ամք Տեառն 1651)։ — Գնալն Փիլիպպոս Կաթուղիկոսի ի Կոստանդնուպօլիս, գրէ Հ. Չամչեան, եթէ էր

յաղագս խաղաղեցուցանելոյ նորա զխռովութիւնս ծագեալս անդր ի Կ. Պօլիս, ընդ մէջ ժողովրդոցն և պատրիարգաց յաջորդելոց մի զհետ զմիոյ։

Ելեալ նորա ի ճանապարհ, դիմէ, ասէ, նախ յԵրուսաղէմ. ուր և ընդ Աստուածատուր Պատրիարգի տեղւոյն և Ներսէս կաթուղիկոսին Սսոյ, որ դիպաւ անդանօր, արարեալ իցէ Ժողով վասն բառնալոյ զանկարգութիւնս մտեալս յեպիսկոպոսունս յաշխարհին Հայոց, և կարգեալ զատորև եդեալ կանոնս։

Հակառակ Թուքին ուղիղ դատողութեան բանքս յառաջ բերեալք ի նոյն Չամչեանէ. զի երևի յայտնապէս զխնկութիւն իրին խռովութեան պատրուակաւ ծածկեալ։

Նախ՝ եթէ գնալ Կաթուղիկոսին ի Կ. Պօլիս էր յաղագս խռովութեանցն ծագելոց ընդ մէջ ժողովրդոց և պատրիարգացն Պօլսոյ, ընդէ՞ր ապա դիմեաց նա նախ յԵրուսաղէմ։ Եւ

Երկրորդ՝ եթէ վասն բառնալոյ զանկարգութիւնս մտեալս յեպիսկոպոսունս աշխարհին Հայոց, գնաց Կաթուղիկոսն յԵրուսաղէմ, և արար անդէն Ժողով և կանոնս եդ ի նմին, զի՞նչ հարկ կայր ապաքէն ընդհանրական Կաթուղիկոսին վասն բառնալոյ զանկարգութիւնս եպիսկոպոսաց աշխարհին Հայոց Թողուլ ըզՀայրապետական Աթոռ իւր, ուր իսկզբանէ և ցայն վայր վասն ամենայնի այնպիսեաց կարևորաց ազգի Հայոց լեալ էր ժողով բազում անգամ, և տարևոր ժամանակօք հեռանալ յԱթոռոյ իւրմէ, և ի ծայրս իշխանութեան իւրոյ և Հայաստան աշխարհի՝ վասն նոյն իսկ աշխարհին Հայոց առնել ժողով, կամ կանոնս կարգել վասն զանկարգութիւնս բառնալոյ։

Այլ զի զկարեւոր պատճառս գնալոյ Փիլիպպոսի ի Կ. Պօլիս, այն է զխռովութիւնս յարուցեալս անդր ոչ յայտնի բացատրէ, ծեքելով զայն ի շնորհս Հռովմայ, որպէս և ոչ զանկարգութիւնս եղեալս ի մէջ Եպիսկոպոսաց եւն. մեք առանց ակնառութեան յայտնի գրեացուք։ Ո՞չ ապաքէն արքանեակք զահին Հռովմայ յաճախեալ անդր ի Կ. Պօլիս, և ի կողմն իւրեանց շորթելով զակարամիտս և զթեթեւահաւատս ի Հայոց, ընդ մէջ միամիտ ժողովրդոց յարուցանէին նոքօք զխռովութիւն և ջանային զազգն եւս դարձուցանել ի պապականութիւն, որպէս և ի մերումս այսր ժամանակի՝ ոմանք ի պապականութիւն և ոմանք ի բողոքականութիւն եւն. շրջել ձգնին զեկեղեցին Հայաստանեայց։

Նա և զի Եպիսկոպոսունք կաթողիկոսութեան Սսոյ մուտ գործեալ յայնժամ ի վիճակս ժողովրդոց պատրիարքական իշխանութեան Կ. Պօլսոյ, ընդարձակէին ինքնագլուխ ի ժողովուրդս պէսպէս անկարգութեամբք, և ջանային տակաւ առ տակաւ տիրապետել վիճակացն, և տալ ընդվզել զեկեղեցականս և զաշխարհականս ի հնազանդութենէ Մայր Աթոռոյ. որպէս զի դիւրաւ արկցեն զորսացեալսն ի գուբ պապականութեան. առ այս և Փիլիպպոս Կաթուղիկոսի հարկ եղև ըստ խորհրդոյ ողջամտաց յԵրուսաղէմ անդր դիմել նախ, ուր ոչ պատահմամբ, այլ խորհրդով ոմանց անդ գտաւ և Կիւրղէ։ Կաթուղիկոս Սսոյ, և առ ի փրկել զվիճակս ժողովրդոց ընդհանրական իշխանութեան իւրոյ, մանաւանդ թէ՝ Պատրիարգունք Կ. Պօլսոյ գոլով բնակեալ ի թագաւորեալ քաղաքն Կ. Պօլիս ընդ հզօր իշխանութեամբ Օսմանեան պետութեան գործէին զոր կամէին ի ձեռն Բ. Դրան. և Կաթուղիկոսական Աթոռն Էջմիածին էր յառաջիկայ

վիճակաց. քանզի՝ անարժանք գտանելով ի Սիս ձեռնադրելով իւրեանց յեպիսկոպոսս, և քանզի անարժանք թողեալ զիւրեանց վիճակն եպիսկոպոսունք գնացեալ են յայլս առնուլ զկարգ քահանայութեան կաշառօք, և սակս զառաջս այնպիսեաց առնուլ մարթելոյ՝ երանելին Փիլիպպոս արարեալ է զերկուսին սահմանադրութիւնս՝ զայսպայն յանձնելով ի խնամս Տեառն:

Այսոքիկ են կանոնք եդեալք ի ժողովի անդ:

ա. Երկու Աթոռք Էջմիածնի և Սսոյ սէր ունիցին առ միմեանս, և իւրաքանչիւր միայն զիւրոյ վիճակի նուիրեալսն ձեռնադրեսցէ:

բ. Եւ որ ձեռնադրեալն է, մի՛ իշխեսցէ առ այլ կաթուղիկոս գնալ, այլ առ իւրն:

գ. Առանց վկայութեան ժողովրդեան մի՛ ոք ձեռնադրեսցի եպիսկոպոս:

դ. Մի՛ ոք յեպիսկոպոսաց յափշտակեսցէ զվիճակ այլոց:

ե. Միոյ վիճակի մի լիցին երկու առաջնորդք:

զ. Եպիսկոպոս մի՛ ձեռնադրեսցէ զոք յայլմէ վիճակէ:

է. Եպիսկոպոս առանց հրամանի կաթուղիկոսին մի՛ իշխեսցէ այլոց վիճակաց բռնութեամբ այլազգեաց:

ը. Մի՛ ոք ի վարդապետաց տայցէ այլում իշխանութիւն վարդապետութեան, եթէ չիցէ կատարեալ հասակաւ և վկայեալ յառաքինութեան և յուսման:

թ. Քահանայն յիւրմէ յեպիսկոպոսէ ձեռնադրեսցի համաձայնութեամբ ժողովրդեանն:

ժ. Եպիսկոպոսք և քահանայք մի՛ զրկեսցեն զմեռեալսն ի հասս՝ զորս առնուն ի ժողովրդենէ:

ժա. Երիցունք մի՛ յափշտակեսցեն զվիճակս (այս ինքն զծուխս) իրերաց:

ԺԷ. Երիցունք ի նշանագրութեան աղջկանց բազում աւուրբք յառաջ ծանուսցեն զայն ի մէջ եկեղեցւոյ, զի թէ գուցէ ինչ արգել՝ յայտնեսցի։

ԺԸ. Երիցունք, որոց վախճանեալ իցէ ամուսին, եթէ իցեն վկայեալ ի պարկեշտութեան և իցեն ծեր, և ունիցին մանկունս սնուցանելոյ, կայցեն յեկեղեցւոջ. ապա թէ ոչ՝ գնասցեն ի վանս։

## ԳԼ. ԾԱ.

### ԻՆՆԵՐՈՐԴ ԺՈՂՈՎ ԷՋՄԻԱԾԻՆ ՎԱՍՆ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՆՈՐ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ։

(**Ամք Տեառն 1655**)։—Յետ մահուան Փիլիպպոս Կաթուղիկոսի՝ միաբանքն Աթոռոյ Էջմիածնի և եպիսկոպոսք և վարդապետք, որք եկեալ էին ի թաղումն Հայրապետին, ժողով արարեալ յետ աւուրց ինչ ընտրեն զՅակոբ Վարդապետ Ջուղայեցի ի Կաթուղիկոսութիւն, և յութերորդումն աւուր Ապրիլի ի սոյն ամի **1655**, օծանեն զնա յաթոռ Հայրապետութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ, որ առաքինի վարուք իւրովք յամենայն ի գործս իւր երևեցաւ արդիւնաւոր և բարեկարգիչ աթոռոյն։

## ԳԼ. ԾԲ.

### ՏԱՍՆԵՐՈՐԴ ԺՈՂՈՎ ԷՋՄԻԱԾԻՆ ՎԱՍՆ ՆՈՅՆ ԻՐԻՆ։

(**Ամք Տեառն 1707**)։—Յորժամ վաղճանեցաւ Նահապետ Կաթուղիկոս Եդեսացի յամի **1705**, ոչ ումեք յաջողեցաւ ամբառնալ յաթոռ Հայրապետութեան գրեթէ աւելի քան զամ մի. որում ապա յաջորդեաց Տէր Աղէքսանդր Ջուղայեցի ի Կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց Էջմիածին, յամի Տեառն **1707**,

## ԳԼ. ԾԳ.

### Առաջին ժողով է Կոստանդնուպօլիս, ուր ընտրեցաւ Կարապետ Կաթողիկոս։

(Ամք Տեառն 1726)։ — Յաւուրս խռովութեանց աշխարհի Արարատայ ի սմին ժամանակի վասն պատերազմաց ընդ մէջ Օսմանցւոց և Պարսից, Աստուածատուր Կաթուղիկոս Համատանցի ոչ կարելով հանապազ նըստիլ յԷջմիածին՝ շրջէր թափառական. և առ այս առիթ լեալ նորա յՕշական գեղջ, յաւուր միում իբրև ելանէ ի տանիս առ դիտելոյ զխաւարումն լուսնի, անկանի ի վայր գիշերայն, և յետ աւուրց փոխի յաստեացս։

Զայս մահ Աստուածատրոյ լուեալ Յովհաննու Պատրիարգի Կոլոտիկն կոչեցելոյ ի Կոստանդնուպօլիս, առ ինքն ժողովեալ զեպիսկոպոսունս և զվարդապետս և զերևելի իշխանաւորս քաղաքին, ամենեցուն հաւանութեամբ ընտրեն զԿարապետ Վարդապետ Զէյթունցի Արքեպիսկոպոս և առաջնորդ Գաղատիոյ, այր զգօն և գովանի վարուք. զոր հրաւիրեալ անդ ի Պոլիս՝ օծանեն զնա ի Կաթուղիկոսութիւն Աթոռոյ Էջմիածնի արքունի հրամանաւ երկոտասան եպիսկոպոսօք և մեծաւ հանդիսիւ յեկեղեցւոջ սրբոյ Աստուածածնի ի 27 աւուր Փետրվարի ամի 1726. որ յետ երկուց ամաց անագան ուրեմն դարձաւ յԷջմիածին յԱթոռն Հայրապետական։

## ԳԼ. ԾԴ.

### Երկրորդ ժողով է Կոստանդնուպօլիս վասն ընտրելոյ զնոր Կաթողիկոս։

(Ամք Տեառն 1753)։ — Մինաս Կաթուղիկոս յաջորդ Ղազարու իբրև վախճանեցաւ ամի Տեառն 1753, յետ

վարելոյ զիշխանութիւնն զամ մի և զամիսս Ը, միաբանք Աթոռոյս ազդ արարեալ ի Կոստանդնուպօլիս, խնդրէին, զի կամ Յակովբ Պատրիարգ. և կամ Սահակ Վարդապետ Ահագին ընտրեսցին ի կաթուղիկոսութիւն։

Այլ Յակոբ Պատրիարգ ոչ հաւանեալ ընդ ընտրութիւն իւր. ի միաբանից Աթոռոյս, արար ժողով յաղագս ընտրելոյ զոք ի Հայրապետութիւն. ուր ապա ընտրի հաւանութեամբ ժողովոյն Աղէքսանդր վարդապետ Կոստանդնուպօլսեցի Ղարաղաշ կոչեցեալ. որ եկեալ անտի և եհաս յէջմիածին՝ օծաւ կաթուղիկոս ի յաջորդ ամի ի 1754 ի 6 Մարտի՝ յետ տասն ամսոց վախճանին Մինասայ։

## ԳԼ. ԾԵ.

### Միաբանելոյ ժողովոյ յէջմիածին վասն ընտրելոյ զնոր Կաթողիկոս։

(Ամք Տեառն 1763)։ — Իբրև վախճանեցաւ Յակովբ Կաթուղիկոս Շամախեցի յետ Հայրապետութեան իւրոյ զամս երեք և ամիսս ութ, եղև ժողով հնգից վասն ընտրութեան նոր Կաթուղիկոսի յաթոռս յէջմիածին, բայց և ոչ ոք ընտրեցաւ, զի ժողովն ընդհանուր գրեթէ զգուշացեալ անձինս ի մէջ բերելոյն ընտրութեանն. վասն որոյ և ոչ ումեք յաջողէր վիճակն։

Այլ ի հինգերորդ գումարման ժողովոյն Յարութիւն վարդապետ Բասենցի յառաջի արարեալ զՍիմէոն վարդապետ Երևանցի, յառնէ ի տեղւոջէ և համբուրէ զաջ նորա, ասելով Կեցցէ հոգևոր Տէր մեր Սիմէոն կաթողիկոս. ընդ որ ամենեքին հաւանեալ՝ ընտրեցին զնա և օծին Կաթուղիկոս առանց հաւանութեան երևելեացն Պօլսոյ,

որոյ համար և գիտութեամբ լինէր ընտրութիւն Կաթուղիկոսաց։

Այսպէս Սիմէոնն Կաթուղիկոս յետ օծման իւրոյ գրեալ առ Յակոբ Պատրիարգ և առ մեծամեծս Պօլսոյ՝ յայտնեաց նոցա զընտրութիւն իւր և զօծումն, ընդ որ հաճեցան նոքա ևս։

## ԳԼ. ԾԶ.

Եպիսկոպոսներոյն ժողով է Վաղարշապատ․ որ ընտրեցաւ Դանիէլ Կաթողիկոս ի պատրիարգութենէն Կոստանդնուպօլսոյ։

(Ամք Տեառն 1800)։—Յետ վախճանին Ղուկաս Կաթուղիկոսի՝ միաբանք հայրապետական Աթոռոյ սուրբ Էջմիածնի ըստ ազգային սովորութեանն ժողով արարեալ ի Կաթուղիկէ Մայր Եկեղեցւոջ յեկեղեցականաց և յաշխարհականաց, ընտրեն ի կաթուղիկոսութիւն զԴանիէլ Արքեպիսկոպոս պատրիարգն Հայոց Կոստանդնուպօլսոյ՝ միաբան համաձայնութեամբ, և գրեն առ նա և առ ազգ մեր անդր ի մայրաքաղաքն՝ խնդրելով ընդ ձեռն հրաւիրակի Դանիէլ Եպիսկոպոսին յանձն առնուլ զՀայրապետութիւն ընդհանուր ազգի Հայոց։

Ընդ որ ամենայն հոգևորականք ազգիս որ անդր, ամիրայք և ժողովուրդք ժողով արարեալ ի պատրիարքական եկեղեցւոջն, թէև զառաջինն ընտրեցին զպատրիարգն Դանիէլ ի Հայրապետութիւն, բայց հաւաստի եղեալ, եթէ Յովսէփ Արքեպիսկոպոսն Արղութեանց առաջնորդն Հայոց Ռուսաստանու հետամուտ է Հայրապետական Աթոռոյ, և հրովարտակ վասն նորին հաստատութեան մերձ է ելանել յՕսմանեան դրանէ ընդ ձեռն դեսպանին Ռուսաց ի մայրաքաղաքին, լուծին զժողովն ընտրելով

փոխանակ Դանիէլի զԲարդուղիմէոս Եպիսկոպոսն Խըզնիմիտու։

(1801)։ Այլ յետ վախճանին Յովսէփայ, յերկրորդում անդ ազգային ժողովի՝ ընտրեն զԴանիէլ ի Կաթողիկոսութիւն ազգի Հայոց ընդ կրկին խնդիր հոգեւորականաց Էջմիածնի, յորժամ և ս ինքն դարձ արարեալ էր Դանիէլ յաքսորանացն՝ յԵւդոկիա՝ յերեսաց խռովութեանցն ըստ առաջնոյ ընտրութեան իւրոյ. յորմէ յելանելն և ի գալ յԱթոռ Էջմիածին, լուեալ ի ճանապարհին որպէս զմահ Յովսեփայ, նոյնպէս և զյաջորդել Դաւթի յաթոռն, գնաց և ինքն յԵրեքխորանեանն պատցեալ վանս (Իւչքիլիսայ) ի Բագրեւանդ, և օծանի անդէն Կաթողիկոս։

ԳԼ. ԾԷ.

Եկեղեցականներուն ժողով ի Վաղարշապատ՝ յԷջմիածին. ուր հրաժարեցաւ ի կաթողիկոսութենէն Եփրեմ Արքեպիսկոպոս Հայոց Ռուսաստանի։

(Ամք Տեառն 1810)։ — Դանիէլ Կաթողիկոս որ ի վերջին հիւանդութեան իւրում հաստատեալ էր զսինոդական կառավարութիւն վանաց սուրբ Էջմիածնի յերկոտասան Եպիսկոպոսաց, և ի ձեռն նոցա կտակաւ հաստատեալ էր յաջորդ ինքեան փոխանորդել զԱթոռն Եփրեմ Արքեպիսկոպոս Առաջնորդն Հայոց Ռուսաստանի, երկուցեալ յերեսաց Դաւթի, որ կայրն հրաժարեալ ի սենեկի իւրում, ի վախճանիլ նորին՝ ժողով արարեալ միաբանից Էջմիածնի, առաքեն հրաւիրակ առ ընտրեալն Եփրեմ զՍեթեոս Եպիսկոպոս՝ յԱժտարխան, ուրում ներկայացեալ այսու առթիւ կայսեր Ռուսաց Աղեքսանդրի առաջնոյ, ընդունի ի նմանէ զհրովարտակ Կա-

թուղիկոսութեան, գայ ժամանէ ի Տփխիս. ուր գտանելով զբազմութիւն միաբանից Էջմիածնի փախուցեալ յերեսաց բռնութեան Դաւթի, առեալ անտի և զամենայն սրբութիւն և զսպասս Մայր Աթոռոյս յաւանդի եդեալ յարքունի գանձարանն վեց ամաց յառաջ ի պատերազմին, նովին բազմութեամբ միաբանութեան եկեալ ի սուրբ Էջմիածին, կալաւ զաթոռ Հայրապետութեան, զոր ընկալան և ընդհանուր Հայք Տաճկաստանի ըստ կըտակին Դանիէլի և ըստ առաքինի վարուց սուրբ Հայրապետիս:

ԳԼ. ԾԸ.

Չորեքտասաներորդ ժողով ի Վաղարշապատ յէջմիածին. որ ընտրեցաւ ի Կաթողիկոսութիւն Յովհաննէս Եպիսկոպոս Կարբեցի Առաջ Լուսաւորչի սրբոյ Տաճարին:

(Ամք Տեառն 1831): — Յովհաննէս Արքեպիսկոպոս Կարբեցի Փակակալ տաճարիս սուրբ Էջմիածնի՝ մին յերկոտասան Եպիսկոպոսաց անդամոց սինոդական կառավարութեան Աթոռոյ, որ յամին 1830 կարգեալն էր Առաջնորդ Հայոց Վրաստանի ի տեղի Ներսէս Արքեպիսկոպոսին, որ և տանելով ընդ իւր զհրաժարական թուղթ Եփրեմ Կաթողիկոսին առ կուսակալն Վրաստանի՝ ի կաթողիկոսութենէ՝ առ ծերութեան և առ պակասելոյ տեսութեան աչացն . . . , իբրև հրաման եղև ի կայսերէ ընտրութեան նոր Կաթողիկոսի, առեալ զհաճութիւն կուսակալին, դարձաւ յէջմիածին նորին տնօրէնութեամբ՝ առնել ժողով վասն ընտրութեան նոր Կաթողիկոսի. ուր գումարեալ հոգևորականք յամենայն վիճակաց Հայոց ի Ռուսաստանէ, ընտրին ժողովով զՏեղապահ Կաթողիկոսի Մարտիրոս և զՅովհաննէս Կար-

բերցի զերկուսին Արքեպիսկոպոսունս՝ արժանաւորս կաթուղիկոսութեան. որոց զթուղթն ընտրութեան յառաջարկելն մեհմարա Կայսեր ընդ ձեռն կուսակալին Վրաստանի, նորին կայսերական մեծութիւնն խնայելով ի ծերութիւն Մարտիրոս Եպիսկոպոսի, որում հաւատացի լեալ էր ի գրութեանց կուսակալին, հաստատէ զԿարբեցի Յովհաննէս Արքեպիսկոպոս առաջնորդն Վրաստանի, և տայ հրովարտակ կաթուղիկոսութեան նորա, որով և ընկալաւ նա ինքն Կարբեցին Յովհաննէս զԱթոռ Հայրապետութեան օծութեամբ ի սուրբ Կաթուղիկէ Էջմիածին ի նոյն ամի յիններորդ կիւրակէի սուրբ Խաչին, առանց միաբանակցութեան Ցանկաստանի Հայոց մերազանց՝ սակս շփոթութեանց ընդ մէջ տիրող պետութեանցն Հայաստանի ի ժամանակին։

## ԳԼ. ԾԹ.

Հնգետասաներորդ Ժողով է Վաղարշապատ ի հայրապետական Աթոռ Էջմիածին. ուր ընտրեցաւ Ներսէս Ե-րդ Կաթողիկոս Աշտարակեցի։

(Ամք Տեառն 1843)։ — Յետ վախճանին Յովհաննու Կարբեցւոյ յամին 1842, ի լրման ժամանակի ընտրութեան նոր Կաթուղիկոսի նշանակելոյ ի Սինոդէ սուրբ Էջմիածնի ըստ կայսերական կարգադրութեանն տուելոյ յաղագս կառավարութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ ի Ռուսաստան, յորում միջոցի հրատարակեալ էր Սինոդն գրով ընդ ամենայն տեղիս առ ազգս Հայոց որպէս զմահ Կաթուղիկոսին Յովհաննու, նոյնպէս և յամենայն քաղաքաց խնդրեալ էր պատգամաւոր ի հոգևոր և ի մարմնաւոր կուսէ յաղագս ընտրութեան նոր Կաթուղիկոսի. ըստ որոյ ապա Ժողովն ընտրութեան եղև ի հայ-

րապետական Աթոռ սուրբ Էջմիածին ի 17 Ապրիլի 1843 ամի. յորում միաձայն հաւանութեամբ պատգամաւորաց ժողովրդոց վեց վիճակաց Հայոց Ռուսաստանի և գրաւոր համաձայնութեամբ Հայոց Տաճկաստանի և այլոց յամենայն տէրութիւնս, և համախմբութեամբ միաբանութեանն ընտրեցաւ Արքեպիսկոպոսն Ներսէս յԸնդհանրական Կաթողիկոս ամենայն Հայոց, յառաջնորդութենէն Բեսսարաբիոյ. ուստի յետ երից ամաց ժամանեալ ի սուրբ Էջմիածին, ընկալեալ զօծումն յերկոտասան Եպիսկոպոսաց՝ կալաւ զԱթոռս Հայրապետութեան Ազգիս։

ԳԼ. Գ

Վերջասաներորդ մեռանի ի յԱթոռն Էջմիածնի ի Վաղարշապատ. յորում ընտրեցաւ Մատթէոս Արքեպիսկոպոս Կոստանդնուպօլսեցի՝ ի Կաթողիկոսութիւն

(Ամք Տեառն 1858)։ — Մեծ պատճառ այս էր ընտրութեան Կաթողիկոսի յայս նուագ յԱրքեպիսկոպոսացն ազգիս հպատակաց տէրութեան Տաճկաց, զի վերջասին հաստատեսցի հոգևոր միութիւն սիրոյ հոգևոր իշխանութեան ազգիս եղելոց ի Տաճկաստան, որ քակեալն էր ի քառասուն ամաց հետէ՝ ի տարագրութենէ Նփրեմ Կաթողիկոսի յԱթոռոյ իւրմէ յերեսաց բռնութեանց Պարսից, և ի խռովութեանց ժամանակին։

Ուստի ըստ կարգին նշանակելոց յԸնտրութեան Ներսիսի ի գլ. ՆԻԹ. ըստ որոյ իւրաքանչիւր վիճակի ժողովուրդք մերազանց թէ ի Ռուսաստան և թէ ի Տաճկաստան ի հոգևոր և ի մարմնաւոր կողմանց՝ որ պարտէին ընտրել ի միջոյ իւրեանց զարժանաւոր դատեալ զոմն ի կաթողիկոսութիւն, Ազգային ժողովն Հայոց Կոս-

տանդնուպօլսոյ առաջարկեալ էր Թղթով ի ժողովն ընտրութեան զհինգ Արքեպիսկոպոսունս, և զիրաւունս քառասուն և հինգ առաջնորդութեանց Տաճկաստանի ամփոփեալս յիւր ձայն, յանձնարարեալ էր պատգամաւորաց հասարակութեան Հայոց Տփխիսոյ, ընտրել ժողովն զոր և կամիցի ի հնգից եպիսկոպոսաց։

Առ որ ի համազգային ժողովի գումարելոյ ի 17 Մայիսի 1858 ամի, ընտրեցաւ ի Կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց Արքեպիսկոպոսն Մատթէոս Կոստանդնուպօլսեցի եղեալն երբեմն պատրիարգ, որոյ ընտրութիւնըն հաստատեցաւ կայսերական հրովարտակաւ։

ԳԼ. ԿԱ.

**Ներկայացուցիչք ժողովք յԱթոռս Հայրապետական ի սուրբ Էջմիածին ի Վաղարշապատ. ուր ընտրեցաւ Կաթողիկոս ամենայն Հայոց Գէորգ Արքեպիսկոպոս Կոստանդնուպօլսեցի յառաջնորդութենէն Պօլսոյ, երբեմն պատրիարքն Կոստանդնուպօլսոյ։**

(Ամք Տեառն 1866)։ — Ըստ կանոնական սահմանաց կարգադրութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ Սինոդն սուրբ Էջմիածնի յետ վախճանին Մատթէոսի, հրատարակեաց ընդ ամենայն տեղիս առ ազգս Հայոց զմահ հանգուցեալ Կաթուղիկոսին. և ընդ այնմ ժամանակ ընտրութեան յաջորդի նորին ի գահակալութիւն Հայրապետական Աթոռոյ՝ նշանակեաց ի 17 Սեպտեմբերի յառաջակայ 1866 ամի, ըստ տրամադրութեան միաց յիշեալ կարգադրութեանն։

Ամենայն քաղաքք ի Ռուսաստան, յորս են ազգ մեր, ժողով արարեալ հասարակութեան ըստ կարգին տուեցելոյ ի Սինոդէ սուրբ Էջմիածնի, ընտրեցին ի մէջ

իւրեանց աշխարհական պատգամաւորս, և զարժանաւոր դատեցեալն յինքեանց՝ զմին յԵպիսկոպոսաց Ազգիս Նշանակեալ վասն կաթուղիկոսութեան, առաքեցին ընդ ժամանակին Ժողովոյ ընտրութեան՝ ի սուրբ Էջմիածին. նոյնպէս և ի հոգևոր կուսէ հասին պատգամաւորք յամենայն վիճակաց անդր։

Իսկ ի Կոստանդնուպօլիս, ուր ընդ պատրիարքական իշխանութեամբ են առաւելագոյն մասն բազմութեան ազգիս Հայոց, և յամենայն վիճակս և ի քաղաքս քաղաքս Տաճկաստանի՝ ոչ իբրև զառաջին ընտրութիւնս կաթուղիկոսաց արարին Ժողով, այլ յայս նուագ համաձայն կարգադրութեան Սինոդի և ըստ կարգի ընտրութեան վիճակաց Ռուսաստանեայց ազգիս՝ արարին և անդ ընտրութիւն նոր Կաթուղիկոսի՝ համազգային Ժողովով, զերիս Արքեպիսկոպոսունս ի վիճակաց Տաճկաստանի և Ռուսաստանի Հայոց արժանաւորս դատեցեալ կաթուղիկոսութեան, արկին վիճակս ի վերայ երեցն այնոցիկ ընտրելոց, և քուէարկութեամբ Երեսփոխանական Ժողովոյն Կ. Պօլսոյ ըստ նոցին Սահմանադրութեան, առաւելութեամբ քուէից որոշեցին զմին յերեցն Եպիսկոպոսաց՝ զգերապատիւ Առաջնորդ Պուրսայու և զերբեմն Պատրիարգն Կոստանդնուպօլսոյ՝ զՏէր Գէորգ Արքեպիսկոպոսն Կոստանդնուպօլսեցի՝ ի Կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց. և այնպէս ընտրեալ և զերկուս պատգամաւորս ի հոգևոր և ի մարմնաւոր կուսէ ի դիմաց համօրէն Ազգիս Հայոց Տաճկաստանի զՀոգեզգօն Ներսէս Եպիսկոպոս Վարժապետեան և զՄեծապատիւ Յակոբ Նորատունկեան, առաքեցին զնոսա ի սուրբ Էջմիածին ի համազգային Ժողովն ընտրութեան Կաթուղիկոսի հանդերձ թղթովն ընտրութեան և պատրիարքա-

կան թղթով, նշանակելով ի նմին զամենայն վիճակս Առաջնորդութեանց Հայոց Տաճկաստանի. յորում ի դիմաց հասարակութեան ժողովրդոց վիճակացն, ըստ էին պատգամաւորք՝ նոյն իսկ Անդամքն Երեսփոխանական ժողովոյն Պոլսոյ ի նմին ընտրութեան իւրեանց. իսկ ի դիմաց բոլոր հոգեւորականաց նոցին իբրեւ նախագահ եկեղեցականաց՝ պատրիարգն Կոստանդնուպօլսոյ գերապատիւ Տ. Պօղոս Արքեպիսկոպոսն. որք ըստ վերոյ ասացելոցս ընտրելով Կաթուղիկոս զՏէր Գէորգ Արքեպիսկոպոսն, խնդրէին յընդհանրական ժողովէն ըստ ձայնից բազմութեան ազգի Հայոց և ըստ առաւելութեան վիճակաց՝ զնա ինքն կացուցանել Կաթուղիկոս զընտրեալն իւրեանց, և ոչ զայլ ոք։

Ըստ որոյ և ի համազգայնում ժողովին եղելոյ ի 17 Սեպտեմբերի 1866ի, ի սուրբ Էջմիածին, ներկայութեամբ ազգային պատգամաւորաց և հոգեւորական անդամոց այնր ժողովոյ՝ բացարձակ և ստուար մեծամասնութեամբ ձայնից ընտրեցաւ ի Կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց Տէր Գէորգ Արքեպիսկոպոսն երբեմնեան պատրիարգն Կոստանդնուպօլսոյ՝ յառաջնորդութենէն Պրուսայու, և թուղթն ընտրութեան առաջարկեցաւ ի հաստատութիւն կայսեր ընդ ձեռն փոխարքային Վրաստանի. և հրաւիրակք Աթոռոյս առաքեցան առ նորընտիր Կաթուղիկոսն ամենայն Հայոց ի Կոստանդնուպօլիս։

Ապա իբրեւ եւ կայսերական հրովարտակ հաստատութեան կաթուղիկոսութեանն, ի գարնան հետեւեալ 1867 ամի ժամանեալ նորա ի սուրբ Աթոռս Էջմիածին բազմաթիւ ուղեկցօք, ի 21 Մայիսի յուրախութիւն հանուրց Հայկազանց մեծաշուք հանդիսիւ օծաւ ընդ ձեռն

երկոտասան Եպիսկոպոսաց ի Կաթուղիկէ Մայր Եկեղեցւոջ սուրբ Էջմիածնի Արարատեան նախամեծար Հայրապետական Աթոռոյ՝ ընդհանրական Կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց ի փոխանորդութիւն և ի յաջորդութիւն Առաքելոցն սրբոց Թադէոսի և Բարթուղիմէոսի՝ և սրբոյն Գրիգորի Ս. Լուսաւորչի, որ արդ ի լուսաւորութիւն ազգիս Հայոց և ի պայծառութիւն մանկանց Եկեղեցւոյ՝ վարէ զիշխանութիւն Կաթուղիկոսութեան։

---

փոխանակ Դանիէլի զՆորդուղիմէոս Եպիսկոպոսն Իզ-նիմիտու:

(1801): Այլ յետ վախճանին Յովսեփայ, յերկրորդումն անդ ազգային ժողովի՝ ընտրեն զԴանիէլ ի Կաթուղիկոսութիւն ազգի Հայոց ընդ կրկին խնդիր հոգևորականաց Էջմիածնի, յորժամ և ինքն դարձ արարեալ էր Դանիէլ յաքսորանացն՝ յԵւդոկիա՝ յերեսաց խռովութեանցն ըստ առաջնոյ ընտրութեան իւրոյ. յորմէ յելանելն և ի գալ յԱթոռ Էջմիածին, լուեալ ի ճանապարհին որպէս զմահ Յովսեփայ, նոյնպէս և զյաջորդել Դաւթի յաթոռն, գնաց և ինքն յԵրեքխորանեանն պատցեալ վանս (Իւչքիլիսայ) ի Բագրևանդ, և օծանի անդէն Կաթուղիկոս:

ԳԼ. ԾԷ.

Երկոտասաներորդ ժողով է Վաղարշապատ՝ յԷջմիածին. որով հրաժարեցաւ է կաթողիկոսութենէն Եփրեմ Արքեպիսկոպոս Հայոց Ռուսաստանի:

(Ամք Տեառն 1810): — Դանիէլ Կաթուղիկոս որ ի վերջին հիւանդութեան իւրում հաստատեալ էր զփնօդական կառավարութիւն վանաց սուրբ Էջմիածնի յերկոտասան Եպիսկոպոսաց, և ի ձեռն նոցա կտակաւ հաստատեալ էր յաջորդ ինքեան փոխանորդել զԱթոռն Եփրեմ Արքեպիսկոպոս Առաջնորդն Հայոց Ռուսաստանի, երկուցեալ յերեսաց Դաւթի, որ կայրն հրաժարեալ ի սենեկի իւրում, ի վախճանիլ նորին՝ ժողով արարեալ միաբանից Էջմիածնի, առաքեն հրաւիրակ առ ընտրեալն Եփրեմ զՍէթէոս Եպիսկոպոս՝ յԱժտարխան, որում ներկայացեալ այսու թղթիւ կայսեր Ռուսաց Աղեքսանդրի առաջնոյ, ընդունի ի նմանէ զհրովարտակ Կա-

թուղիկոսութեան, պայ ժամանէ ի Տփխիս. ուր զաւանելով զբազմութիւն միաբանից Էջմիածնի փախուցեալ յերեսաց բռնութեան Գուլթի, առեալ անտի և զամենայն սրբութիւն և զսպասս Մայր Աթոռոյս յաւանդի եդեալ յարքունի գանձարանն. մինչ ամօք յառաջ ի պատերազմին, նովին բազմութեամբ միաբանութեան եկեալ ի սուրբ Էջմիածին, կալաւ զաթոռ Հայրապետութեան, զոր ընկալան և ընդհանուր Հայք Տաճկաստանի ըստ կըտակին Դանիէլի և ըստ առաքինի վարուց սուրբ Հայրապետին: •

ԳԼ. ԾԸ.

Չորեքտասաներորդ ժողով է ի Վաղարշապատ յԷջմիածին. ուր ընտրեցաւ ի կաթողիկոսութիւն Յովհաննէս Եպիսկոպոս Կարբեցի Աւագ Լուսարար սրբոյ Տաճարին:

(Ամք Տեառն 1831) : — Յովհաննէս Արքեպիսկոպոս Կարբեցի Փակակալ տաճարին սուրբ Էջմիածնի՝ մին յերկոտասան Եպիսկոպոսաց անդամոց սինոդական կառավարութեան Աթոռոյ, որ յամին 1830 կարգեալն էր Առաջնորդ Հայոց Վրաստանի ի տեղի Ներսէս Արքեպիսկոպոսին, որ և տանելով ընդ իւր զհրաժարական թուղթ Եփրեմ Կաթուղիկոսին առ կուսակալն Վրաստանի՝ ի կաթուղիկոսութենէ՝ առ ծերութեան և առ պակասելոյ տեսութեան աչացն . . . , իբրև հրաման եղև ի կայսերէ ընտրութեան նոր Կաթուղիկոսի, առեալ զհաճութիւն կուսակալին, դարձաւ յԷջմիածին նորին տնօրէնութեամբ՝ առնել ժողով վասն ընտրութեան նոր Կաթուղիկոսի. ուր գումարեալ հոգևորականք յամենայն վիճակաց Հայոց ի Ռուսաստանէ, ընտրեին ժողովով զՏեղապահ Կաթուղիկոսի Մարտիրոս և զՅովհաննէս Կար-

բեցի զերկուսին Արքեպիսկոպոսանս՝ արժանաւորս կաթուղիկոսութեան. որոց զԹուղթն ընտրութեան յառաջարկելն միահամուռ Դեսպանը ընդ ձեռն կուսակալին Վրաստանի, նորին կայսերական մեծութիւնն խնայելով ի ծերութիւն Մարտիրոս Եպիսկոպոսի, որում հաւատացի լեալ էր ի գրութեանց կուսակալին, հաստատէ զԿարբեցի Յովհաննէս Արքեպիսկոպոս առաջնորդն Վրաստանի, և տայ հրովարտակ կաթուղիկոսութեան նորա, որով և ընկալաւ նա ինքն Կարբեցին Յովհաննէս զԱթոռ Հայրապետութեան օծութեամբ ի սուրբ Կաթուղիկէ Էջմիածին ի նոյն ամի յիններորդ կիւրակէի սուրբ Խաչին, առանց մասնակցութեան Տաճկաստանի Հայոց մերազանց՝ սակս շփոթութեանց ընդ մէջ երկոց պետութեանց Հայաստանի ի ժամանակին։

## ԳԼ. ԾԹ.

### Հնգետասաներորդ ժողով է Վաղարշապատ ի հայրապետական Աթոռն Էջմիածին. որ ընտրեցաւ Ներսէս Ե-րդ Կաթողիկոս Աշտարակեցի։

(Ամք Տեառն 1843)։ — Յետ վախճանին Յովհաննու Կարբեցւոյ յամին 1842. ի լրման ժամանակի ընտրութեան նոր Կաթուղիկոսի նշանակելոյ ի Սինոդէ սուրբ Էջմիածնի ըստ կայսերական կարգադրութեանն տուելոյ յաղագս կառավարութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ ի Ռուսաստան, յորում միջոցի հրատարակեալ էր Սինոդն գրով ընդ ամենայն տեղիս առ ազգս Հայոց որպէս զմահ Կաթուղիկոսին Յովհաննու, նոյնպէս և յամենայն քաղաքաց խնդրեալ էր պատգամաւոր ի հոգևոր և ի մարմնաւոր կուսէ յաղագս ընտրութեան նոր Կաթուղիկոսի. ըստ որոյ առաջ ժողովք ընտրութեան եղև ի հայ-

բարեկարգական Աթոռ սուրբ Էջմիածին ի 17 Ապրիլի 1843 ամի. յորում միաձայն հաւանութեամբ պատգամաւորաց ժողովրդոց վեց վիճակաց Հայոց Ռուսաստանի և գրաւոր համաձայնութեամբ Հայոց Տաճկաստանի և այլոց յամենայն տէրութիւնս, և համախմբութեամբ միաբանութեանն ընտրեցաւ Արքեպիսկոպոսն Ներսէս յընդհանրական Կաթուղիկոս ամենայն Հայոց, յառաջնորդութենէն Բեսարաբիոյ. ուստի յետ երից ամաց ժամանեալ ի սուրբ Էջմիածին, ընկալեալ զօծումն յեպիսկոպոսաց՝ կալաւ զԱթոռս Հայրապետութեան Ազգիս։

ԳԼ. Գ.

Վերաստանձնումն ժողովոյ ի յԱթոռն Էջմիածին ի Վաղարշապատ. ուր ընտրեցաւ Մատթէոս Արքեպիսկոպոս Կոստանդնուպօլսեցի՝ ի կաթողիկոսութիւն։

(Ամբ Տեառն 1858)։ — Մինչ պատճառ այս էր ընտրութեան Կաթուղիկոսի յայս նուագ յԱրքեպիսկոպոսացն ազգիս հպատակաց տէրութեան Տաճկաց, զի միշտ բնաւին հաստատեսցի հոգևոր միութիւն սիրոյ հոգևոր իշխանութեան ազգիս եղելոց ի Տաճկաստան, որ քակեալն էր ի քառասուն ամաց հետէ՝ ի տարագրութենէ Նեփսեհ Կաթուղիկոսի յԱթոռոյ իւրմէ յերեսաց բռնութեանց Պարսից, և ի խռովութեանց ժամանակին։

Ուստի ըստ կարգին նշանակելոց յընտրութեան Ներսիսի ի գլ. ԺԹ. ըստ որոյ իւրաքանչիւր վիճակի ժողովուրդք միաբանեալ թէ ի Ռուսաստան և թէ ի Տաճկաստան ի հոգևոր և ի մարմնաւոր կողմանց՝ որ պարտէին ընտրել ի միջոյ իւրեանց զարժանաւոր դատեալ զոմն ի կաթուղիկոսութիւն, Ազգային ժողովն Հայոց Կոս-

տանդնուպոլսոյ առաջարկեալ էր թղթով ի ժողովն ընտրութեան զհինգ Արքեպիսկոպոսունս, և զիրաւունս քուէսուն և հինգ առաջնորդութեանց Տաճկաստանի ամփոփեալս յինն ձայն, յանձնարարեալ էր պատգամաւորաց հասարակութեան Հայոց Տփխիսոյ, ընտրել ժողովն զոր և կամիցի ի հնգիցն եպիսկոպոսաց։

Առ որ ի համազգային ժողովի գումարելոյ ի 17 Մայիսի 1858 ամի, ընտրեցաւ ի Կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց Արքեպիսկոպոսն Մատթէոս Կոստանդնուպօլսեցի եղեալն երբեմն պատրիարգ, որոյ ընտրութիւնըն հաստատեցաւ կայսերական հրովարտակաւ։

ԳԼ. ԿԱ.

**Իօրինապատուէրութ ժողովէ յԱթոռս Հայրապետական է սուրբ Էջմիածին ի Վաղարշապատ. ուր ընտրեցաւ Կաթողիկոս ամենայն Հայոց Գէորգ Արքեպիսկոպոս Կոստանդնուպօլսեցի յառաջնորդութենէն Պրուսայ, երբեմն պատրիարգն Կոստանդնուպօլսոյ։**

(Ամք Տեառն 1866)։ — Ըստ կանոնական սահմանաց կարգադրութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ Սինոդն սուրբ Էջմիածնի յետ վախճանին Մատթէոսի, հրատարակեաց ընդ ամենայն տեղիս առ ազգս Հայոց զմահ հանգուցեալ Կաթուղիկոսին. և ընդ այնմ ժամանակ ընտրութեան յաջորդի նորին ի գահակալութիւն Հայրապետական Աթոռոյ՝ նշանակեաց ի 17 Սեպտեմբերի յառաջակայ 1866 ամի, ըստ տրամադրութեան մնաց յիշեալ կարգադրութեանն։

Ամենայն քաղաքք ի Ռուսաստան, յորս են ազգ մեր, ժողով արարեալ հասարակութեան ըստ կարգին տուեցելոյ ի Սինոդէ սուրբ Էջմիածնի, ընտրեցին ի մէջս

իւրեանց աշխարհական պատգամաւորս, և զարժանաւոր դատեցեալն յինքեանց՝ զմին յԵպիսկոպոսաց Ազգիս նշանակեալ վասն կաթուղիկոսութեան, առաքեցին ընդ ժամանակին Ժողովոյ ընտրութեան՝ ի սուրբ Էջմիածին. նոյնպէս և ի հոգևոր կուսէ հասին պատգամաւորք յամենայն վիճակաց անդր։

Իսկ ի Կոստանդնուպօլիս, ուր ընդ պատրիարքական իշխանութեամբ են առաւելագոյն մասն բազմութեան ազգիս Հայոց, և յամենայն վիճակս և ի քաղաքս քաղաքս Տաճկաստանի՝ ոչ իբրև զառաջին ընտրութիւնս կաթուղիկոսաց արարին Ժողով, այլ յայս նուագ համաձայն կարգադրութեան Սինոդի և ըստ կարգի ընտրութեան վիճակաց Ռուսաստանեայց ազգիս՝ արարին և անդ ընտրութիւն նոր Կաթուղիկոսի՝ համազգային Ժողովով, զերիս Արքեպիսկոպոսունս ի վիճակաց Տաճկաստանի և Ռուսաստանի Հայոց արժանաւորս դատեցեալ կաթուղիկոսութեան, արկին վիճակս ի վերայ երեցն այնոցիկ ընտրելոց, և քուէարկութեամբ Երեսփոխանական Ժողովոյն Կ. Պօլսոյ ըստ նոցին Սահմանադրութեան, առաւելութեամբ քուէից որոշեցին զմին յերիցն Եպիսկոպոսաց՝ զգերապատիւ Առաջնորդ Պուրսայու և զերբեմն Պատրիարգն Կոստանդնուպօլսոյ՝ զՏէր Գէորգ Արքեպիսկոպոսն Կոստանդնուպօլսեցի՝ ի Կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց. և այնպէս ընտրեալ և զերկուս պատգամաւորս ի հոգևոր և ի մարմնաւոր կուսէ ի դիմաց համօրէն Ազգիս Հայոց Տաճկաստանի զՀոգեգզօն Ներսէս Եպիսկոպոս Վարժապետեան և զՄեծապատիւ Յակոբ Նորատունկեան, առաքեցին զնոսա ի սուրբ Էջմիածին ի համազգային Ժողովն ընտրութեան Կաթուղիկոսի հանդերձ թղթովն ընտրութեան և պատրիարքա-

կան Թղթով, նշանակելով ի նմին զամենայն վիճակս Առաջնորդութեանց Հայոց Տաճկաստանի. յորում ի դիմաց հասարակութեան ժողովրդոց վիճակացն, լեալ էին պատգամաւորք՝ նոյն իսկ Անդամքն Երեսփոխանական ժողովոյն Պօլսոյ ի նմին ընտրութեան իւրեանց. իսկ ի դիմաց բոլոր հոգեւորականաց նոցին իբրեւ նախագահ եկեղեցականաց՝ պատրիարգն Կոստանդնուպօլսոյ գերապատիւ Տ. Պօղոս Արքեպիսկոպոսն. որք ըստ վերոյ ասացելոցս ընտրելով Կաթուղիկոս զՏէր Գէորգ Արքեպիսկոպոսն, խնդրէին յընդհանրական ժողովէն ըստ ձայնից բազմութեան ազգի Հայոց և ըստ առաւելութեան վիճակաց՝ զնա ինքն կացուցանել Կաթուղիկոս զընտրեալն իւրեանց, և ոչ զայլ ոք։

Ըստ որոյ և ի համազգայնում ժողովին եղելոյ ի 17 Սեպտեմբերի 1866ի, ի սուրբ Էջմիածին, ներկայութեամբ ազգային պատգամաւորաց և հոգեւորական անդամոց այնր ժողովոյ՝ բացարձակ և ստուար մեծամասնութեամբ ձայնից ընտրեցաւ ի Կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց Տէր Գէորգ Արքեպիսկոպոսն երբեմնեան պատրիարգն Կոստանդնուպօլսոյ՝ յառաջնորդութենէն Պուրսայու, և Թուղթն ընտրութեան առաջարկեցաւ ի հաստատութիւն կայսեր ընդ ձեռն փոխարքային Կովկասու. և հրաւիրակք Աթոռոյս առաքեցան առ նորընտիր Կաթուղիկոսն ամենայն Հայոց ի Կոստանդնուպօլիս։

Ապա իբրեւ եւ կայսերական հրովարտակ հաստատութեան կաթուղիկոսութեանն, ի գարնան հետեւեալ 1867 ամի ժամանեալ նորա ի սուրբ Աթոռս Էջմիածին բազմաթիւ ուղեկցօք, ի 21 Մայիսի յուրախութիւն հանուրց Հայկազանց մեծաշուք հանդիսիւ օծաւ ընդ ձեռն

երկոտասան Եպիսկոպոսաց ի Կաթուղիկէ Մայր Եկեղեցւոջ սուրբ Էջմիածնի Արարատեան նախամեծար Հայրապետական Աթոռոյ՝ յընդհանրական Կաթուղիկէութիւն ամենայն Հայոց ի փոխանորդութիւն և ի յաջորդութիւն Առաքելոցն սրբոց Թադէոսի և Բարթուղիմէոսի՝ և սրբոյն Գրիգորի Բ. Լուսաւորչի, որ արդ ի լուսաւորութիւն ազգիս Հայոց և ի պայծառութիւն մանկանց Եկեղեցւոյ՝ վարէ զիշխանութիւն Կաթուղիկոսութեան։

